## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ 1979

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ ԵՎ ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴՈՒՄ
Բարձրագույն դպրոցի հետագա զարգացման և մասնագետների պատրաստման որակի բարձրացման մասին . . . . . . 3
ԱՌԱՋՆՈՐԴՈՂ— Կոմունիստական գաղափարախոսության ուժը . . . 9

ՀՈԴՎԱԾՆԵՐ

ՅՈՒ. Ե. ԽՈՋԱՄԻՐՅԱՆ— Հնգամյակները և էկոնոմիկայի պլանային կառավարումը . . . . . . . . . 17
ԻՆՆԱ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Ընդլայնվում է հակամոնոպոլիստական պայքարի սոցիալական բազան . . . . . . . . 24
ՄԵՅԱ ՔԱՅԱԽՅԱՆ— Գեղարվեստական ստեղծագործությունը և աշխարհայացքը . . . . . . . . . 31

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

Ս. Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆ— Դաստիարակչական աշխատանքին կոմպլեքսային մոտեցում . . . . . . . . . 38
ՅՈՒ. Հ. ՃՇՄԱՐԻՏՅԱՆ— Կոմերիտական աշխատանքի հաջողության գրավականը . . . . . . . . . 47
Ս. Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Երբ կոմունիստը սխալվում է . . . . . 54

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

Բ. Դ. ՋԱԼՅԱՆ— Արտադրության արդյունավետության բարձրացման վճռական գործոնը . . . . . . . . . 60
Վ. Բ. ՍՄԲԱՏՅԱՆ— Տեղական արդյունաբերության մեծ խնդիրները . . 67

ԺՈՂՈՎՐԴԻ ՀՈԳԵՎՈՐ ԱՐԺԵՔՆԵՐԸ

Ս. Տ. ԵՐԵՄՅԱՆ— Անդրկովկասի ժողովուրդների բարեկամության պատմական ակունքների մոտ . . . . . . . . 73

ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ՝ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆԸ

Մ. Ա. ՍԵՄԵՐՋՅԱՆ, Լ. Կ. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ— Գիտատեխնիկական առաջընթացի ավանգարդում . . . . . . . . . 81

ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Հ. Ս. ՀՈՎՍԵՓՅԱՆ— Գյուղատնտեսության զարգացման հարցերը ուշադրության կենտրոնում . . . . . . . . . 87

ԸՆԹԵՐՑՈՂԸ ԳՐՔԻ ՄԱՍԻՆ

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ— Երիտասարդության սխրանքը . . . . . 93

## СОДЕРЖАНИЕ


**В ЦК КПСС и Совете Министров СССР**

О дальнейшем развитии высшей школы и повышении качества подготовки специалистов . . . . . 3

ПЕРЕДОВАЯ — Сила коммунистической идеологии . . 9

**СТАТЬИ**

Ю. Е. ХОДЖАМИРЯН — Пятилетки и плановое управление экономикой. . . . . . . . . . 17

ИННА КАРАПЕТЯН — Расширяется социальная база антимонополитической борьбы . . . . . 24

МЕЯ КАЦАХЯН — Художественное творчество и мировоззрение . . . . . . . . . . 31

**ТЕОРИЯ И ПРАКТИКА ПАРТИЙНОГО СТРОИТЕЛЬСТВА**

С. С. АВЕТИСЯН — Воспитательной работе — комплексный подход . . . . . . . . . . 38

Ю. Г. ЧШМАРИТЯН—Залог успеха в комсомольской работе 47

С. Г. ГРИГОРЯН — Когда коммунист ошбается . . 54

**ВОПРОСЫ ЭКОНОМИКИ**

Т. Д. ЧАЛЯН — Основной фактор повышения эффективности производства . . . . . . . 60

В. Т. СМБАТЯН — Большие задачи местной промышленности 67

**ДУХОВНЫЕ ЦЕННОСТИ НАРОДА**

С. Т. ЕРЕМЯН — У исторических истоков дружбы закавказских народов . . . . . . 73

**НАУКА — ПРОИЗВОДСТВУ**

М. А. СЕМЕРДЖЯН, Л. К. МЕЛИКСЕТЯН — В авангарде научно-технического прогресса . . . . 81

**ОБЗОР ПЕЧАТИ**

Г. С. ОВСЕПЯН—Вопросы развития сельского хозяйства—в центре внимания . . . . . . . 87

**ЧИТАТЕЛЬ О КНИГЕ**

С. С. НАЛБАНДЯН — Подвиг молодежи . . . . 93








## ՍՄԿԿ Կենտկոմում և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում

# ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ԴՊՐՈՑԻ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԵՎ ՄԱՍՆԱԳԵՏՆԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՄԱՆ ՈՐԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում են ընդունել «Բարձրագույն դպրոցի հետագա զարգացման և մասնագետների պատրաստման որակի բարձրացման մասին»: Բարձրագույն դպրոցը, նշվում է որոշման մեջ, կատարելով կուսակցության XXV համագումարի որոշումները, որոշակի հաջողությունների է հասել ժողովրդական տնտեսությունը մասնագետների որակյալ կադրերով ապահովելու ասպարեզում և դրանց պատրաստման մասշտաբներով հիմնականում բավարարում է երկրի պահանջմունքները: Կազմակերպված են ուսանողների ուսուցում և մասնագետների վերապատրաստում գիտության ու տեխնիկայի նորագույն ուղղությունների գծով, բուհերի, դասախոսների և արտադրության աշխատողների որակավորման բարձրացում, որը նպաստել է զարգացած սոցիալիզմի պահանջներին համապատասխան անընդմեջ կրթության սիստեմի ձևավորման ավարտմանը: Բարձրագույն դպրոցը հարաճուն ազդեցություն է ունենում գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ժողովրդի կուլտուրայի և սոցիալիստական հասարակության հոգևոր հարստության հետագա աճի վրա:

Ուսումնական շատ հաստատություններում պրոֆեսորների և դասախոսների կոլեկտիվները ապահովում են ուսանողների ուսուցումը պրոֆեսիոնալ ու գաղափարատեսական բարձր մակարդակով, մասնագետների պատրաստումը արդյունավետորեն զուգորդում գիտական խոշոր պրոբլեմների մշակման հետ: Դրական արդյունքներ են ձեռք բերված հասարակական գիտությունների ուսումնասիրումը բարելավելու ասպարեզում: Բոլոր բուհերում մտցված է մարքս-լենինյան տեսության հետևողական դասավանդում ուսուցման ամբողջ ժամանակաշրջանում, որ նպաստում է դրա ավելի խոր յուրացմանը, ապագա մասնագետների գաղափարատեսական կոփվածությանը: Աճել է ուսանող երիտասարդության քաղաքական և աշխատանքային ակտիվությունը:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ուշադրություն են նվիրել այն բանին, որ բարձրագույն դպրոցի գործունեության մեջ էական թերություններ կան:

Ուսումնական պրոցեսում միշտ չէ, որ արտացոլվում են գիտության, տեխնիկայի ու մշակույթի նորագույն նվաճումները, արտադրության և կառավարման կազմակերպման առաջավոր փորձը: Բուհերի շրջանավարտների մի մասը խոր գիտելիքներ չունի ընդհանուր գիտական առարկաներից, թույլ է պրոֆեսիոնալ պատրաստվածությունը: Պատշաճ ուշադրություն չի նվիրվում ուսանողների ինքնուրույն ստեղծագործական աշխատանքի կազմակերպմանը, նրանց մեջ հասարակական-քաղաքական և կազմակերպչական գործունեության հմտությունների ձևավորմանը:

ՍՍՀՄ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը անբավարար է իրականացնում ուսումնամեթոդական աշխատանքի ղեկավարումը, լրիվ չափով չի օգտագործում բազային բուհերի հնարավորությունները ողջ բարձրագույն դպրոցի գործունեության բարելավման ուղիներ մշակելու համար: Ծարունակում են թերություններ տեղ գտնել բուհերի գիտական գործունեության կազմակերպման ասպարեզում: Դանդաղ են միջոցառումներ իրականացվում բարձրագույն դպրոցը ժամանակակից ուսումնալաբորատոր և գիտական սարքավորումներով զինելու նպատակով:

Բարձրագույն ուսումնական հաստատությունների կառավարման մարմինները, պլանային մարմինները, ճյուղային մինիստրությունները ու գերատեսչությունները, չնայած շրջանավարտ մասնագետների թվի անշեղ աճին, չեն կարողացել բոլոր անհրաժեշտ մասնագիտությունների տեր կադրերով լիովին ապահովել ժողովրդական տնտեսության այնպիսի առաջատար ճյուղեր, ինչպիսիք են՝ մետալուրգիան, հանքարդյունահանող և նավթարդյունահանող արդյունաբերությունը, շինարարությունը, տրանսպորտը, գյուղատնտեսությունը: Լուրջ թերություններ կան նաև Սիբիրի, Հյուսիսի, Հեռավոր Արևելքի շրջանների, ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու համար բարձրագույն կրթությամբ մասնագետների պատրաստման գործում:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը անհրաժեշտ համարեցին միջոցներ ձեռնարկել բարձրագույն դպրոցի գործունեությունն է՛լ ավելի բարելավելու, սոցիալ-տնտեսական և գիտատեխնիկական առաջընթացում նրա դերը բարձրացնելու, երկրի ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերը բարձրորակ կադրերով առավել լրիվ ապահովելու համար: ՍՍՀՄ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը, բուհեր ունեցող ՍՍՀՄ մինիստրություններին և գերատեսչություններին, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին և մինիստրների խորհուրդներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, քաղկոմներին առաջարկված է վերացնել նշված թերությունները: Ապահովել բարձրագույն ուսումնական հաստատությունների գործունեության հետագա կատարելագործումը, բարձրացնել նրանց՝ որպես կրթության, կոմունիստական դաստիարակության, գիտության ու մշակույթի զարգացման կենտրոնների դերը:

Բարձրագույն դպրոցի գլխավոր ուշադրությունը պետք է կենտրոնացնել մասնագետների պրոֆեսիոնալ պատրաստման և գաղափարաքաղաքական դաստիարակության որակի համակողմանի բարելավման, արտադրության, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ կապի ամրապնդման վրա: Մշտապես կատարելագործել ուսումնական պլաններն ու ծրագրերը՝ լայն պրոֆիլի մասնագետների տեսական ու պրոֆեսիոնալ պատրաստման ասպարեզում հիմնարար գիտությունների նշանակալիության բարձրացման, գիտության նորագույն նվաճումների և առաջավոր փորձի առավել լրիվ արտացոլման հիման վրա: Ուժեղացնել ուսումնական հաստատությունների գործունեության վերահսկումը պետական տեսչավորման և ուսուցման որակի համար ռեկտորատների նկատմամբ պահանջկոտության բարձրացման միջոցով:

Ռեկտորատների, կուսակցական կազմակերպությունների առջև խնդիր է դրված բարձրագույն ուսումնական հաստատությունների պրոֆեսորների ու դասախոսների ջանքերը կենտրոնացնել ուսումնադաստիարակչական և գիտամեթոդական աշխատանքի բարելավման վրա: Ապահովել դասախոսությունների մակարդակի և դրանց նշանակության հետագա բարձրացումը ուսանողների մեջ գիտական մտածողություն և մարքս-լենինյան աշխարհայացք ձևավորելու ասպարեզում: Հասնել այն բանին, որ դասախոսությունները պրոբլեմային բնույթ կրեն, արտացոլեն տեսության ու պրակտիկայի հրատապ հարցերը, հասարակական ու գիտատեխնիկական զարգացման ժամանակակից նվաճումները, նպաստեն խորացված ինքնուրույն աշխատանքին: Ակտիվացնել սեմինար ու լաբորատոր պարապմունքները, որոնք ուսանողների գիտելիքների ամրապնդման և ստեղծագործական ընդունակությունների դրսևորման արդյունավետ ձևեր են:

Անհրաժեշտ է, շեշտվում է որոշման մեջ, ուժեղացնել ամբիոնի՝ որպես բարձրագույն ուսումնական հաստատության գլխավոր օղակի, դերը, որը կանխորոշում է ուսումնական, գիտական և դաստիարակչական պրոցեսի բովանդակությունն ու միասնությունը: Երիտասարդ դասախոսներին համակողմանի օգնություն ցույց տալ՝ տիրապետելու մանկավարժական վարպետությանը: Ելնելով պրոֆեսորների և դասախոսների աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու շահերից, հանձնարարված է միջոցներ մշակել և իրականացնել՝ մանկավարժական աշխատանքի բարոյական ու նյութական խրախուսման սիստեմը կատարելագործելու նպատակով:



Հաշվի առնելով մասնագետների պատրաստման որակին, գործնական հարցերի լուծման հմտության հետ նրանց տեսական գիտելիքների ռացիոնալ զուգորդմանը ներկայացվող հարաճուն պահանջները, անհրաժեշտ է համարված է՛լ ավելի ընդլայնել և ամրապնդել բարձրագույն ուսումնական հաստատությունների կապերը ժողովրդական տնտեսության համապատասխան ճյուղերի հետ: Բարելավել մասնագետների պատրաստման պլանավորումը, նրանց բաշխումն անցկացնել ավելի վաղ ժամկետներում՝ նրանց կողմից ուսումնական հաստատություններն ավարտելուց մեկ-երեք տարի առաջ, հետագայում անցնելով բաշխման հնգամյա պլանների մշակման և պլանի ցուցանիշները ներկայացնելով ձեռնարկություններին ու բուհերին: Այդ հիման վրա ակտիվացնել բարձրագույն դպրոցի և ժողովրդական տնտեսության ճյուղերի համատեղ գործունեությունը կադրերի պատրաստման, վերապատրաստման և որակավորման բարձրացումը բարելավելու, գիտական հետազոտությունները զարգացնելու ուղղությամբ: Լուծել բուհերի նյութական բազայի ամրապնդմանը ճյուղային մինիստրությունների ու գերատեսչությունների ավելի լայն մասնակցության, ուսումնական հաստատությունների կողմից համապատասխան ձեռնարկությունների ու կազմակերպությունների տարածությունների և սարքավորումների օգտագործման, դրանց հիմքի վրա անհրաժեշտ դեպքերում պրոֆիլային ամբիոնների մասնաճյուղերի ստեղծման հարցերը: Բարելավել ուսանողների արտադրական պրակտիկայի և բուհերի շրջանավարտների ստաժավորման կազմակերպումը:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը նշել են, որ բարձրագույն կրթության զարգացմանը, ուսումնական հաստատությունների նյութական բազայի ամրապնդմանը ճյուղային մինիստրությունների ու գերատեսչությունների կոնկրետ մասնակցությունը պետք է դիտել որպես ճյուղի գիտատեխնիկական ու սոցիալական առաջընթացի ապահովման կարևոր գործոն:

Խնդիր է դրված բարձրացնելու բնական ու տեխնիկական գիտությունների բնագավառի ապագա մասնագետների պատրաստման մակարդակը: Այդ նպատակով առաջարկված է բուհերի գիտամանկավարժական գործունեության մեջ ավելի լայնորեն ներգրավել ակադեմիկոսներին, թղթակից անդամներին և մյուս առաջատար գիտնականներին. ապահովել ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարների ու առաջատար մասնագետների, արտադրության առաջավորների և նորարարների սիստեմատիկ ելույթները ուսանողների և դասախոսական կոլեկտիվների առջև. Էապես բարելավել գիտատեխնիկական ինֆորմացիան և հայրենական ու արտասահմանյան արտադրական առաջավոր փորձի պրոպագանդումը ուսանողության շրջանում:

Որոշման մեջ շեշտվում է, որ անհրաժեշտ է արդյունավետ միջոցներ ձեռնարկել Սիբիրի, Հյուսիսի, Հեռավոր Արևելքի, ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու համար մասնագետներ պատրաստելու նպատակով՝ այդ շրջանների ինտենսիվ ու կոմպլեքսային զարգացման պահանջներին համապատասխան: ՍՍՀՄ պետպլանին, ՍՍՀՄ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդին հանձնարարված է շահագրգռված մինիստրությունների ու գերատեսչությունների հետ համատեղ մշակել և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդ ներկայացնել առաջարկություններ այդ տնտեսական շրջանների ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը կադրերով ապահովելու, նրանց ամրացնելու և ռացիոնալ օգտագործելու վերաբերյալ: Անհրաժեշտ դեպքերում համապատասխան ուսումնական հաստատություններում ավելացնել ուսանողների կոնտինգենտները՝ ամբողջությամբ վերցրած երկրում ընդունելության պլանը վերաբաշխելու հաշվին:

Նախատեսված է միջոցառումներ իրականացնել Սիբիրի, Հյուսիսի, Հեռավոր Արևելքի շրջաններում, ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտում գտնվող բուհերը բարձրորակ գիտամանկավարժական կադրերով ամրապնդելու, ինչպես նաև դրանց նյութական բազան բարելավելու, ուսանողական հանրակացարաններ և պրոֆեսորադասախոսական կազմի համար բնակելի տներ կառուցելու, դասախոսների համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելու նպատակով: Հանձնարարված է ուժեղացնել նշված շրջանների բուհերը աշխատող

և սովորող առաջադեմ երիտասարդներով կոմպլեկտավորելու աշխատանքը: Բացառության կարգով այդ տնտեսական շրջանների արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի ձեռնարկություններին, սովխոզներին ու կոլտնտեսություններին իրավունք է տրված միջնակարգ հանրակրթական դպրոցների, միջնակարգ մասնագիտական ու պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնական հաստատությունների աշխատանքային ստաժ չունեցող շրջանավարտներին բուհերում սովորելու գործուղել սուր դեֆիցիտային մասնագիտությունների գծով, որպես ձեռնարկությունների կրթաթոշակառուներ՝ այն պայմաններով, որոնք նախատեսված են ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1959 թվականի սեպտեմբերի 18-ի № 1099 որոշմամբ:

Անհրաժեշտ է համարված ապահովել ուսումնական հաստատությունների կոմպլեկտավորման բարելավումը մետալուրգիական, հանքարդյունահանման, նավթարդյունահանման, գազի արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, գյուղատնտեսության և երկրի ժողովրդական տնտեսության մյուս կարևորագույն ճյուղերի մասնագիտությունների գծով: Սահմանել տվյալ ճյուղերի սուր դեֆիցիտային մասնագիտությունների ցուցակը, մշակել և սահմանված կարգով առաջարկություններ ներկայացնել այդ մասնագիտություններով սովորող ուսանողների բարոյական ու նյութական խրախուսման և արտոնությունների մասին:

Թույլատրված է առանց ընդունելության քննությունների այդ ճյուղերի նշված մասնագիտություններով բուհերն ընդունել այն անձանց, ովքեր միջնակարգ հանրակրթական դպրոցներն ավարտել են ոսկե մեդալներով, իսկ միջնակարգ մասնագիտական ու պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնական հաստատությունները՝ գերազանցիկի դիպլոմներով, ինչպես նաև պրոֆիլային առարկաներից երկու քննությունների հանձնման արդյունքների համաձայն այն անձանց, ովքեր ատեստատում ունեն 4,5-ից ոչ ցածր միջին բալ:

Որոշմամբ նախատեսվում է միջոցառումներ իրականացնել համալսարանների՝ որպես բարձրագույն դպրոցի առաջատար ուսումնամեթոդական ու գիտական կենտրոնների, հետագա զարգացման նպատակով: Ապահովել դրանց նյութատեխնիկական բազայի և գիտամանկավարժական կադրերի կազմի ամրապնդումը: Ճշգրտել համալսարանների մասնագիտությունների ցուցակն ու ուսանողների կոնտինգենտները, հաշվի առնելով կադրերի պատրաստումը ժողովրդական կրթության ողջ սիստեմի, գիտության ու մշակույթի, արդյունաբերության և գյուղատնտեսության համար: Առանձնահատուկ ուշադրություն նվիրել նորաստեղծ համալսարանների գործունեության կատարելագործմանը:

Խնդիր է դրված բարելավել համալսարանների հասարակական գիտությունների դասախոսների պատրաստումը, բաշխումն ու որակավորման բարձրացումը, երիտասարդության ընտրությունը՝ փիլիսոփայություն, քաղաքատնտեսություն, գիտական կոմունիզմ, ՍՄԿԿ պատմություն մասնագիտությունների գծով ուսուցանելու համար: Այդ պրոֆիլի դասախոսական կադրերի պատրաստումը, որպես կանոն, իրականացվում է այն անձանց թվից, ովքեր աշխատանքային ու կենսական փորձ ունեն և իրենց դրականորեն են դրսևորել հասարակական-քաղաքական աշխատանքում: Կատարելագործել համալսարաններին առընթեր հասարակական գիտությունների դասախոսների որակավորման բարձրացման ինստիտուտների աշխատանքը: Ուժեղացնել այդ ինստիտուտների դերը բուհական հասարակագետների առաջավոր փորձի ընդհանրացման ու տարածման գործում:

ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեին հանձնարարված է համալսարաններում և մյուս բարձրագույն ուսումնական հաստատություններում նախատեսել հաճախումով ասպիրանտուրայի գերադաս զարգացում:

Որոշման մեջ նշվում է, որ անհրաժեշտ է միջոցներ ձեռնարկել՝ բարելավելու բուհերի գիտահետազոտական աշխատանքների կազմակերպումը՝ մասնագետների պատրաստման որակը բարձրացնելու խնդիրների հետ սերտ առնչությամբ, բարձրագույն ուսումնական հաստատությունների գիտական պոտենցիալն ավելի արդյունավետ օգտագործելու գիտատեխնիկական ու սո-



ցիալ-տնտեսական կարևորագույն պրոբլեմների լուծման ասպարեզում, արագացնելու ստացված արդյունքների ներդրումը պրակտիկայում:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրություններին, բուհերի ռեկտորատներին, կուսակցական կազմակերպություններին պարտավորեցրել են բարձրացնել ուսանողների կողմից մարքս-լենինյան տեսության, ՍՄԿԿ-ի պատմական փորձի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի, կուսակցության մյուս ղեկավարների աշխատությունների ուսումնասիրման մակարդակը: Ուժեղացնել բոլոր ամբիոնների պատասխանատվությունը ուսումնադաստիարակչական պրոցեսի աշխարհայացքային ուղղվածության համար, ընդսմին ղեկավարվելով «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ:

Ապահովել ՍՄԿԿ-ի և սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության հարցերին ուսանողների օպերատիվ իրազեկությունը, հասնել այն բանին, որ նրանք ճիշտ ըմբռնեն հասարակական զարգացման հրատապ պրոբլեմները: Սիստեմատիկաբար կազմակերպել կուսակցական մարմինների ղեկավար աշխատողների, դասախոսների ելույթները բուհերում, առանձնակի ուշադրություն նվիրելով առաջին հերթին պրոֆեսորներին և դասախոսներին իրազեկ պահելուն:

Անհրաժեշտ է ուսանողներին օժտել զեկուցումների և հրապարակային ելույթների ինքնուրույն պատրաստման հմտությամբ, ստեղծագործական բանավեճերին մասնակցելու ունակությամբ, ապագա դաստիարակի ու կազմակերպչի, կոմունիստական գաղափարների պրոպագանդիստի անհրաժեշտ հատկություններով, երիտասարդությանն օգնել՝ տիրապետելու գաղափարական հակառակորդների դեմ պայքարելու, թշնամական իմպերիալիստական պրոպագանդան, ամեն տեսակի ռևիզիոնիզմն ու օպորտունիզմը մերկացնելու մեթոդներին:

Առաջարկված է ապահովել կոմունիստական կուսակցությանը և սոցիալիստական հայրենիքին անհուն նվիրվածության, սովետական հայրենասիրության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով ուսանողների դաստիարակության հետագա կատարելագործումը, սոցիալիզմի մեծ նվաճումները պաշտպանելու համար նրանց անձնական պատասխանատվության զգացումով համակելը:

Պետք է ուսանողության մեջ դաստիարակել քաղաքական ու բարոյական բարձր կուլտուրա, սկզբունքային վերաբերմունք կոմունիստական բարոյականության նորմերից հանդիպող շեղումների, քաղքենիական սպառողական տրամադրությունների և անցյալի այլ վերապրուկների դրսևորումների նկատմամբ: Այդ աշխատանքում ավելի նպատակասլաց օգտագործել կոլեկտիվի հասարակական կարծիքի ուժը:

Որոշմամբ առաջ է քաշված տնտեսական կադրերի պատրաստման կառուցվածքն ու որակը բարելավելու, ժամանակակից արտադրության պլանային կառավարման, կազմակերպման, տնտեսավարման ողջ մեխանիզմի կատարելագործման պրակտիկայի հետ ուսանողների ուսուցման ու դաստիարակման կապը վճռականորեն ուժեղացնելու, տնտեսագիտական ինստիտուտների ու ֆակուլտետների ուսանողների տեսական պատրաստության մակարդակը բարձրացնելու պահանջը:

Հանձնարարված է ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը բուհերի կառավարման մյուս մարմինների հետ համատեղ ապահովել առանց արտադրությունից կտրվելու կադրերի պատրաստման գործի զգալի բարելավումը: Այդ նպատակով ավելի ակտիվորեն օգտագործել ուսուցման այն մեթոդները, որոնք լիովին հաշվի են առնում ուսանողների երեկոյան և հեռակա կրթության առանձնահատկությունը և գործնական աշխատանքը: Բարձրացնել համամիութենական հեռակա ինստիտուտների՝ որպես այդ սիստեմի կադրերի պատրաստման գիտամեթոդական կենտրոնների դերը:

Հանձնարարված է ՍՍՀՄ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի ու գրքի առևտրի գործերի պետական կոմիտեին ՍՍՀՄ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության հետ համատեղ միջոցներ ձեռնարկել բուհերի ուսանողներին բարձրորակ դասագրքերով և ուսումնական ձեռնարկներով առավել լրիվ ապահովելու համար:

Բարձրագույն ուսումնական հաստատությունների կառավարման մարմինների և համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների առջև խնդիր է դրված բարելավել ուսանողների բուժսպասարկման և հասարակական սննդի կազմակերպումը, ֆիզկուլտուրային-կազդուրիչ և կուլտուր-մասսայական աշխատանքը:

ՀԱՄԿԽ-ի, լուսավորության, բարձրագույն դպրոցի և գիտական հիմնարկությունների աշխատողների արհմիության Կենտկոմի ուշադրությունը հրավիրված է բուհերում ուսումնադաստիարակչական աշխատանքի, սոցիալիստական մրցության ձևերի ու մեթոդների կատարելագործման, արտադրական ձեռնարկությունների, գիտության ու մշակույթի հիմնարկությունների հետ ստեղծագործական համագործակցության զարգացման բնագավառում արհմիութենական կազմակերպությունների դերի հետագա բարձրացման անհրաժեշտության վրա: Հանձնարարված է լրացուցիչ միջոցներ ձեռնարկել ուսանողների, ասպիրանտների և դասախոսների բնակարանակենցաղային պայմանների բարելավման համար: Բուհերի հետ համատեղ զարգացնել բուժկանխարգելիչ և մարզակազդուրիչ հիմնարկությունների ցանցը:

Որոշման մեջ նշվում է, որ ՀամԼԿԵՄ Կենտկոմը, կոմերիտմիության կոմիտեները պետք է բուհերի կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը նպատակամղեն ընտրած մասնագիտությանը խորապես և ստեղծագործաբար տիրապետելու համար յուրաքանչյուր կոմերիտական ուսանողի, ուսումնական խմբերի կոլեկտիվների պատասխանատվության բարձրացմանը: Ակտիվացնել կոմերիտական կազմակերպությունների աշխատանքը երիտասարդության գաղափարաքաղաքական դաստիարակության, նրան վարքագծի բարձր կուլտուրա, ուսումնական կարգապահության, սոցիալիստական բարոյականության նորմերի խախտումների նկատմամբ անհանդուրժողականության զգացում պատվաստելու գործում: Ուսանողական ջոկատներն ավելի արդյունավետ օգտագործել ապագա մասնագետների աշխատանքային, քաղաքական ու պրոֆեսիոնալ դաստիարակման ասպարեզում:

Որոշումը միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին պարտավորեցնում է ուժեղացնել բուհերի կուսակցական կազմակերպությունների ղեկավարումը: Կուսակցական կազմակերպություններին ամենօրյա օգնություն ցույց տալ բարձրագույն ուսումնական հաստատությունների գլխավոր խնդիրը լուծելու՝ ուսանողների ուսուցման որակը ըստ ամենայնի բարձրացնելու և գաղափարաքաղաքական դաստիարակությունը բարելավելու, բուհերի, ֆակուլտետների և ամբիոնների ղեկավար կադրերի ընտրության, տեղաբաշխման, դաստիարակման աշխատանքը կատարելագործելու ասպարեզում: Հասնել այն բանին, որ յուրաքանչյուր դասախոս մշտապես ընդլայնի իր քաղաքական ու կուլտուրական մտահորիզոնը, լինի կոմունիստական բարձր գաղափարայնության, կուսակցականության, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի, բարոյական անաղարտության և ազնվության տիպար: Ընդլայնել պրոֆեսորների և դասախոսների մասնակցությունը աշխատավորության շրջանում տարվող դասախոսական, քաղդաստիարակչական աշխատանքին: Ռեկտորների խորհուրդներն ավելի ակտիվորեն օգտագործել արտադրական ու գիտական կազմակերպությունների հետ բուհերի կապերը զարգացնելու նպատակով:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման մեջ վստահություն է հայտնվում, որ բարձրագույն ուսումնական հաստատությունների կուսակցական կազմակերպությունները և կոլեկտիվները բոլոր ուժերն ու գիտելիքները կներդնեն կուսակցության կանխագծումները կատարելու համար, կբազմապատկեն բարձրագույն դպրոցի ավանդը կոմունիստական շինարարության գործում:

---

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ ՈՒԺԸ

*ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ բնագավառում մեր կուսակցության ծրագրային նպատակներից մեկը սովետական մարդուն մարքս-լենինյան խոր գաղափարայնությամբ տոգորելն է: ՍՄԿԿ XXV համագումարը մշակեց այդ նպատակի իրագործման հստակ կոմպլեքսային ծրագիրը: Սովետական հասարակության հոգևոր կյանքի հարաճուն վերելքի համար վիթխարի նշանակություն ունի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, որտեղ իրենց զարգացումն ու խորացումն են գտել համագումարի առաջադրած ծրագրային դրույթներն ու եզրահանգումները:*

*Որքան բարձր է հասարակական զարգացման աստիճանը, այնքան ավելի լայն է իր անդամներին այդ նույն հասարակության ներկայացրած պահանջների ծավալը: Զարգացած սոցիալիզմն այդ իմաստով մարդկության պատմության մեջ որակապես նոր փուլ է նշանավորում: Անհատի գաղափարաքաղաքական ու բարոյական նկարագիրն այստեղ բնորոշվում է տարողունակ այնպիսի հատկանիշների ամբողջությամբ, ինչպիսիք են գիտական աշխարհայացքը, խոր գաղափարայնությունը, բարոյական անաղարտությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը, այն ամենը, ինչը, վերջին հաշվով, պայմանավորում է համակողմանի և ներդաշնակ զարգացած մարդու գիտակցությունն ու հոգևոր աշխարհը:*

*Հետևաբար, գաղափարախոսության ոլորտի նկատմամբ մեր կուսակցության հարաճուն ուշադրությունը պայմանավորված է հասարակական առաջընթացի պահանջներով, հասարակության բոլոր անդամներին գաղափարաքաղաքական ու բարոյական այնպիսի հատկանիշներով տոգորելու անհրաժեշտությամբ, որոնք բխում են զարգացած սոցիալիզմի բուն էությունից: Երկրում իրագործվող վիթխարի մասշտաբների սոցիալ-տնտեսական վերափոխումների պայմաններում առանձին նշանակություն է ստանում Վ. Ի. Լենինի պատգամն այն մասին, թե որքան ավելի խոր է բարեփոխությունը, որ մենք ուզում ենք իրագործել, այնքան ավելի շատ հետաքրքրություն և գիտակցական վերաբերմունք պետք է հարուցել կենսագործվող բարեփոխությունների նկատմամբ, նորանոր միլիոնների և տասնյակ միլիոնների համոզել դրա անհրաժեշտությունը (տե՛ս* **Երկեր**, *հ. 31, էջ 630):*

*Սովետական բազմազգ ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, երկրում ստեղծել է նյութական ու հոգևոր արժույթների վիթխարի պոտենցիալ, որի արդյունավետ օգտագործումն այսօր մեծ չափով պայմանավորված է աշխատավորական զանգվածների գիտակցականությամբ, ակտիվությամբ ու կազմակերպվածությամբ: Այդ պայմաններում, բնականաբար, առանձին կարևորություն է ստանում գաղափարախոսական աշխատանքի հետագա բարելավման, նրա արդյունավետության բարձրացման, մարդու դաստիարակության գիտականորեն հիմնավորված մեթոդների արմատավորման խնդիրը:*

*ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐՈՒՄ սահմանված են արդի փուլում կուսակցության գաղափարախոսական գործունեության գլխավոր ուղղու-*

թյունները։ Համագումարի դրույթներն իրենց հետագա զարգացումը գտան այնպիսի կարևոր փաստաթղթերում, ինչպիսիք են գաղափարադաստիարակչական աշխատանքի հարցերի կոմպլեքսային լուծման փորձի, կուսակցական ուսուցման խնդիրների, մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցների ղեկավարման, բանավոր քաղաքական ագիտացիայի դերի բարձրացման, դասախոսական պրոպագանդայի բարելավման միջոցառումների, աշխատավորների տնտեսագիտական կրթության դերի ուժեղացման, ինքնագործ գեղարվեստական ստեղծագործության հետագա զարգացման, գյուղական բնակչության կուլտուրական սպասարկումը բարելավելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները։ Արդեն իսկ որոշումների թվարկումը ցույց է տալիս, որ այս փաստաթղթերում ամփոփված են գաղափարախոսական գործունեության գրեթե բոլոր հիմնական ոլորտներում կուսկազմակերպությունների խնդիրներն ու անելիքները։

Գաղափարախոսական աշխատանքի նկատմամբ ՍՄԿԿ Կենտկոմի, նրա քաղբյուրոյի ամենօրյա ուշադրությունը չէր կարող իր բարերար ազդեցությունը չունենալ կուսակցական կազմակերպությունների, գաղափարախոսական ոլորտի բոլոր օղակների գործունեության վրա։ Վերջին տարիներին, ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում շատ բան է արվել գաղափարադաստիարակչական աշխատանքը բարելավելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու ասպարեզում, նկատելիորեն արդյունավետ է դարձել կուսակցական ու տնտեսագիտական ուսուցումը։

Կուսակցության գաղափարախոսական գործունեության որոշիչ ուղղություններից մեկը տնտեսական զարգացման, ամբողջությամբ վերցրած՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման արդյունավետ գաղափարախոսական ապահովումն է։ Հանրապետության կուսակցական կազմակերպությունները, կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի, գաղափարախոսական հարցերի վերաբերյալ Կենտկոմի հետագա որոշումները, ակներևորեն ամրապնդել են տնտեսական ու քաղաքական աշխատանքի միասնությունը, բարձրացրել գաղափարախոսական աշխատանքի՝ որպես տնտեսական խնդիրների լուծման էական գործոնի, դերն ու արդյունավետությունը։

Ժողովրդական տնտեսության տարբեր ոլորտներում զարգացման ինտենսիվ գործոնների ազդեցության ուժեղացման մասին է վկայում այն, որ նկատելիորեն բարձրացել է աշխատանքի գիտական կազմակերպման, էկոնոմիկայի կառավարման գիտական մակարդակը։ Հանրապետության աշխատավորները հաջողությամբ կատարում և գերակատարում են հնգամյա պլանով սահմանված առաջադրանքները։ Նրանց ձեռք բերած ակնբախ հաջողությունների պերճախոս ապացույցն այն է, որ Հայկական ՍՍՀ-ն տասներորդ հնգամյակի անցած երեք տարիներին անընդմեջ արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշին։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակի արդյունքները ցույց են տալիս, որ հանրապետության աշխատավորները հաջողությամբ են կատարում նաև հնգամյակի չորրորդ տարվա առաջադրանքները. Նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի նկատմամբ արդյունաբերական արտադրության ծավալը կազմել է 107,5, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 102,9 տոկոս։ Որակի համար մղվող պայքարում հուսադրող ցուցանիշ է այն, որ այժմ հանրապետությունում պետական որականիշով թողարկվում է արտադրանքի ընդհանուր քանակի 13,4 տոկոսը։

Անտարակույս, էկոնոմիկայում ձեռք բերված հաջողություններն ամենից առաջ սոցիալիստական տնտեսավարման սկզբունքների ճիշտ կիրառման, տնտեսության կուսակցական ղեկավարման մակարդակի, մրցության արդյունավետության բարձրացման արդյունք են։

Տնտեսական գործունեության և գաղափարական-քաղաքական աշխատանքի միասնության ամրապնդման ասպարեզում որոշակի դեր է պատկանում քաղաքական և տնտեսագիտական ուսուցմանը։ Անցած ուսումնական տարում կուսակցական ու կոմերիտական լուսավորության բոլոր օղակներում, ինչպես նաև աշխատավորների տնտեսագիտական կրթության սիստեմում ընդգրկված



էր ավելի քան 750 հազար մարդ, իսկ դպրոցներում ու սեմինարներում՝ հանրապետության կոմունիստների ավելի քան 90 տոկոսը։ Տնտեսական, գաղափարախոսական, մտավոր աշխատանքի տարբեր բնագավառների շուրջ 36 հազար ներկայացուցիչներ ուսումնասիրում էին Լ. Ի. Բրեժնևի «ՍՄԿԿ գաղափարական աշխատանքի հրատապ հարցերը» գիրքը։ Աշխատավորների ամենալայն զանգվածներին ուսուցման ոլորտում ընդգրկելը, պրոպագանդան, ինչպես այդ Վ. Ի. Լենինն էր պահանջում, տնտեսական շինարարության քաղաքական փորձի վրա խարսխելը, անշուշտ, նպաստեցին տնտեսավարման արդյունավետության որակական ցուցանիշների բարելավմանը, հանրային արտադրության զարգացման ինտենսիվ գործոնների արմատավորմանը։

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՑ ՀԵՏՈ գաղափարախոսական աշխատանքի բարելավման արդյունքներն ակնհայտ են։ Բայց այդ բնագավառում դեռևս քիչ չեն նաև թերությունները, որոնց հաղթահարման միջոցները նշված են «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։ Թերություններից գլխավորը, ինչպես նշում է ՍՄԿԿ Կենտկոմը, այն է, որ գաղափարադաստիարակչական աշխատանքի որակը ոչ միշտ է համապատասխանում սովետական մարդկանց կրթական և կուլտուրական աճած մակարդակին ու պահանջմունքներին, անբավարար են հաշվի առնվում ժամանակակից սովետական հասարակության սոցիալ-տնտեսական պրոցեսների ու հոգևոր կյանքի շարժունակությունը, միջազգային ասպարեզում խիստ սրված գաղափարախոսական պայքարի բնույթը։

Հանրահայտ է, որ կոմունիզմի կառուցման մեր առաջընթացի հետ միասին, աճում են այն խնդիրների մասշտաբներն ու բարդությունը, որոնք կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ լուծում է սովետական ժողովուրդը։ Զարգացած սոցիալիզմի հեղափոխական-վերակերտիչ պրակտիկայի տեսական հիմնավորումն ու իմաստավորումը գաղափարախոսական ոլորտի կարևորագույն խնդիրն է։ Այդ պրակտիկայի առավել բարդ բնագավառներից մեկը նոր մարդու ձևավորումն է, կոմունիստական դաստիարակությունը։ Կյանքը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ այս ասպարեզում ձեռք բերված հաջողությունները չպետք է գնահատվեն միայն անցյալի ու ներկայի դիրքերից։ Այդ հաջողությունները յուրատեսակ բազա են գաղափարաքաղաքական ավելի բարդ ու մասշտաբային խնդիրների լուծման, սոցիալ-տնտեսական առաջընթացի պահանջներին համապատասխան դաստիարակչական աշխատանքի բովանդակության հետագա հարստացման համար։

Հասուն սոցիալիզմի տարբերիչ առանձնահատկություններից մեկը նախադրյալների այն ողջ համակարգի առկայությունն է, որն անհրաժեշտ է անհատի համակողմանի զարգացման համար։ Մեր կուսակցության քաղաքականության ու գաղափարախոսության կենտրոնում մարդն է, հանուն մարդու են ստեղծված և նրան են ծառայում նյութական, մշակութային ու հոգևոր արժեքները։ Խնդիրն այդ ամենի ավելի արդյունավետ օգտագործումն է, նոր մարդու ձևավորման ասպարեզում այդ ամենից առավելագույն հատուցում ապահովելը։

Հարուստ է մեր գաղափարախոսական աշխատանքի զինանոցը։ Ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ է նշված, մենք ունենք լավ պատրաստված մեծաթիվ գաղափարական կադրեր, կուտակված է պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքի հարուստ փորձ, երկրում ստեղծված է հզոր, ժամանակակից տեխնիկայով հագեցած ինֆորմացիոն-պրոպագանդիստական ապարատ, լայնորեն զարգացած մամուլ, հեռուստատեսություն և ռադիո։

Քաղաքական-դաստիարակչական աշխատանքի նյութական բազայի ամրապնդման նկատմամբ կուսակցության մշտական հոգատարության բազմաթիվ պերճախոս օրինակներ կարելի է բերել մեր հանրապետությունից, որտեղ գործում են քաղաքական լուսավորության և գիտատեխնիկական պրոպագանդայի բազմաթիվ կենտրոններ, ժողովրդական համալսարաններ, կուլտուրայի հիմնարկություններ, հազարավոր գրադարաններ ու ակումբներ։ Սովետական

մարդուն կոմունիստական գաղափարներով ու բարոյականությամբ տոգորելու շնորհակալ գործում քաղաքական ու կուլտուր-լուսավորական այդ ապարատը հիրավի լուրջ ներդրում ունի: Աշխատավորական կոլեկտիվների քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հմուտ կազմակերպման ոչ քիչ թվով օրինակներ կարելի է բերել Երևան, Լենինական, Կիրովական, Դիլիջան քաղաքների, Իջևանի, Հրազդանի, Թումանյանի և այլ շրջանների կուսակցական կազմակերպությունների պրակտիկայից:

Այսօր, սակայն, գաղափարախոսական աշխատանքի իրավիճակը համադրելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հետևություններին ու հանձնարարականներին, այդ որոշման պահանջների ոգով գնահատելով ձեռք բերվածը, չի կարելի չնշել, որ կուսակցական աշխատանքի այդ կարևոր բնագավառում դեռևս շատ են թերություններն ու վրիպումները, գաղափարախոսական ոլորտի մեր գործունեության մակարդակը միշտ չէ, որ համապատասխանում է կոմունիստական շինարարության արդի փուլի պահանջներին:

Գաղափարախոսական, ողջ դաստիարակչական աշխատանքի մասին լուրջ խոսակցություն ծավալվեց ՍՄԿԿ Կենտկոմի որոշման քննարկմանը նվիրված սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, կուսակցության շրջանային ու քաղաքային կոմիտեների պլենումներում: Ըմբռնելով հարցի ամբողջ կարևորությունը, կոմունիստները, կատարված դրականը արժեքավորելով հանդերձ, սրտացավ մտահոգությամբ էին խոսում վրիպումների մասին, իրավացիորեն պահանջում գաղափարախոսական աշխատանքի սլաքն ուղղել սոցիալիստական իրականության հետ անհարիր նեգատիվ երևույթների դեմ, հաղթահարել այդ բնագավառում նկատվող ձևականությունը:

Հանրապետության կուսակցական կազմակերպության գաղափարախոսական-դաստիարակչական գործունեության հարցը հանգամանորեն քննարկվեց ՀԿԿ Կենտկոմի 1979 թ. հունիսյան պլենումում, որտեղ զեկուցումով հանդես եկավ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը: Նշելով, որ գաղափարախոսական աշխատանքի ինչպես ձեռք բերված դրական արդյունքները, այնպես և առկա թերությունները, որոնց մասին նշված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, վերաբերում են նաև մեր հանրապետության կուսակցական կազմակերպությանը, պլենումը գործարար մթնոլորտում բացահայտեց գոյություն ունեցող թերությունները, մշակեց կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական գործունեության որակի ու արդյունավետության բարձրացման, կյանքի հետ նրա կապի ամրապնդման հարուստ ծրագիր:

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ գաղափարախոսական-պրոպագանդիստական աշխատանքի վիթխարի փորձ է կուտակել, որն անխափան ծառայում է նրան՝ կոմունիզմի վեհ իդեալներով աշխատավորական զանգվածներին համակելու գործում: Գաղափարախոսական ճակատի աշխատողների պարտքն է՝ այսուհետ ևս մեծագույն խնամքով վերաբերվել այդ անսպառ զինանոցին: Պրակտիկայում, ցավոք, մենք երբեմն ականատես ենք որոշ դեպքերի, երբ մարդկանց դաստիարակության գործում ոչ բանիմաց, դիլետանտական վերաբերմունքը արժեքազրկում է այդ փորձը, դոգմայի վերածում գաղափարախոսական աշխատանքի շատ արժեքավոր սկզբունքներ: ՍՄԿԿ Կենտկոմն իր նոր որոշմամբ պահանջում է հետևողականորեն բարձրացնել պրոպագանդայի և ագիտացիայի գիտական մակարդակը, կոորդինացնել ջանքերն այն հաշվով, որպեսզի ապահովվի բնակչության բոլոր խավերի գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության միասնությունը:

Գաղափարախոսական պրոցեսի կառավարման արդյունավետության բարձրացման կարևոր պայմանը այդ աշխատանքի գիտական ճիշտ պլանավորումն է, որը հաշվի է առնում ինչպես հեռանկարային, այնպես էլ ընթացիկ խնդիրները: Ինչպես էկոնոմիկայում, գաղափարախոսության ոլորտում ևս պլանը պետք է դառնա գլխավոր գործիք, որը կոչված է օգնել մեզ վերջնական բարձր արդյունքի հասնելու կոմունիստական դաստիարակության բնագավառում: Նման պլանների մշակմանը կուսակցական կազմակերպությունները



պետք է ներգրավեն փիլիսոփաներին, տնտեսագետներին, սոցիոլոգներին, մանկավարժներին, հոգեբաններին, գիտության այլ ճյուղերի մասնագետներին:

Կոմունիստական դաստիարակության պրոցեսը բազմաթիվ բաղադրատարրեր ունի՝ կյանքի նյութական ու հոգևոր պայմանները, սոցիալական միջավայրը, ագիտացիայի ու պրոպագանդայի միջոցները, կուլտուրան, արվեստը և այլն: Կառավարելով այդ պրոցեսը, կուսակցական կազմակերպությունները պետք է լրջորեն զբաղվեն հիշյալ կոմպոնենտներից յուրաքանչյուրի դաստիարակչական գործակցի բարձրացմամբ, այդ ամենը հմտորեն ծառայեցնեն միևնույն նպատակին: Գաղափարախոսական-քաղաքական աշխատանքում կոմպլեքսային մոտեցումն արժեքավոր է նրանով, որ այն առավելագույն ամբողջականությամբ դաստիարակչական պրոցեսում ապահովում է բոլոր այդ բաղադրատարրերի արդյունավետ փոխգործողությունը:

Զարգացած սոցիալիզմի հասարակության անդամն ըստ էության մարմնավորում է կոմունիստական շինարարության ողջ պրոցեսը: Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ հմտորեն հաշվի առնել օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների ազդեցությունը, ուսումնասիրել բնակչության տարբեր խմբերի հետաքրքրությունների յուրահատկությունը, խելացիորեն զուգակցել դաստիարակության մասսայական ու անհատական միջոցները, արտադրական կոլեկտիվում և ըստ բնակության վայրի գաղափարական ներգործությունը, մշակել և կիրառել չափանիշների այնպիսի համակարգ, որը հնարավորություն է տալիս գիտական օբյեկտիվությամբ վերլուծելու դաստիարակչական միջոցների արդյունավետությունը և այդ հիման վրա կատարելագործելու գաղափարախոսական գործունեությունը:

Սոցիալիզմի օրոք, երբ հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքների գիտակցված կիրառումը մեծ չափով պայմանավորում է ընդհանուր առաջընթացը, խիստ աճում է սուբյեկտիվ գործոնի դերն ու նշանակությունը: Ուստի և գաղափարախոսական պրոցեսի ղեկավարման ասպարեզում կուսակցական կազմակերպությունները չեն կարող սահմանափակվել միայն պրոպագանդայի ու ագիտացիայի իրենց ֆունկցիաներով: Նրանք պետք է կարգավորեն և կոորդինացնեն այնպիսի գործոնների դաստիարակչական ներգործությունը, ինչպիսիք են կյանքի նյութական պայմանները, աշխատանքային ոլորտը, կենցաղը, մարդկանց հանգիստը:

Գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունն ուղղակիորեն առնչվում է հասարակության մեջ մարդու հարաբերությունների ու կապերի ողջ սիստեմի կատարելագործման հետ: Մեր առաջընթացի օրինաչափ արդյունքը մարդու համակողմանի զարգացման բարոյաքաղաքական բարենպաստ մթնոլորտի ստեղծումն է, որը մենք իրավացիորեն համարում ենք սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկը: Խորապես սխալ կլինի կարծել, սակայն, թե նման մթնոլորտի առկայությունը ինքնին արդեն ապահովում է նոր մարդու ձևավորումը: Իրականում քիչ չեն փաստերը, երբ մարդու, նույնիսկ մարդկանց ամբողջ խմբերի բարոյահոգեբանական վիճակն ու վարքագիծը խիստ ետ են մնում կոմունիստական իդեալի իրականացման՝ արդեն ձեռք բերված մակարդակից:

ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումից հետո, ինչպես հայտնի է, մեր հանրապետությունում խոշոր միջոցառումներ իրականացվեցին հասարական-բարոյական մթնոլորտը առողջացնելու, սոցիալիստական ապրելակերպին խորթ բարքերն ու երևույթները արմատախիլ անելու նպատակով: Այդ պրոցեսն այսօր էլ շարունակվում է և հետագա խորացման կարիք ունի: Այսօր ևս տակավին մեզ հարկ է լինում խոսել այնպիսի խայտառակ երևույթների, սոցիալական այնպիսի չարիքի հաղթահարման մասին, ինչպիսիք են կաշառակերությունը, դրամաշորթությունը, բյուրոկրատիզմը, քաշքշուկը, ֆորմալիզմը: Պետք է միշտ հիշել, որ ոչինչ այնպես կործանարար ձևով չի ներգործում դաստիարակության պրոցեսի վրա, ինչպես օրինականության խախտումները: Բազում մարդկանց տարիների տքնաջան աշխատանքով համոզմունք դարձած գաղափարական սկզբունքները կարող են խաթարվել, եթե մենք, բարոյական վսեմ նորմեր պրոպագանդելով ու արմատավորելով հանդերձ, ժա-

մանակին չտեսնենք ու արմատախիլ չանենք ընչաքաղցության ու պորտաբուծության դրսևորումները:

Յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր կուսկազմակերպություն պետք է ապրի հասարակական մթնոլորտի հետագա առողջացման մտահոգությամբ. դա մեր ողջ գաղափարախոսական աշխատանքի կարևորագույն խնդիրն է, որքանով որ առողջ հասարակական հարաբերությունները կարող են զարգանալ միայն առողջ հասարակական մթնոլորտում:

ԽՈՍԵԼ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ առավել ընդհանրական ցուցանիշի մասին, դա ամենից առաջ նշանակում է խոսել սովետական քաղաքացու հաստատուն և ակտիվ կենսադիրքորոշման մասին: Սոցիալիստական ապրելակերպը, մեր ողջ կացութաձևը օբյեկտիվ լայն հնարավորություններ են ընձեռում ակտիվ կենսադիրքորոշման ոգով մարդկանց դաստիարակելու համար և իրենց ինքնահաստատման օրվանից ծառայում են իբրև նոր մարդու ձևավորման զորեղ գործոններ: ՍՄԿԿ XXV համագումարն ըստ ամենայնի կարևորեց ակտիվ կենսադիրքորոշման պրոբլեմը, որն իր օրինական տեղը գտավ բարոյական դաստիարակության կատեգորիաների համակարգում:

Կենսագործելով համագումարի ցուցումները, հանրապետության կուսակցական կազմակերպությունները ձգտում են անհատի ակտիվ կենսադիրքորոշման պրոբլեմը լուծել կոմպլեքսայնորեն, սերտորեն զոդելով գաղափարական ու աշխատանքային դաստիարակությունը: Այս աշխատանքի արդյունքներն այժմ կարելի է տեսնել հանրապետության ամենատարբեր կոլեկտիվների կոնկրետ գործերում: Ուժեղացել է պայքարը հակահասարակական երևույթների դեմ, կոմունիստական բարոյականության նորմերը խախտողների դեմ: Ակտիվ կենսադիրքորոշման հաստատման մասին է վկայում այն, որ սովետական քաղաքացին այսօր ավելի անհանդուրժող է թերությունների, մեր կյանքի հակոտնյաների նկատմամբ, ավելի լայն հասարակական հետաքրքրություններով է ապրում, ավելի հետևողականորեն է պայքարում մեր իդեալների հաստատման համար:

Սակայն դաստիարակչական աշխատանքի ոլորտից դեռևս դուրս են մնում բավական թվով մարդիկ, հատկապես սպառողական հոգեբանության կրողները, իրավազանցները, հանրօգուտ աշխատանքից խուսափողները՝ նրանք, ովքեր առավել մեծ չափով դրա կարիքն ունեն: Կուսակցական, կոմերիտական, արհմիութենական մի շարք կազմակերպություններ, կուլտուր-լուսավորական շատ հիմնարկներ ու վարչական մարմիններ հաճախ նույնիսկ չեն էլ փորձում իրենց տրամադրության տակ եղած միջոցներով ներազդել այդ մարդկանց վրա և տագնապի ազդանշան են հնչեցնում միայն այն ժամանակ, երբ քաղաքացին հանցագործություն է կատարում:

ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում խոսվեց այն մասին, որ առանձին դեպքերում մեզ մոտ (օրինակ՝ Արարատի շրջանում) նկատվում է հանցագործությունների և հակահասարակական երևույթների աճի միտում: Ասենք ուղղակի՝ լուրջ մտորումների նյութ են տալիս այն փաստերը, երբ կուսակցական ու հասարակական որոշ կազմակերպություններ համակերպվում են այնպիսի ցավալի իրողության հետ, ինչպիսին հանցագործությունների աճի միտումն է: ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, քննարկելով Արտաշատի շրջանում հանցագործությունների և իրավախախտումների դեմ մղվող պայքարի վիճակի հարցը, խիստ մատնացույց արեց շրջկոմին՝ պորտաբուծության դեմ պայքարելու բնագավառում անբավարար աշխատանքի համար: Պորտաբուծության դեմ պայքարն անմիջականորեն և ուղղակիորեն առնչվում է մի այլ՝ աշխատանքի հեղինակության բարձրացման հարցի հետ: Հանդուրժել անաշխատ եկամուտներով և հաճախ ցոփ կյանքով ապրող պորտաբույծին, նշանակում է անուղղակիորեն նպաստել մեր մեծագույն սրբության՝ աշխատանքի՝ իբրև ապրուստի գլխավոր միջոցի, արժեքազրկմանը: Հարցն այսպես պետք է ըմբռնեն բոլոր նրանք, ում վստահված է մարդկանց բարոյական դաստիարակության պատասխանատու գործը:

Մեր խնդիրն է՝ մարդկանց սովորեցնել ՍՍՀՄ Սահմանադրությամբ տրված



իրավունքներն ու ազատությունները ճիշտ զուգակցել իրենց քաղաքացիական պարտականությունների հետ. հասարակական կարծիքի հզոր ուժը պետք է գործադրվի ոչ միայն այն ժամանակ, երբ մարդը խախտում է սոցիալիստական համակեցության նորմերը, այլև այն դեպքում, երբ նա չի փորձում ընձեռված լայն հնարավորություններն օգտագործել իր գիտական, գեղարվեստական, տեսական-քաղաքական մակարդակը բարձրացնելու, իր հոգևոր աճի ու բարոյական կատարելագործման համար: Այս ասպարեզում մեծ է հատկապես աշխատանքային կոլեկտիվների դերը: Մարդն իրեն առավել ամբողջականորեն դրսևորում է աշխատանքում, և կոլեկտիվը լայն հնարավորություն ունի հանգամանորեն իրազեկ լինելու նրա նախասիրություններին, ներազդելու դրանց ձևավորման վրա, զարգացնելու հասարակայնորեն օգտակար հետաքրքրություններն ու մղումները:

ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ-ԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ կուսակցական կազմակերպությունները բազմաթիվ ազդակներ ունեն, որոնցից յուրաքանչյուրի հնարավորությունների ճիշտ օգտագործումը էապես նպաստում է գործունեության այդ կարևոր ոլորտում արդյունավետության բարձրացմանը: Խոսքն ամենից առաջ մեր հասարակագիտական մտքի կենտրոնների, մամուլի, հեռուստատեսության ու ռադիոյի, գրականության, կինոյի, ստեղծագործական այլ կազմակերպությունների և օջախների մասին է:

Գաղափարախոսական-դաստիարակչական իրենց գործունեության ընթացքում կուսակցական կազմակերպություններն ակնկալում են հասարակագետների լուրջ օգնությունը, բայց նրանց այդ սպասելիքները ոչ միշտ են արդարանում: Դժվար է հիշատակել վերջին տարիներին լույս տեսած գեթ մի քանի աշխատություն, որտեղ գիտական խորությամբ ու իրազեկությամբ վերլուծված լինեին կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքի փորձը, գիտնականները քաղաքական-դաստիարակչական պրակտիկ գործունեության հետագա բարելավման ասպարեզում կուսակցական ակտիվին ինչպես հարկն է չեն զինում գիտական հետազոտություններով ու հանձնարարականներով: Լուրջ բարելավման կարիք ունի նաև դասախոսական խմբերի, «Գիտելիք» ընկերության ու նրա բաժանմունքների գործունեությունը: Հաճախ այստեղ աշխատանքը չափվում է կարդացված դասախոսությունների թվով և ոչ ունկնդրի վրա դրանց ունեցած ազդեցությամբ:

Իր նոր որոշման մեջ ՍՄԿԿ Կենտկոմը հանգամանորեն անդրադարձել է գաղափարադաստիարակչական աշխատանքում մասսայական ինֆորմացիայի միջոցների դերին: Նրանում արծարծված դրույթները, անշուշտ, ծրագրային նշանակություն ունեն մամուլի, հեռուստատեսության ու ռադիոյի ողջ գործունեության բարելավման համար: ՍՄԿԿ Կենտկոմի խիստ, բայց միանգամայն արդարացի դիտողությունները, ինչ խոսք, վերաբերում են նաև մեր հանրապետության մասսայական ինֆորմացիայի օրգաններին ու կազմակերպություններին:

Հանրապետության մամուլի, ինֆորմացիայի ծառայության օրգանները, հեռուստատեսությունը, ռադիոն, ինչպես այդ մասին նշվեց ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում, մեծ աշխատանք են կատարում ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, տասներորդ հնգամյակի առաջադրանքների հաջող իրականացման համար աշխատավորներին մոբիլիզացնելու նպատակով, ակտիվորեն օգնում են կուսակցական կազմակերպություններին գաղափարադաստիարակչական գործունեության ասպարեզում:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների չափանիշների տեսանկյունով քննարկելով իրենց անելիքները, հանրապետության մասսայական ինֆորմացիայի միջոցների ստեղծագործական կոլեկտիվները գտնում են, անշուշտ, որ դեռ ամեն բան չեն արել՝ իրենց վստահված գաղափարական այդ հզոր զենքի վիթխարի հնարավորությունները գործադրելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու նպատակով: Մամուլը, հեռուստատեսությունն ու ռադիոն միշտ չէ, որ քայլում են հանրապետության սոցիալական ռիթմին համընթաց, նրանց

դեռ պակասում են հասունացած հարցերն ու պրոբլեմները համարձակորեն քննարկման դնելու ունակությունն ու նախաձեռնությունը, անքավարար են հաղթահարվում պարադայնությունը, գավառայնությունը, գորշությունն ու շաբլոնը։

Լուրջ թերություններ կան հանրապետության գրահրատարակչության բնագավառում, որտեղ երբեմն կուսակցական սկզբունքայնությունը փոխարինվում է սուբյեկտիվ խնամակալությամբ։ Հետևանքը լինում է այն, որ լույս աշխարհ են գալիս գաղափարապես ու գեղարվեստորեն ցածրարժեք, իսկ երբեմն էլ պարզապես խոտան գրքեր։ Կուսակցական կազմակերպությունները պետք է միշտ իրենց տեսադաշտում պահեն գաղափարական պրոդուկցիայի հարցը, այն, թե ի՛նչ և ի՛նչպես է հրատարակվում։

Զարգացած սոցիալիզմի տնտեսական, սոցիալական, գաղափարախոսական ու քաղաքական սիստեմների միասնության ու փոխգործողության շրջանակներում անշեղորեն աճում է գաղափարախոսական գործոնի դերը։ Եվ դա հասկանալի է. այն կոչված է աշխատավորական լայն զանգվածներին հաղորդակից դարձնելու կուսակցության քաղաքականությանը, դրա իրականացման համար մղվող պայքարին։ Գաղափարական աշխատանքը, այսպիսով, վիթխարի ազդեցություն է ունենում մեր կենսագործունեության բոլոր ոլորտների վրա և ծառայում է իբրև ընդհանուր առաջընթացի հզոր արագացուցիչ։

Ղեկավարվելով «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման դրույթներով, հանրապետության կուսակցական կազմակերպությունները որակական նոր աստիճանի կբարձրացնեն աշխատավորների դաստիարակության գործը և իրենց ավանդը կներդնեն գաղափարախոսական, քաղաքական ու դաստիարակչական այն խնդիրների լուծման ասպարեզում, որ առաջադրել է ՍՄԿԿ XXV համագումարը։

---



# ՀՆԳԱՄՅԱԿՆԵՐԸ ԵՎ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՊԼԱՆԱՅԻՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

**ՅՈՒ. Ե. ԽՈՋԱՄԻՐՅԱՆ**
Հայկական ՍՍՀ պետպլանի նախագահի տեղակալ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ բոլոր բնագավառներում սովետների երկրի ժողովրդական տնտեսության ձեռք բերած վիթխարի հաջողությունները անխզելիորեն կապված են Սովետական Միության կոմունիստական կուսակցության կանխագծումների իրականացման հետ, որոնք արտահայտված են տասը հնգամյա պլանների առաջադրանքներում։ «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանի 50-ամյա տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը վառ կերպով բացահայտում է սոցիալիստական հնգամյակների նշանակությունը, գիտականորեն հիմնավորված պլանավորման դերը՝ որպես կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման գլխավոր միջոցի։

Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը հիմնավորեցին տնտեսության պլանային վարումը սոցիալիզմի օրոք։ Նրանք մատնանշեցին, որ այն բանից հետո, երբ քաղաքական իշխանությունն անցնում է պրոլետարիատին և արտադրության հիմնական միջոցները վերածվում են ամբողջ հասարակության սեփականության, «հնարավոր է դառնում հանրային արտադրությունը նախամտածված պլանով» (տե՛ս Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, «Հայաստան» հրատ., հ. 3, 1978, էջ 193)։ Զարգացնելով և խորացնելով այս դրույթները, Վ. Ի. Լենինը մշակեց սոցիալիստական էկոնոմիկայի պլանային կառավարման հիմունքները։ Նա ցույց տվեց, որ սոցիալիզմի օրոք ժողտնտեսության պլանաչափ զարգացումը օբյեկտիվ օրինաչափություն է։

Հայտնի է, որ նույնիսկ իմպերիալիզմի փուլում ավելի ու ավելի հաճախ են արտադրության պետական-մոնոպոլիստական կարգավորման փորձեր արվում՝ նպատակ ունենալով հաղթահարել հասարակական տարերային արտադրության վերահաս ճգնաժամերը։ Պլանային կառավարման այդ փորձերը, որոնք կապիտալիստական աշխարհում հատկապես դրսևորվում են վերջին տասնամյակներին, երբեմն ընդգրկում են ո՛չ միայն որոշ երկրների էկոնոմիկայի առանձին ճյուղեր, այլ նույնիսկ համաշխարհային կապիտալիստական տնտեսության առանձին բնագավառներ։ Հայտնի են, օրինակ, այնպիսի ձևեր, ինչպիսիք են «ընդհանուր շուկան», նավթ արտահանող երկրների միավորումը, Կարիբյան ծովի ավազանի երկրների տրանսպորտի կառավարումը և այլն։ Սակայն տնտեսության զարգացման տարերային բնույթի և արտադրության միջոցների մասնավոր սեփականությունից բխող անխուսափելի հետևանքով, կապիտալիզմի օրոք պլանային սկզբունքը չի կարող դրվել հասարակական արտադրության զարգացման հիմքում։

Միայն սոցիալիստական հասարակարգի, արտադրության միջոցների հանրային սեփականության պայմաններում է պլանային սիստեմը դառնում տրնտեսական և սոցիալական համամասնական զարգացման հզոր միջոց։ Ընդ որում, հասարակական արտադրության պլանաչափ զարգացումն իրականաց-







վում է ժողովրդատնտեսական միասնական պլանի հիման վրա։ Շեշտելով այդ դրույթը, Վ. Ի. Լենինը մասնավորապես նշել է. «...միայն այն շինարարությունն է արժանի սոցիալիստական կոչվելու, որը կկատարվի խոշոր ընդհանուր պլանի համաձայն, ձգտելով հավասարաչափ օգտագործել էկոնոմիկան և տնտեսական արժեքները» (Երկեր, հ. 28, էջ 27)։

Առաջին կոմպլեքսային համապետական պլանը, որ մշակվեց Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ու անմիջական ղեկավարությամբ, Ռուսաստանի էլեկտրիֆիկացման՝ այն ժամանակի համար վիթխարի պլանն էր՝ ԳՈԷԼՌՈ-ն։ Այդ պլանը խոշոր ջերմային և հիդրոէլեկտրակայանների, ենթակայանների և էլեկտրահաղորդման գծերի շինարարության մեծ ծրագրի հետ միասին նախատեսում էր վառելիքի, էլեկտրաարդյունաբերության, տրանսպորտի և ուրիշ շատ պրոբլեմների լուծումը։ Սովետների VIII համագումարի միաձայն ընդունած ԳՈԷԼՌՈ-ի պլանը Վ. Ի. Լենինն իրավացիորեն անվանեց մեր կուսակցության երկրորդ ծրագիրը։

ՍՍՀՄ-ում ժողովրդական տնտեսության՝ որպես հանրային արտադրության բոլոր ճյուղերը և սոցիալ-կուլտուրական ոլորտը միավորող կոմպլեքսի, զարգացման պլանավորումը ՍՄԿԿ-ի տնտեսական քաղաքականության իրականացման հիմնական մեթոդն է, քաղաքականություն, որն ուղղված է հասարակության արտադրաուժերի համակողմանի վերելքի և ժողովրդի նյութական ու հոգևոր պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարման նպատակին։ Պլանավորման մեթոդոլոգիան հիմնված է ընդլայնված սոցիալիստական վերարտադրության մարքս-լենինյան տեսության վրա։

1929 թվականից սկսած սոցիալ-տնտեսական զարգացման պլանավորման հիմնական ձևն են դարձել հնգամյա պլանները՝ որպես երկարաժամկետ, միջնաժամկետ և տարեկան պլանների համակարգի օրգանական մաս։ Հենց հնգամյա պլաններն են մեր երկրում ընդունված միջնաժամկետ պլանների ձևը, որոնց գլխավոր նպատակն է առաջադրանքների ու միջոցառումների սիստեմի մեջ մարմնավորել տվյալ հնգամյակի համար ՍՄԿԿ-ի առաջադրած սոցիալական և տնտեսական զարգացման խնդիրները։

Յուրաքանչյուր հնգամյակ սոցիալիզմի և կոմունիզմի ուղիով ընթացող երկրի զարգացման մի խոշոր քայլ է և իր հիմքում ունի տվյալ փուլի համար որոշված գլխավոր խնդիրները։

Այսպես, առաջին հնգամյա պլանը մշակվել էր ՀամԿ(բ)Կ XV համագումարի դիրեկտիվների հիման վրա և հաստատվել էր սովետների համամիութենական V համագումարի կողմից՝ 1929 թ.։ Առաջին հնգամյակը ԳՈԷԼՌՈ-ի պլանի և գաղափարների տրամաբանական զարգացումն էր, որի գլխավոր խնդիրն էր սոցիալիստական էկոնոմիկայի հիմքի կառուցումը, քաղաքի ու գյուղի կապիտալիստական տարրերի հետագա դուրս մղումը և երկրի պաշտպանունակության ամրապնդումը։ Ինչպես հայտնի է, առաջին հնգամյա պլանը կատարվեց 4 տարի և 3 ամսում։

Բոլոր հետագա հնգամյա պլաններն ունեցել են որոշակի գլխավոր խնդիրներ, որոնք նպատակամղված են եղել մեր երկրի էկոնոմիկայի հեղափոխական վերափոխման բարձր տեմպերի և նրա հզորության աճի ապահովմանը։

Այդ ամենի շնորհիվ պատմական կարճ ժամկետում՝ հիսուն տարում, երկրի էկոնոմիկան հուժկու զարգացում ստացավ։ 1928 թվականի՝ առաջին հնգամյակի բազային տարվա համեմատությամբ 1978 թվականին հանրային համախառն արդյունքն աճեց 57, երկրի ազգային եկամուտը՝ 68, իսկ հիմնական արտադրաֆոնդերը՝ 34 անգամ։ Եվ դա երկրի պաշտպանունակությունն անընդմեջ ամրապնդելու անհրաժեշտության, Հայրենական մեծ պատերազմում կրած վիթխարի կորուստների պայմաններում։

Ներկայումս Սովետական Միությունն աշխարհում առաջին տեղն է գրավում չուգունի, պողպատի, նավթի, քարածխի և կոքսի, ցեմենտի, տրակտորների (գումարային հզորությամբ), ջերմաքարշերի և էլեկտրաքարշերի, հանքային պարարտանյութերի, բամբակի և շատ այլ արտադրատեսակների արտադրությամբ։ Մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը Ռուսաստանին բաժին էր ընկնում համաշխարհային արդյունաբերական արտադրանքի հազիվ 4 տո-



կոսը։ Այժմ Սովետական Միության բաժինը կազմում է մեկ հինգերորդից ավելին։ 1913 թ. Ռուսաստանի արդյունաբերական արտադրանքը կազմում էր ԱՄՆ-ի նույն արտադրանքի 12,5 տոկոսը, իսկ 1978 թ.՝ ավելի քան 80 տոկոսը։

Երկրի ժողովրդական տնտեսության պլանային սոցիալիստական վարման, տասը հնգամյակների իրականացման շնորհիվ վիթխարի հաջողություններ են ձեռք բերվել հանրային արտադրության բոլոր ճյուղերում. հաջողությամբ լուծվում են վառելիքաէներգետիկ կոմպլեքսի, Արկտիկայի ապատ տարածությունների յուրացման, Արևմտյան և Արևելյան Սիբիրի բնական հարստությունների, խաղաղ նպատակներով ատոմային էներգիայի օգտագործման, տիեզերքի յուրացման՝ մեր երկրի համար կենսականորեն կարևոր պրոբլեմները։

Ժողովրդատնտեսական պրոբլեմների լուծումը պահանջում է գիտական մոտեցում ցուցաբերել պլանավորման հարցերին, հմտորեն զուգակցել ճյուղային և տերիտորիալ սկզբունքները, կենսագործել լենինյան գաղափարները ժողովրդի բարեկեցությունն անշեղորեն բարձրացնելու, երկրի առանձին ռեգիոնների կենսամակարդակը հավասարեցնելու, այն ամենաբարձր մակարդակին հասցնելու անհրաժեշտության մասին։

Այս առումով մեծ հետաքրքրություն է ներկայացնում Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում Հայկական ՍՍՀ-ի զարգացումը սոցիալիստական շինարարության հնգամյակների տարիներին։

Սովետական Հայաստանի օրինակը ամբողջ աշխարհին ակնբախորեն ցույց է տալիս, թե ինչպես ՍՄԿԿ-ի լենինյան իմաստուն ազգային քաղաքականության, էկոնոմիկայի զարգացման պլանավորման՝ սոցիալիստական հասարակությանը հատուկ սկզբունքների իրականացման շնորհիվ Ռուսաստանյան կայսրության նախկին հետամնաց ծայրագավառը դարձավ զարգացած ինդուստրիալ հանրապետություն, որը տնտեսական և սոցիալական բոլոր ցուցանիշներով գտնվում է ժամանակակից բարձր մակարդակի վրա։

Սովետական Հայաստանը բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ մինչև 1928 թվականը ոչ միայն արդեն վերականգնել էր պատերազմի պատճառով քայքայված տնտեսությունը, այլև կարճ ժամանակամիջոցում, ընդամենը 8 տարում, ստեղծել էր արդյունաբերության և գյուղատնտեսության մի շարք նոր ուղղություններ։ Այսպես, Երևանի և Լենինականի ՀէԿ-երը բազա դարձան էներգետիկայի զարգացման համար, Լենինականում ստեղծվեց տեքստիլ, Երևանում՝ մեքենաշինություն, Ալավերդում և Ղափանում՝ գունավոր մետալուրգիայի արդյունաբերություն, սկսվեց ոռոգման սիստեմների շինարարությունը, մասնավորապես, շահագործման հանձնվեց Շիրակի ջրանցքը։

Առաջին հնգամյա պլանը Հայաստանում գիտականորեն խորապես հիմնավորված էր և խնդիր էր դնում զարգացնել հասարակության արտադրաուժերը, օգտագործել եղած բնական ու աշխատանքային ռեսուրսները, ընդլայնել ոռոգելի հողագործությունը և այլն։ Հնգամյա պլանի մշակմանը մասնակից էին դարձվել հանրապետության այնպիսի խոշոր մասնագետ գիտնականներ, ինչպիսիք էին ինժեներ-հիդրոշինարար Հ. Ա. Տեր-Աստվածատրյանը, ճարտարապետ Ա. Ի. Թամանյանը, քիմիկոսներ Ս. Պ. Ղամբարյանը, Լ. Ա. Ռոտինյանը և շատ ուրիշներ։

Այդ տարիներին հանրապետությունում հիմնադրվել և լրիվ կամ մասնակիորեն շահագործման էին հանձնվել Երևանի սինթետիկ կաուչուկի գործարանը, մեքենաշինական և հաստոցաշինական գործարանները, կաշվի արտադրությունը, Արարատի ցեմենտի գործարանը, Լենինականի տեքստիլ կոմբինատը, Կիրովականի քիմիական գործարանը և այլն։ Էներգետիկ բազան ապահովելու համար շահագործման հանձնվեց այն ժամանակի համար բավականին հզոր Ձորագէսը՝ ԳՈԷԼՌՈ-ի պլանով կառուցվող էլեկտրակայաններից մեկը։ Զգալի էին հաջողությունները գյուղատնտեսության բնագավառում, ստեղծվել էին գյուղատնտեսական հումքը վերամշակող մի շարք ձեռնարկություններ։ Այդպիսով, արդեն առաջին հնգամյակում խոշոր առաջընթաց քայլ կատարվեց ինդուստրիալ զարգացման, բարձրարտադրողական հողագործության և անասնապահության ստեղծման, ոռոգելի հողերի ընդլայնման բնագավառներում։

Տնտեսության գիտականորեն հիմնավորված պլանային սոցիալիստական

սիստեմի, երկրի եղբայրական հանրապետությունների անշահախնդիր բարեկամության և փոխօգնության, Միության ժողովրդական տնտեսության կենտրոնացված պլանավորման և կառավարման շնորհիվ, երբ հաշվի են առնվում երկրի բոլոր ռեգիոնների հնարավորությունների առավելագույն օգտագործումն ու դրանց պահանջմունքների բավարարումը, անցած տասը հնգամյակներում անճանաչելիորեն փոխվեց Սովետական Հայաստանի էկոնոմիկան։ Ներկայումս Հայկական ՍՍՀ-ում արդյունաբերության բաժինը հասարակական ամբողջական արդյունքի մեջ կազմում է 67 տոկոս, իսկ գյուղատնտեսության բաժինը՝ մոտ 10 տոկոս։ Ընդ որում, արդյունաբերական արտադրությունը հանրապետությունում, 1928 թվականի համեմատությամբ, աճել է 350 անգամ, իսկ գյուղատնտեսության արտադրանքի ծավալը՝ ավելի քան 5 անգամ։ Այսպիսով, Հայկական ՍՍՀ-ն այժմ ինդուստրիալ հանրապետություն է՝ զարգացած գյուղատնտեսությամբ։

1978 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, հասարակական համախառն արդյունքը հանրապետությունում աճել է 4 անգամ, արտադրված ազգային եկամուտը՝ 4,2 անգամ, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հիմնական արտադրաֆոնդերը մեծացել են 5,1 անգամ։

Մեծ են հաջողությունները հանրապետության արդյունաբերության մեջ։ Ստեղծվել է հզոր էներգետիկ բազա, որը ընդգրկում է մի շարք խոշոր ջերմային և հիդրոէլեկտրակայաններ։ 1977 թվականին գործարկվեց հայկական ատոմային էլեկտրակայանի առաջին բլոկը՝ 415 հազար կվտ հզորությամբ։ Երկրորդ բլոկը նախատեսված է շահագործման հանձնել ընթացիկ տարում։ Այժմ Հայաստանն ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրում, քան ԳՈԷԼՌՈ-ի պլանով նախատեսվում էր ողջ երկրի համար։

Հայաստանի արդյունաբերությունն ունի իր հստակ արտահայտված դիմագիծը, որը ձևավորվել է տեղական պայմանների առանձնահատկություններին համապատասխան։ Դրանք են՝ մեքենաշինական արտադրությունը, ընդ որում, հիմնականում այնպիսի արտադրություններ, ինչպիսիք են՝ ճշգրիտ հաստոցաշինությունը, սարքաշինությունը, ռադիոէլեկտրոնիկան և այլն, հումքի հանքային և ոչ հանքային տեսակների հարուստ պաշարների արդյունահանումն ու վերամշակումը, ինչպիսիք են պղինձը, մոլիբդենը, շինարարական նյութերը և այլն, քիմիական արդյունաբերության մի շարք ուղղություններ, գյուղատնտեսական հումքի վերամշակում, ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող արդյունաբերության ճյուղեր։ Աշխատանքի ընդհանուր միութենական բաժանման մեջ Հայկական ՍՍՀ-ն ունի իր որոշակի դերը. այն թողարկում է մետաղահատ հաստոցների միութենական արտադրության 6,3, էլեկտրաշարժիչների՝ 9,2 տոկոսը և այլն։

Վերջին երկու հնգամյակներում իրականացվում է հանրապետության, ինչպես և ամբողջ երկրի արդյունաբերության կառուցվածքի և կառավարման համակարգի կատարելագործման նոր՝ արտադրական և գիտաարտադրական միավորումների կազմավորման փուլը։ 1978 թվականին Հայաստանի արդյունաբերության մեջ արդեն կային 71 միավորում, որոնք տալիս էին ամբողջ արտադրանքի 48,6 տոկոսը։ Վերջին տարիներին հանրապետության արդյունաբերության զարգացման համար բնորոշ է նաև արդյունաբերական ձեռնարկությունների տեղաբաշխումը զանազան շրջանային կենտրոններում, ավաններում և մեծ գյուղերում՝ միավորումների մեջ մտնող առանձին գործարանների կամ մասնաճյուղերի ձևով. դրա նպատակն է հանրային արտադրության մեջ ներգրավել այդ վայրերում եղած աշխատանքային ռեսուրսների ավելցուկը։

Կոմունիստական կուսակցության ագրարային քաղաքականության շնորհիվ Հայաստանի գյուղատնտեսությունը դարձել է սոցիալիստական էկոնոմիկայի բարձր զարգացած սեկտոր։

Հողային ռեսուրսների սահմանափակության պայմաններում գյուղատնտեսության զարգացումն ընթանում է ոռոգելի հողագործության ընդլայնման ուղիով։ Հնգամյակների տարիներին հանրապետությունում ստեղծվել է ոռոգման համակարգերի լայն ցանց. ոռոգելի հողերի ընդհանուր տարածությունը



1978 թվականին կազմեց 266,4 հազար հեկտար կամ բոլոր հողատարածությունների 20 տոկոսը։ Մեծ նշանակություն տալով Հայաստանում ոռոգելի հողագործության զարգացմանը, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը 1977 թվականին որոշում ընդունեցին, որով նախատեսվում է 1979—1990 թթ. ընթացքում հանրապետությունում կառուցել ևս 16 ջրամբար և լրացուցիչ ոռոգելի դարձնել 80 հազար հեկտար հողատարածություն։

Ներկայումս Հայկական ՍՍՀ-ում աշխատանքներ են կատարվում խոշոր ջերմոցային կոմբինատների նախագծման նպատակով, որը հնարավորություն կընձեռի, օգտագործելով հանրապետության կլիմայական առանձնահատկությունները և եղած էներգետիկ հնարավորությունները, փակ հողում ստեղծելու բանջարեղենի արտադրություն՝ ձմռան ընթացքում երկրի քաղաքներին մատակարարելու համար։

Գյուղատնտեսության զարգացման գործում մեծ նշանակություն ունեցավ ինդուստրիալ հիմունքներով մի շարք կոմպլեքսների ստեղծումը՝ ձու, կաթ և միս արտադրելու համար։

Արտադրության զարգացման, ժողովրդի անհրաժեշտ կենսապայմանների ստեղծման բարձր տեմպերն ու հսկայական մասշտաբները բոլոր հնգամյակների ընթացքում ապահովվում էին շինարարական աշխատանքների լայն թափով։ Կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը 50 տարում հանրապետությունում կազմել է 15,4 մլրդ ռուբլի, ընդ որում, առաջին հնգամյակում այն կազմել է 58 մլն ռուբլի, իսկ տասներորդ հնգամյակում՝ ավելի քան 5 մլրդ ռուբլի։

Հնգամյակների տարիներին հանրապետությունում կառուցվել է ավելի քան 400 արդյունաբերական ձեռնարկություն։ Հիմնական ֆոնդերը գյուղատնտեսության մեջ 1978 թվականին կազմում էին ավելի քան 1,7 մլրդ ռուբլի։

Հայաստանում կառուցվել են ավելի քան 31 մլն քմ ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, 26 հազար մահճակալ ունեցող հիվանդանոցներ, 730 հազար աշակերտական տեղով դպրոցներ, 125 հազար տեղով մանկապարտեզներ, մշակույթի շատ տներ, ակումբներ, թատրոններ, սպորտհամալիրներ, առողջարաններ և այլն։ Փաստորեն ամայի վայրերում կառուցված մեր ժամանակակից քաղաքներն ու ավանները, արդյունաբերական ձեռնարկություններն ու գյուղատնտեսական համալիրները վառ կերպով հաստատում են պլանային սոցիալիստական էկոնոմիկայի կենսական, ստեղծարար բնույթը։

Երկրի տնտեսական և սոցիալական զարգացման բոլոր հնգամյա պլանները, սկսած առաջինից մինչև տասներորդը, իրենց հիմքում ունեցել են գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների օգտագործման և տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների օրգանական միացումը։ Զարգացած սոցիալիզմի հասարակության կառուցման և այն կոմունիստականի վերաճելու ճանապարհին ձեռք բերված վիթխարի նվաճումները հնարավոր դարձան այն մեծ ուշադրության շնորհիվ, որ կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը ցուցաբերում են գիտության զարգացման, ժողովրդական տնտեսության մեջ գիտական հետազոտությունների արդյունքների արմատավորման նկատմամբ։ Գիտատեխնիկական առաջընթացը և դրա վճռական դերը վառ կերպով արտահայտվում են մեր երկրում իրականացվող այնպիսի կոմպլեքսային ծրագրերում, ինչպիսիք են էներգետիկան և էլեկտրիֆիկացումը, քիմիական արդյունաբերությունը և քիմիայի կիրառումը գյուղատնտեսության մեջ, միկրոբիոլոգիական սինթեզը, տիեզերքի յուրացումը և այլն։

Հայաստանում ստեղծվել են մեծ թվով գիտական հաստատություններ, բուհեր, որոնցում աշխատում են մոտ 18 հազար գիտաշխատողներ։ Հանրապետության գիտությունների ակադեմիայի, մի շարք ճյուղային ինստիտուտների ուսումնասիրությունները հիմք հանդիսացան Հայաստանում արդյունաբերության շատ ճյուղերի ստեղծման համար։ Այսպես, մաթեմատիկայի զարգացած դպրոցի առկայությունը, բուհերում համապատասխան մասնագետ կադրերի պատրաստումը հնարավոր դարձրին էլեկտրոնային հաշվիչ մեքենաների մշակման ու արտադրության ճյուղի ստեղծումը։ Այսօր «Նաիրի» և «ЕС» ընտանիք-

ների հաշվիչ մեքենաները, որոնք մշակվել և արտադրվում են Հայաստանում, լայն ճանաչում են գտել։

Նուրբ օրգանական քիմիայի բնագավառում գիտությունների ակադեմիայում կատարվող հետազոտությունների հիման վրա ծավալվեց դեղորայքի, իսկ միկրոբիոլոգիայի ինստիտուտի հետազոտությունների շնորհիվ ամինաթթուների և բակտերիական պրեպարատների միկրոբիոլոգիական արտադրությունը։

Հանրապետության ժողովրդական տնտեսությունը հագեցած է ժամանակակից տեխնիկայով և սարքավորումներով, որի շնորհիվ բարձրացել է աշխատանքի մեքենազինվածության և էներգազինվածության մակարդակը։ Միայն տասներորդ հնգամյակում արդյունաբերության ճյուղերում ներդրվելու են ավելի քան 600 մեքենայացված, հոսքային և ավտոմատ գծեր, կոմպլեքսային մեքենայացված արտադրամասերի ու տեղամասերի թիվը կհասնի մոտ 430-ի։

Զգալիորեն բարձրացել են աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը։ 1979 թվականի սկզբին հանրապետությունում արտադրվող 1.800 անուն արտադրատեսակներ ստացել էին պետական որականիշ, դրանց արտադրության ծավալը կազմում էր որականիշի համար ատեստավորման ենթակա արտադրանքի 13,4 տոկոսը։

Հնգամյա պլանները ծառայում են սոցիալիստական հանրային արտադրության բարձրագույն նպատակին՝ սովետական մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարմանը։ Տարեցտարի աճում է երկրի ազգային եկամուտը, անշեղորեն ավելանում են բնակչության ռեալ եկամուտները, բարելավվում են աշխատանքի, կենցաղի ու հանգստի պայմանները։ Այդ ամենը համոզիչ կերպով ապացուցում է, որ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման ու ծաղկման գլխավոր նախապայմանը եղել և մնում է կառավարման պլանային սիստեմը։

Ինչպես ամբողջ Սովետական Միության, այնպես էլ յուրաքանչյուր միութենական հանրապետության ժողովրդական տնտեսության համար բնորոշ են հնգամյակից հնգամյակ արտադրության քանակական ու որակական անշեղ զարգացման բարձր տեմպերը։ Ընդ որում, երկրի հանրապետությունների մեջ Հայկական ՍՍՀ-ի համար յուրաքանչյուր հնգամյակում նախատեսվում են արդյունաբերական արտադրության աճի առավել բարձր տեմպեր։ Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման բարձր տեմպերի անհրաժեշտությունը թելադրվում է աշխատանքային ռեսուրսների և որակյալ կադրերի առկայությամբ, մի շարք ճյուղերում գիտության զարգացման բարձր մակարդակով, հանքային հումքի պաշարներով, ստեղծված բազմաճյուղ տնտեսությամբ և նրա ինֆրակառուցվածքով։

Երկարաժամկետ հեռանկարի համար հասարակական արդյունքի աճի տեմպերը, որ միջճյուղային դինամիկ հաշվեկշռի մեթոդով ու մի քանի տարբերակներով հաշվարկել է Հայկական ՍՍՀ պետպլանին կից էկոնոմիկայի ու պլանավորման գիտահետազոտական ինստիտուտը, ցույց են տալիս, որ 1981—1990 թվականների, այսինքն՝ տասնմեկերորդ և տասներկուերորդ հնգամյակների տարեկան միջին տեմպերը պետք է առաջվա նման լինեն բարձր, պահպանելով արդյունաբերության ու նրա այնպիսի ճյուղերի աճի առաջանցիկ տեմպը, ինչպիսիք են՝ մեքենաշինությունը, էներգետիկան, շինարարական նյութերի արդյունաբերությունը և այլն։

Հայաստանի արդյունաբերական արտադրության աճի բարձր տեմպերը, ինչպես նաև գյուղատնտեսության, կապիտալ շինարարության ծավալների զգալի աճը, սպասարկման ոլորտի, ժողովրդական տնտեսության ոչ նյութական ճյուղերի զարգացումը հանգեցնում են այն բանին, որ հանրապետությունը տարեցտարի դառնում է ավելի ու ավելի բարդ տերիտորիալ կոմպլեքս՝ արտաքին ու ներքին տնտեսական բազմաթիվ կապերով, որոնց պլանավորումն ու կառավարումը հետզհետե ավելի ու ավելի են բարդանում։

Այդպիսի կոմպլեքսի զարգացման գիտականորեն հիմնավորված պլանավորումն ու կառավարումը պահանջում են տնտեսական գործունեության ավելի ճշգրիտ ու խոր վերլուծություն, վիթխարի քանակությամբ ամենաբազմապիսի ինֆորմացիայի մշակում։



Նկատի ունենալով ժողովրդական տնտեսության պլանավորման ու կառավարման պրոցեսների իրականացման աճող բարդությունը, ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց՝ կատարելագործել կառավարման համակարգերը, այդ նպատակի համար լայնորեն կիրառել ավտոմատիկան և էլեկտրոնային հաշվիչ տեխնիկան։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, մեծ նշանակություն տալով ժողովրդական տնտեսության պլանավորման և կառավարման հետագա կատարելագործմանը, վերջերս որոշում ընդունեցին «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին»։

Հիշյալ որոշմամբ նախատեսվում է համապատասխան միջոցառումների սիստեմի իրականացում՝ տնտեսության պլանային ղեկավարման բարելավման, արտադրության կառավարման դեմոկրատական սկզբունքների և աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնության հետագա զարգացման ոլորտում։

Խնդիր է դրված հասարակական արտադրության արդյունավետության զգալի բարձրացմամբ ապահովել ժողովրդի բարեկեցության հետագա բարելավումը։

Որոշմամբ միջոցառումներ են նախատեսվում ժողովրդական տնտեսության մեջ պլանային աշխատանքի մակարդակի բարձրացման, արտադրական կարողությունների և օբյեկտների գործարկման արագացման, կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման, ինչպես նաև տնտեսական հաշվարկի հետագա զարգացման ու տնտեսական լծակների և խթանների դերի ուժեղացման նպատակով։

Առաջադրված խնդիրների լուծման, արտադրության վերջնական արդյունքների ձեռքբերման առավել արդյունավետ ուղիների ընտրության հիմքը տնտեսական և սոցիալական պրոբլեմների նկատմամբ գիտականորեն հիմնավորված կոմպլեքսային մոտեցումն է՝ գիտատեխնիկական մշակումների իրացումն արագացնելու, պլանավորման ճյուղային և տերիտորիալ սկզբունքները ռացիոնալ զուգակցելու, միջճյուղային և ներճյուղային համամասնությունները կատարելագործելու միջոցով։

Որոշման մեջ կարևորվում են տարեկան, հնգամյա և հեռանկարային պլանների բալանսավորվածությունը, նրանց կայունությունը պլանի ամբողջ ժամանակընթացքում։

Պլանային մարմինների առջև խնդիր է դրվում՝ լայնորեն օգտագործել նյութական, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսների բալանսները, ինչպես նաև տնտեսամաթեմատիկական տարբեր մոդելները։

Տասներորդ հնգամյակի պլանները մշակելու ժամանակ հանրապետության պետպլանը, նրա գիտական ստորաբաժանումները ԷՀՄ-ների օգնությամբ լայնորեն կիրառում էին տնտեսական-մաթեմատիկական մեթոդները՝ պլանային հաշվարկների ավտոմատացված համակարգի առաջին հերթի շրջանակներում։

Սակայն պլանավորման խնդիրների վերը նշված բարդացումը պահանջում է ավելի լայնորեն օգտագործել հաշվեկշիռների տարբերակային հաշվարկները, տնտեսական-մաթեմատիկական մոդելների համակարգերը, գիտատեխնիկական առաջընթացի կանխատեսումները, ծրագրային-նպատակային մեթոդներն ու սիստեմային վերլուծությունը՝ հատկապես հեռանկարային պլաններ մշակելիս։

Միայն սոցիալիստական շինարարության կուտակած փորձի օգտագործմամբ գիտականորեն հիմնավորված պլանավորումն է հնարավորություն ընձեռում՝ արդեն պլանի մշակման փուլում դնելու հաջորդ հնգամյա պլանների հաջող կատարման հիմքերը, ապահովելու հետագա առաջընթացը կոմունիստական հասարակարգի կառուցման ասպարեզում։

---

# ԸՆԴԼԱՅՆՎՈՒՄ Է ՀԱԿԱՄՈՆՈՊՈԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԲԱԶԱՆ

**ԻՆՆԱ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՊՐՈՑԵՍԻ հզոր հոսանքներից մեկն է զարգացած կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի պայքարն ընդդեմ մոնոպոլիաների ճնշման, հանուն խաղաղության և սոցիալական պրոգրեսի։*

*Բանվորական շարժման ժամանակակից փուլի բնորոշ առանձնահատկությունն է դրա սոցիալական բազայի ընդլայնումը, հասարակական ու քաղաքական ուժերի վերախմբավորումը հօգուտ բանվոր դասակարգի։ Այդ է վկայում գործադուլային շարժման այսօրվա թափը, որին մասնակցում են կապիտալիստական երկրների ազգաբնակչության ամենատարբեր խավերը՝ բանվոր դասակարգի ղեկավարությամբ։ Այդ տենդենցն արտահայտվում է թե՛ արդյունաբերական բանվորների գործադուլային շարժմանը ինժեներատեխնիկական աշխատողների, ծառայողների, ոչ արդյունաբերական ոլորտի այլ կատեգորիայի վարձու աշխատողների, ինչպես նաև գյուղացիների ակտիվ մասնակցությամբ, և թե աշխատավորների այդ ջոկատների ինքնուրույն ելույթների թվական աճով։ Ընդհանուր առմամբ գործադուլավորների տեսակարար կշիռն իրենց կենսական շահերի պաշտպանությամբ հանդես եկող աշխատավոր մարդկանց թվում կազմում է շուրջ 40 տոկոս, իսկ գործադուլներին մասնակցողների թիվը կապիտալի երկրներում միայն երկու տասնամյակի ընթացքում աճել է ավելի քան 6 անգամ ու հասել 50 միլիոն մարդու։ Ներկա շրջանում դասակարգային պայքարի ու նրա սոցիալական բազայի ընդարձակվելը բացատրվում է այդ երկրների աշխատավորների վիթխարի զանգվածների կազմակերպվածության և դասակարգային գիտակցականության անշեղ ու մշտական աճով։*

*Այսօր բուրժուազիայի քաղաքական լիդերները և գաղափարախոսները, ուշի-ուշով հետևելով հասարակական զարգացման նոր երևույթներին, ջանում են ամեն կերպ աղավաղել ու կեղծել դրանց էությունը։ Ամենից առաջ համառորեն ժխտվում է աշխատավորների զանգվածային հակամոնոպոլիստական պայքարի զարգացման օբյեկտիվ հիմքի առկայությունը։ Ժամանակակից բուրժուական հասարակությունը բնութագրվում է որպես «երրորդ դասի» հասարակություն, որում ամբողջ ազգաբնակչությունը ինտեգրացվել է այդ նոր՝ «երրորդ դասի» մեջ, իսկ պրոլետարիատ հասկացությունը, ինչպես այն ըմբռնում էին ժամանակին Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը, Վ. Ի. Լենինը, այժմ, իբր, գոյություն չունի։ Դասակարգերի և դասակարգային պայքարի մարքս-լենինյան տեսությանը հակադրվում է ժամանակակից կապիտալիզմի՝ խաղաղ ճանապարհով սոցիալիզմի փոխակերպվելու կեղծ տեսությունը։*

*Իրականում պետական-մոնոպոլիստական կապիտալի զարգացումը և գիտատեխնիկական հեղափոխությունը խիստ բարդացրել են ժամանակակից բուրժուական հասարակության դասակարգային հարաբերությունները, պատճառ դարձել սոցիալ-դասակարգային բնույթի այն տեղաշարժերի, որոնք օբյեկտիվորեն հանգեցնում են աշխատավորների հակամոնոպոլիստական պայքարի սոցիալական բազայի ընդլայնմանը։ Կապիտալիզմի արդի փուլը ամենայն ակներևությամբ հաստատում է, որ կապիտալի և վարձու աշխատանքի, բուրժուազիայի և պրոլետարիատի միջև հարաբերությունները այդ հասարակության արմատական դասակարգային հարաբերություններն են՝ դրա զարգացման բոլոր փուլերում։ Էնգելսը ժամանակին նշել է, թե հարաբերությունը կապիտալի և աշխատանքի միջև այն առանցքն է, որի շուրջը պտտվում է մեր ամբողջ ժամանակակից հասարակական սիստեմը (տե՛ս Կ Մարքս և Ֆ. Էնգելս,* Ընտիր երկեր, *հ. 2, էջ 192)։ Այսօր այն դրսևորվում է վարձու աշխատանքի ոլորտն ընդլայնելու, նրա սիստեմում գործունեության նոր տեսակներ ներմուծելու, բանվորին ավելի ու ավելի կապիտալին ենթարկելու, վարձու աշխատանքի շահագործումն ուժեղացնելու մեջ։ Այդ մասին է վկայում ինդուստրիալ զարգացած երկրներում վարձու աշխատանքի մարդկանց թվական աճը, որը 1950 թ. 158 միլիոնի փոխարեն 1977 թ. կազմում էր 250 միլիոն։ Ինքնագործ բնակչության մեջ վարձու աշխատանքի բաժինը համապատասխանաբար 68-ից հասել է 83 տոկոսի, իսկ առանձին երկրներում այդ բաժինն ավելի մեծ է. ԱՄՆ-ում՝ 91, ԳՖՀ-ում՝ 82, Անգլիայում՝ 93 տոկոս (տե՛ս* «Рабочий класс и современный мир» *հանդես,* 1977, № 6, стр. 81*)։*

*Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացումը և գիտատեխնիկական հեղափոխությունը կապիտալիստական երկրներում չէին կարող չանդրադառնալ սոցիալական ուժերի տեղաբաշխման, դրանց տեսակարար կշռի ու կառուցվածքի վրա։ Դրանից լուրջ փոփոխություններ են կրում բանվոր դասակարգի կառուցվածքն ու վիճակը։ Տեղի է ունենում արդյունաբերության մեջ ոչ ֆիզիկական բնույթի տարբեր աշխատանքներով զբաղվածների, ինչպես նաև ոչ արտադրական ոլորտի զանազան գործերով զբաղված վարձու աշխատողների աննախընթաց աճ։ Արագ տեմպերով ավելանում է մասնագետների թիվը, ընդ որում, այդ պրոցեսը բնորոշ է վարձու աշխատանքի տվյալ կատեգորիայի բոլոր մասնագիտությունների մարդկանց համար։ Գյուղում կապիտալիստական հարաբերությունների սրընթաց զարգացումը հանգեցնում է ինքնագործ բնակչության մեջ գյուղացիության թվի կտրուկ նվազեցմանը։*

*Այդ երկրներում կատարվող սոցիալ-դասակարգային տեղաշարժերում սկզբունքային է բանվոր դասակարգի զարգացածության աստիճանի, նրա որակական կազմի, ինչպես և հավաքական հասունության և ողջ հասարակության ներկայացուցչի դերը կատարելու կարողության հարցը, քանի որ, ինչպես գրել է Ֆ. Էնգելսը, «Բանվոր դասակարգի դրությունը հանդիսանում է արդիականության հասարակական բոլոր շարժումների իրական հիմքն ու ելակետը և այն մեր ժամանակակից հասարակական աղետների սուր և մերկացած արտահայտությունն է» (*К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 2, стр. 238*)։*

*Կապիտալի երկրներում ռեալ պրոցեսների վերլուծությունը ցույց է տալիս, որ բնակչության պրոլետարացմամբ ուղեկցվող վարձու աշխատանքի ոլորտի ընդարձակման արդյունքը աշխատանքով զբաղված բնակչության մեջ բանվոր դասակարգի թվական և տեսակարար կշռի աճն է, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում նրա դերի բարձրացումը։ Պրոլետարիատի ընդհանուր թիվը կապիտալի երկրներում 1976—1977 թթ. կազմել է 209 միլիոն մարդ՝ 1960 թ. 132 միլիոնի դիմաց, իսկ նրա բաժինը իր սեփական աշխատանքն ունեցող բնակչության մեջ այդ ժամանակաշրջանում աճեց 56,9-ից մինչև 69 տոկոսի (տե՛ս* «Рабочий класс и современный мир», 1977, № 6, стр. 80*)։ ԱՄՆ-ում, ԳՖՀ-ում և Անգլիայում դա կազմում է աշխատանքով զբաղված բնակչության ճնշող մեծամասնությունը։*

*Բանվոր դասակարգի մարտական ջոկատը եղել և մնում է արդյունաբերական պրոլետարիատը, որի տեսակարար կշիռը շեշտակի աճում է շնորհիվ կապիտալիստական երկրների տնտեսության մեջ այնպիսի արդիական ճյուղերի զարգացման, ինչպիսիք են քիմիականը, մեքենաշինականը, էներգետիկականը և այլն։ Այսօր արդյունաբերական պրոլետարիատի թիվը 100 միլիոնից ավելի է։ Այդ տենդենցն առավել հստակ է երևում երեք երկրների՝ ԱՄՆ-ի, ԳՖՀ-ի և Անգլիայի օրինակով։ Ներկայիս պրոլետարիատի կազմն ու սահմանները չեն սահմանափակվում արդյունաբերական-գործարանային բանվորներով։ Գիտա-*

կան կոմունիզմի հիմնադիրների երկերում կոնկրետ բնորոշումներ կան XIX դարի վերջի և XX դարի սկզբի պրոլետարիատի կազմի վերաբերյալ։ Նրանք այն ժամանակվա պրոլետարիատի շարքն էին դասում նաև առևտրի մեջ վարձու ծառայողներին, նրանց բնորոշելով որպես «առևտրական բանվորների» (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 25, ч. I, стр. 330—331)։ Հարկ է այս առիթով հիշել Վ. Ի. Լենինի այն միտքը, թե կապիտալիզմի «միսիան» իրականացվում է կապիտալիզմի ու առհասարակ աշխատանքի հանրայնացման զարգացմամբ, պրոլետարիատի ստեղծմամբ, որի հանդեպ ֆաբրիկա-գործարանային բանվորները միայն առաջավոր շարքերի, ավանգարդի դեր են խաղում։ Անվիճելի է, իհարկե, որ պրոլետարիատի հեղափոխական շարժումը պայմանավորված է թե՛ այդ բանվորների թվով, թե՛ նրանց համակենտրոնացումով, թե՛ նրանց զարգացման աստիճանով և այլն, բայց այս բոլորը ամենաչնչին իրավունք անգամ չի տալիս կապիտալիզմի «միավորող» նշանակությունը հանգեցնելու ֆաբրիկա-գործարանային բանվորների թվին։ Դա նշանակում է անկարելիության աստիճանի նեղացնել Մարքսի գաղափարը (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 1, էջ 397—398)։

Բանվոր դասակարգի սահմաններն ու կազմը վերջին տասնամյակներում ընդարձակվել են նախ, Լենինի արտահայտությամբ, «մտավոր աշխատանքի պրոլետարների», այսինքն՝ աշխատողների այն նշանակալից զանգվածների հաշվին, որոնք զբաղված են պարզ տեխնիզացված և սոսկ կատարողական (այլ ոչ ստեղծագործական) մտավոր աշխատանքով։ Բանվոր դասակարգի շարքերի համալրումը տեղի է ունենում շնորհիվ արտադրության ոլորտում տեխնիկական ծառայողների արագ տեմպերով աճի։ Այդ տենդենցը նշել է դեռևս Լենինը, ցույց տալով ծառայողների թվական աճի կապը կապիտալիստական խոշոր արտադրության աճի հետ, որը կարիք ունի ծառայողների և, ընդ որում, այնքան ավելի, որքան ավելի են կիրառվում մեքենաները և զարգանում տեխնիկան (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 5, էջ 277)։

Բանվոր դասակարգի կազմը համալրվում է ոչ արտադրական ոլորտում զբաղված աշխատողների ջոկատով։ Աճում է գյուղատնտեսական պրոլետարիատը, ուժեղանում է նրա համակենտրոնացումը խոշոր գյուղատնտեսական ֆերմաներում։ Վարձու աշխատանքի այդ մարդկանց ճնշող մեծամասնության սոցիալ-տնտեսական վիճակի, նրանց աշխատանքի բնույթի և բովանդակության մեջ հայտնվում են այնպիսի գծեր ու առանձնահատկություններ, որոնցով բնորոշվում է բանվոր դասակարգի սոցիալ-տնտեսական վիճակը՝ անկախ արտադրաուժերի զարգացման մակարդակից և ԳՏՀ նվաճումների ներդրման աստիճանից։ Այսպիսով, «Հակառակ հակամարքսիստական այն մոդայիկ տեսությունների, թե, իբր, գիտատեխնիկական հեղափոխությունը տանում է դեպի բանվոր դասակարգի սահմանների նեղացում և նույնիսկ նրա վերացում, իրական փաստերը վկայում են ուղիղ հակառակը՝ գիտատեխնիկական առաջընթացն ամենուրեք տանում է դեպի բանվոր դասակարգի աճ, այդ թվում՝ ի հաշիվ ժամանակակից արտադրության ծնունդ հանդիսացող նոր պրոֆեսիաների» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 3, էջ 656—657)։

Բանվոր դասակարգի սոցիալական զարգացման արդի փուլը հաստատում է գիտական կոմունիզմի հիմնադիրների եզրակացությունների ճշմարտացիությունը նրա ո՛չ միայն քանակական, այլև որակական աճի օրինաչափության մասին։ Այսօր արտադրության մեջ առանձին գիտատեխնիկական նվաճումների ներդրումից բուն գիտության ներդրմանն անցնելն արդեն բանվոր դասակարգի հիմնական մասի կուլտուրայի և գիտելիքների զարգացման նոր աստիճանի դրսևորումն է։ Գիտելիքների այդ նոր մակարդակը և ընդհանուր կուլտուրական մինիմումն անհրաժեշտ են նրանցից յուրաքանչյուրին՝ որպես ժամանակակից արտադրության աշխատողի։ Սակայն բանվոր դասակարգը հնարավորություն չունի բավարարելու արտադրաուժերի ժամանակակից մակարդակին համապատասխան աճած իր նյութական և հատկապես հոգևոր պահանջմունքները։ Այդ պատճառով էլ բանվոր դասակարգի՝ որպես գլխավոր արտադրաուժի և ԳՏՀ առաջատարի, անշեղորեն աճող դերն ավելի ու ավելի հակասության մեջ է մտ-



նում բուրժուական հասարակությունում նրա շահագործվող, ենթակա վիճակի հետ։

Ժամանակակից բանվոր դասակարգի սոցիալ-տնտեսական վիճակն անհերքելիորեն վկայում է երկու հակամարտ դասակարգերի հակասությունների անհաշտելիության և իր կենսապայմանները բարելավելու համար բանվոր դասակարգի վճռական պայքար մղելու օբյեկտիվ պահանջմունքների մասին, քանի որ «Բանվորներին հարկավոր է,— ինչպես նշել է Վ. Ի. Լենինը,— բացահայտ պայքար կապիտալիստների դասակարգի դեմ...» (ԵԼԺ, հ. 2, էջ 134)։ Այդ բանը որոշակիորեն դրսևորվում է բանվոր դասակարգի կազմակերպվածության աճում։ Ներկայումս արհեստակցական միությունների, կոմունիստական, սոցիալիստական և սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների անդամ շուրջ 90 միլիոն բանվորներ այնպիսի հարաճուն ու հիմնավոր պահանջներ են առաջադրում, որոնք շատ ավելի հեռու են կոնկրետ նյութական կարիքների շրջանակներից և արտահայտում են ազգի մեծամասնության շահերը։ Վերջապես, ինչպես վերը նշվեց, դա որոշակիորեն երևում է ծավալվող գործադուլային շարժման նպատակների ու թափի մեջ։ Նորը բանվոր դասակարգի գործադուլային շարժման մեջ համաճյուղային և արհմիութենական գործադուլների տեսակարար կշռի աճն է, նրանց տևականությունը և պրոլետարական համերաշխությունը։ Հենց այդ առանձնահատկություններն ունեն ԱՄՆ-ի, Ֆրանսիայի, Իտալիայի, Կանադայի և այլ երկրների բանվոր դասակարգի խոշոր ելույթները։

Ինչ ասպարեզում էլ այսօր ծավալվի բանվոր դասակարգի պայքարը կապիտալի երկրներում, նրան դիմակայում է միևնույն թշնամին՝ մոնոպոլիստական բուրժուազիան։ Ուստի բանվոր դասակարգի ամենօրյա պայքարը, անխզելիորեն կապված ստրատեգիական խնդիրների հետ, կրում է հակամոնոպոլիստական բնույթ։ Բանվոր դասակարգի հեղափոխական շարժման թափը, խորությունն ու հաջողությունը մեծապես պայմանավորված են աշխատավորների լայն, ոչ պրոլետարական մասսաների՝ գրասենյակային ծառայողների, ինժեներների, տեխնիկների, գյուղացիների, ֆերմերների, մանր առևտրականների ու մանր ձեռնարկատերերի մասնակցության աստիճանով։ Բանվոր դասակարգի պես ենթարկվելով մոնոպոլիստական ճնշմանը, ազգաբնակչության այդ շերտերը խոշոր կապիտալի դեմ մղվող պայքարում պոտենցիալ կերպով դառնում են բանվոր դասակարգի դաշնակիցները։ Ուստի և բանվոր դասակարգի կարևորագույն խնդիրն է ազգաբնակչության բոլոր շերտերին իր կողմը գրավելը և նրանց դաշինքը գլխավորելը։ Այդ հակամոնոպոլիստական դաշինքի օբյեկտիվ հիմքերը գտնվում են վարձու աշխատանքի հիշյալ կատեգորիաների ճնշող մեծամասնության սոցիալ-տնտեսական վիճակի խոր փոփոխությունների մեջ։

ԳՏՀ-ն, կյանքի կոչելով կառավարչական ու գրասենյակային աշխատանքի «ինդուստրացումը», այդ աշխատանքը մոտեցրեց բանվորական աշխատանքի բնույթին։ Ծառայողների աշխատանքը հետզհետե ավելի ու ավելի է հանգեցվում մեքենայական տեխնիկայի, ինֆորմացիայի հավաքման ու հաղորդման մեքենայացված ու ավտոմատացված սիստեմի, կառավարման ավտոմատ համակարգերի սպասարկման զանազան ձևերին և մեքենայական մշակման համար նյութերի նախապատրաստման։ Դրա հետևանքով ծառայողների հիմնական մասը կորցնում է կառավարչական լուծումների նկատմամբ նախկինում իր ունեցած հարաբերությունները։ Այն դառնում է գրասենյակային ծառայողների արտոնյալ վերնախավի գործը։ Իսկ ծառայողների մեծամասնության աշխատանքը հասարակական ֆունկցիաների և այդպիսիք կառավարչականի ու կատարողականի բաժանելու տեսակետից սկսեց առավելապես կրել կատարողական բնույթ։ Ավելին, ծառայողների թվի աճը, նրանց համակենտրոնացումը, աշխատանքի պայմաններն ու բնույթը սրեցին զբաղվածության պրոբլեմը, ծնեցին գործազրկություն։

Այսպիսով, ծառայողների թվական աճը, նրանց նշանակալից մասսայի սոցիալական շերտավորումը և պրոլետարականացումը նախ ապահովում են բանվոր դասակարգի կազմի համալրումը։ Ծառայողների այդ մասը ո՛չ միայն զրկված է արտադրության միջոցների նկատմամբ սեփականությունից, այլև իր աշխատուժի վերարտադրման ու գործադրման պայմաններով, ինչպես նաև

ստացվող վարձատրության չափով ընկնում է այն նույն վիճակը, ինչ և արդյունաբերական բանվորը։ Պրոլետարականացող ծառայողների մյուս մասից էլ կազմավորվում են միջին քաղաքային խավերը, որոնք հանդիսանում են բանվոր դասակարգի պոտենցիալ դաշնակիցները։

Համանման պրոցեսներ են կատարվում նաև մտավորականության հետ։ ԳՏՀ-ն որակյալ մասնագետների բարձր պահանջարկ առաջ բերեց կապիտալիստական տնտեսության բոլոր ճյուղերում, քանի որ ժամանակակից պայմաններում արտադրության արդյունավետությունը գլխավորապես պայմանավորված է թե՛ աշխատանքի միջոցների, և թե բանվորական ուժի անընդհատ կատարելագործման հնարավորությամբ։ Պաշտոնական վիճակագրության տվյալներով 1980 թ. մասնագետների թիվը ԱՄՆ-ում կհասնի 15 միլիոնի՝ 1970 թ. 7,7 միլիոնի դիմաց։ Չնայած ԳՖՀ-ում 1961—1970 թթ. զբաղվածության ընդհանուր մակարդակը նվազել է, ինժեներատեխնիկական և գիտական աշխատողների թիվն ավելացել է 42,4 տոկոսով։

Մտավորականության թվական աճը ուղեկցվում է նրա ներքին դասակարգային շերտավորմամբ, որը, ի դեպ, երևում է նրա բոլոր պրոֆեսիոնալ խմբերում։ Մտավորականության մի մասը իր փաստացի գործունեության բնույթով հարում է տիրապետող դասակարգին և համալրում նրա շարքերը, իսկ նրա նշանակալից զանգվածը ենթարկված է պրոլետարականացման պրոցեսին։ Այդ պրոցեսը դրսևորվում է ոչ այնքան մտավորականության կյանքի նյութական վիճակի վատթարացմամբ, որքան նրա ներկայացուցիչների մեծամասնության սոցիալական վիճակի, աշխատանքային հարաբերությունների բնույթի փոփոխումով։ Աշխատանքի հասարակական կազմակերպման գործում իր ունեցած առանձնահատուկ ֆունկցիաների բերումով մտավորականությունը, ի տարբերություն բանվորության, օգտվում է իր ավելի բարձր կրթությունից ու մասնագիտական պատրաստականությունից և դրանով իսկ՝ իր աշխատուժի վերականգնման ավելի բարձր արժողությունից։

Գիտատեխնիկական հեղափոխության ազդեցության հետևանքով մտավորականության հիմնական զանգվածը հետզհետե ավելի քիչ է առնչվում մարդկանց կառավարման ֆունկցիայի իրականացման հետ, որը կապիտալիզմի օրոք ծառայում է իբրև շահագործման ու կապիտալի տիրապետման միջոց։ Նրանց աշխատանքը մեծ մասամբ կապված է մեքենաների ու մեխանիզմների կառավարման, այդպիսիք ստեղծելու, հսկելու և գործող վիճակում պահպանելու տարբեր փուլերի հետ։ Այսպիսով, մտավորականության նշանակալից մասը փաստորեն հեռացվում է կառավարչական գործից, այդ թվում նաև կառավարչական գործունեության որևէ կողմին վերաբերող որոշումներ ընդունելուն մասնակցելուց։

ԳՏՀ-ն, կյանքի կոչելով մտավոր աշխատանքի մարդկանց շեշտակի աճ, առաջ բերեց նաև որակապես մի նոր երևույթ՝ գործազրկություն առավել որակյալ մասնագետների շրջանում, որն ընդունեց ո՛չ միայն մասսայական, այլև խրոնիկական բնույթ, դարձավ օրինաչափ երևույթ զարգացած կապիտալի բոլոր երկրների համար։

Մտավորականության ու ծառայողների հիմնական մասի հասարակական վիճակի օբյեկտիվ փոփոխությունները չէին կարող իրենց ազդեցությունը չգործել վերջիններիս մասսայական գիտակցության, հոգեբանության ու քաղաքական դիրքորոշման վրա։ Դրա արդյունքը երևում է վարձու աշխատանքի այդ կատեգորիայի մարդկանց հասարակական ակտիվության աճի, արմատական փոփոխություններ կատարելու նրանց բուռն ձգտման մեջ։ Սակայն այդ պրոցեսը միանշանակ ու պարզունակ չպետք է հասկանալ, այն բարդ է ու հակասական։ Նրանց ներկայացուցիչներից շատերի մասսայական գիտակցության մեջ դեռ կենդանի են հետադիմական պատկերացումները, որոնք աշխատավորների շրջանում բուրժուական գաղափարախոսության արտահայտություն են։ Այդ պատճառով մտավորականության և ծառայողների զանազան շերտերի սոցիալական հոգեբանությունը և քաղաքական դիրքորոշումը բնութագրող չափանիշը, ինչպես նշել է Լենինը, հանդիսանում է «...պայքարի մեջ փաստական մասնակցության աստիճանը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 9, էջ 228)։



Այժմ դեմոկրատական պայքարում ընդգրկվում ու ակտիվ մասնակցություն են հանդես բերում ինժեներներ, տեխնիկներ, պետական ծառայողներ, գիտահետազոտական կենտրոնների գիտաշխատողներ և մտավորականության ու ծառայողների այլ ներկայացուցիչներ, որոնք դիմում են բանվոր դասակարգի պայքարի ձևերին ու մեթոդներին՝ գործադուլներին, համերաշխության ցույցերին, բողոքներին։ Ընդլայնվում է մտավորականության և ծառայողների մասնակցությունը բանվոր դասակարգի արհեստակցական ու քաղաքական կազմակերպություններին, նրանց մոտ նկատվում է պրոֆեսիոնալ կազմակերպվածության աճ։

Այսպիսով, գիտատեխնիկական հեղափոխությանը զուգընթաց մտավորականության ու ծառայողների սոցիալ-տնտեսական պայմանների, հոգեբանության և քաղաքական դիրքորոշման մեջ խոր ու բազմազան փոփոխությունները հանգեցնում են ֆիզիկական, տեխնիկական և մտավոր աշխատողների իսկական դաշինքի համար իրական հիմքերի անշեղ ընդլայնմանը։

Զարգացած կապիտալիստական երկրներում ԳՏՀ-ն էապես փոխեց գյուղացիական մասսաների սոցիալ-տնտեսական վիճակը, պայմանավորեց նրա խոր շերտավորումը։ Գյուղատնտեսական արտադրության ոլորտում մոնոպոլիստական կապիտալի ներդրումը հանգեցրեց մանր և միջակ գյուղացիական տնտեսությունների սնանկացմանն ու վերացմանը և խոշոր հողատիրությունների ամրապնդմանը։ Դրա հետևանքով այդ երկրներում խիստ նվազեց գյուղատնտեսական բնակչությունը։ ԱՄՆ-ում և Անգլիայում 70-ական թվականների սկզբին գյուղատնտեսության մեջ զբաղված էր ինքնագործ բնակչության՝ համապատասխանաբար 5 և մոտ 3 տոկոսը։ Ֆրանսիայում այն 1954 թ. 27 տոկոսից նվազեց և 70-ական թվականներին հասավ 13-ի, իսկ 1980 թ. կիջնի 8 տոկոսի։

Ընդհանուր առմամբ զարգացած կապիտալիստական երկրներում ագրարային բնակչությունը 1980 թվականին 1960 թ. 25 տոկոսի դիմաց կկրճատվի մինչև 16 տոկոսի, իսկ ընդհանուր շուկայի երկրներում այն 1970 թվականի 10 միլիոնի դիմաց կկազմի 5 միլիոն։ Զարգացած կապիտալի երկրներում գյուղատնտեսության ոլորտում գերազանցապես զբաղված են վարձու աշխատողներ և կիսապրոլետարացած գյուղացիներ, որոնք խիստ կախման մեջ են բանկերից, մեքենաներ ու պարարտանյութեր մատակարարող կոնցեռններից, ինչպես նաև գյուղատնտեսական մթերքների մեծաքանակ գնորդներից։ Ըստ էության, աշխատավոր գյուղացիությունը, ձևականորեն մնալով սեփականատեր, փաստորեն վերածվում է վարձու բանվորի, մոնոպոլիստի կամքը կատարողի։ Հաստատվում է Կ. Մարքսի եզրակացությունն այն մասին, որ «գյուղացուն պրոլետարից տարբերում է արդեն ոչ թե նրա իրական շահը, այլ նրան մոլորության մեջ գցող նախապաշարմունքը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 17, стр. 557)։

Գյուղատնտեսության մեջ մոնոպոլիաների իշխանության ամրապնդմանը համեմատ աճում է նաև անտագոնիզմը դրանց և աշխատավոր գյուղացիության միջև։ Գյուղացիությունն ակտիվորեն ներգրավվում է մոնոպոլիստական բուրժուազիայի դեմ պայքարի մեջ։ Այդ պայքարը հետզհետե մասսայական է դառնում և իր բովանդակությամբ ուղղված է ընդդեմ խոշոր կապիտալի ու բուրժուական պետության պրոմոնոպոլիստական ագրարային քաղաքականության։ Աշխատավոր գյուղացիությունը, իրեն հատուկ տատանողականությամբ հանդերձ, աստիճանաբար հանգում է բանվոր դասակարգի պայքարի նպատակների ու խնդիրների հետ իր կենսական շահերի արմատական ընդհանրության գիտակցմանը։ Այդ ամենը, ինչպես օբյեկտիվորեն, այնպես էլ սուբյեկտիվորեն, հիմք է ծառայում բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության գործողությունների միասնության, մոնոպոլիաների իշխանության դեմ նրանց դաշինքի ամրապնդման համար։

Գիտատեխնիկական հեղափոխությունը պետական մոնոպոլիստական կապիտալի պայմաններում էապես ազդում է մանր և նույնիսկ միջակ քաղաքային բուրժուազիայի դրության վրա։ Քաղաքային մանր բուրժուազիայի լայն շերտերի մասսայական սնանկացումը և սոցիալ-տնտեսական վիճակի վատթա-

րացումը լուրջ ազդեցություն են գործում նրանց սոցիալական հոգեբանության և քաղաքական դիրքորոշման վրա։ Ու թեև այդ ազդեցությունն արտացոլվում է ոչ անմիջականորեն, այնուամենայնիվ, աշխատավոր մանր բուրժուազիայի բողոքն ընդդեմ խոշոր մոնոպոլիստական կապիտալի աստիճանաբար աճում է։ Մանր բուրժուազիան որոշակիորեն շահագրգռված է ժամանակակից հասարակության դեմոկրատական վերակառուցումով, դրա համար էլ բանվոր դասակարգի և մանր բուրժուազիայի միջև շատ հարցերում երևան է գալիս շահերի զուգադիպություն, որը օբյեկտիվորեն նրանց միջև դաշինքի հնարավորություն է ստեղծում։ Հետևաբար, հասարակության դեմոկրատական վերափոխման համար պայքարում մանր բուրժուազիան օբյեկտիվորեն կարող է լինել բանվոր դասակարգի դաշնակիցը։ Իսկ եթե հաշվի առնենք, որ սնանկացող սեփականատերերից սոսկ քչերին է հաջողվում ձեռնարկել ինքնուրույն գործ, ապա ուրեմն, ըստ էության, նրանք պրոլետարիատի թաքնված ռեզերվն են։

Այսպիսով, կապիտալի երկրների զբաղված բնակչության կառուցվածքում նորագույն տենդենցների վերլուծությունը ցույց է տալիս, որ մոնոպոլիստական կապիտալը, ուժեղացնելով ճնշումը ո՛չ միայն բանվոր դասակարգի, այլև հասարակության մյուս խավերի վրա, հետզհետե ավելի է մեկուսանում նրանցից։ Այդ ճանապարհին բանվոր դասակարգը հանդես է գալիս որպես բոլոր հակամոնոպոլիստական ուժերի գլխավոր ձգողական կենտրոն, քանի որ պրոլետարիատի շահերը մոնոպոլիստական կապիտալի դեմ պայքարի շատ արմատական խնդիրներում համընկնում են աշխատավորների պրոլետարականացող զանգվածների շահերի հետ։ Նրա իսկ բարձրագույն խնդիրը՝ գլխավորել պայքարի այդ հակամոնոպոլիստական ճակատը, կանխորոշվում է խոշոր արդյունաբերության մեջ իր դերով, որի շնորհիվ, ինչպես նշել է Լենինը, բանվոր դասակարգը «...ընդունակ է առաջնորդը լինելու այն բոլոր աշխատավոր ու շահագործվող մասսաների, որոնց բուրժուազիան շահագործում, կեղեքում ու ճնշում է, հաճախ ոչ պակաս չափով, քան պրոլետարներին, այլ ավելի ուժեղ չափով, բայց որոնք իրենց ազատագրության համար ինքնուրույն պայքար մղելու անընդունակ են» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 520)։

Արդ, բանվոր դասակարգի, որպես բուրժուական հասարակության գլխավոր արտադրաուժի, զարգացման պատմական աստիճանը նշանակալից չափով ընդլայնում է նրա գաղափարական և քաղաքական ազդեցությունը հասարակության մյուս խավերի վրա, ապահովում նրա ղեկավար դերը՝ բոլոր դեմոկրատական ուժերին մեկ միասնական, կապիտալիստական շահագործման դեմ ծառացած հակամոնոպոլիստական ճակատի մեջ համախմբելու համար՝ հանուն սոցիալական պրոգրեսի մղված պայքարում։

---

# ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԸ

**ՄԵՅԱ ՔԱՅԱԽՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ առանձնապես կարևորեց գաղափարական երևույթների մարքս-լենինյան վերլուծության, հակակոմունիզմի ճամարտակությունների հիմնավորված քննադատության անհրաժեշտությունը։ Այս առումով հարկ ենք համարում անդրադառնալ արվեստագետի աշխարհայացքի ու մեթոդի փոխհարաբերության հարցին, որի շուրջ տակավին շարունակվում են վեճերը գիտական, գեղարվեստական շրջաններում։

Աշխարհայացքի և գեղարվեստական ստեղծագործության փոխհարաբերության պրոբլեմը բազմիցս գրավել է ուսումնասիրողների ուշադրությունը։ Այդ պրոբլեմի հետ կապված շատ հարցեր դարձել են բուռն վիճաբանությունների առարկա։ Դրա տարբեր կողմերը լուսաբանվել են սովետական գեղագետների ու արվեստաբանների աշխատություններում։ Բայց, թեև այդ պրոբլեմն արժանացել է բավականին ուշադրության, որոշ աշխատություններում դեռ հանդիպում ենք աշխարհայացքի ու գեղարվեստական ստեղծագործության հարցի սխալ ըմբռնման, դրանք միմյանց հակադրելու կամ նույնացնելու միտումների։ Ուստի, հարկ է մի անգամ ևս անդրադառնալ այդ խնդրին։ Դա առավել ևս անհրաժեշտ է, որովհետև բուրժուական գեղագիտությունը, մասնավորապես ռևիզիոնիստական գեղագիտական տեսությունները, ձգտելով արվեստն անջատել հասարակական կյանքից, ամեն կերպ փորձում են ապացուցել ստեղծագործության լիակատար անկախությունը աշխարհայացքից, խեղաթյուրելով Վ. Ի. Լենինի ասույթները գեղարվեստական ստեղծագործության մեջ աշխարհայացքի դերի վերաբերյալ։ Սովետական որոշ գեղագետների՝ ռևիզիոնիստական տեսությունների քննադատությունը երբեմն անհամոզիչ է, քանի որ գեղարվեստական ստեղծագործության մեջ աշխարհայացքի վճռական դերի թեզը ոմանց մոտ սոսկ հայտարարության բնույթ է կրում, իսկ դատողությունների և ապացույցների բուն էությունը չի հանգեցնում նման եզրակացության։ Դրա պատճառն այն է, որ շատ աշխատությունների հեղինակներ, ընդունելով աշխարհայացքի և գեղարվեստական մեթոդի սերտ կապը, հնարավոր են համարում դրանց կամ աշխարհայացքի առանձին կողմերի և գեղարվեստական մեթոդի հակասականությունը։ Այս թեզն ապացուցելիս նրանք հիմնականում վկայակոչում են Ֆ. Էնգելսի ասույթները Բալզակի և Վ. Ի. Լենինի ասույթները Տոլստոյի մասին։ Այսպես, Յու. Դավիդովը, խորհուրդ տալով հաշվի առնել գրողի աշխարհայացքի և ստեղծագործության չափազանց բարդ ու հակասական կապը, գրում է. «Ինչպես Բալզակի օրինակով ցույց է տվել Ֆ. Էնգելսը, այդ հակասությունը առաջինի և երկրորդի միջև կարող է հասնել կոնֆլիկտի աստիճանի» (Вопросы эстетики, вып. 9, М., 1971, стр. 7)։

Լ. Ի. Տիմոֆեևը, պնդելով, որ «...ստեղծագործությունը ողջ ուժով արտահայտելով գրողի աշխարհայացքը, միաժամանակ պարունակում է և այնպիսի նյութ, որը կարող է հեռանալ այդ աշխարհայացքից», նույնպես վկայակոչում է Ֆ. Էնգելսին. «Էնգելսը գրել է, որ ստեղծագործությունը կարող է մեծ նշա-

րացումը լուրջ ազդեցություն են գործում նրանց սոցիալական հոգեբանության և քաղաքական դիրքորոշման վրա։ Ու թեև այդ ազդեցությունն արտացոլվում է ոչ անմիջականորեն, այնուամենայնիվ, աշխատավոր մանր բուրժուազիայի բողոքն ընդդեմ խոշոր մոնոպոլիստական կապիտալի աստիճանաբար աճում է։ Մանր բուրժուազիան որոշակիորեն շահագրգռված է ժամանակակից հասարակության դեմոկրատական վերակառուցումով, դրա համար էլ բանվոր դասակարգի և մանր բուրժուազիայի միջև շատ հարցերում երևան է գալիս շահերի զուգադիպություն, որը օբյեկտիվորեն նրանց միջև դաշինքի հնարավորություն է ստեղծում։ Հետևաբար, հասարակության դեմոկրատական վերափոխման համար պայքարում մանր բուրժուազիան օբյեկտիվորեն կարող է լինել բանվոր դասակարգի դաշնակիցը։ Իսկ եթե հաշվի առնենք, որ սնանկացող սեփականատերերից սոսկ քչերին է հաջողվում ձեռնարկել ինքնուրույն գործ, ապա ուրեմն, ըստ էության, նրանք պրոլետարիատի թաքնված ռեզերվն են։

Այսպիսով, կապիտալի երկրների զբաղված բնակչության կառուցվածքում նորագույն տենդենցների վերլուծությունը ցույց է տալիս, որ մոնոպոլիստական կապիտալը, ուժեղացնելով ճնշումը ո՛չ միայն բանվոր դասակարգի, այլև հասարակության մյուս խավերի վրա, հետզհետե ավելի է մեկուսանում նրանցից։ Այդ ճանապարհին բանվոր դասակարգը հանդես է գալիս որպես բոլոր հակամոնոպոլիստական ուժերի գլխավոր ձգողական կենտրոն, քանի որ պրոլետարիատի շահերը մոնոպոլիստական կապիտալի դեմ պայքարի շատ արմատական խնդիրներում համընկնում են աշխատավորների պրոլետարականացող զանգվածների շահերի հետ։ Նրա իսկ բարձրագույն խնդիրը՝ գլխավորել պայքարի այդ հակամոնոպոլիստական ճակատը, կանխորոշվում է խոշոր արդյունաբերության մեջ իր դերով, որի շնորհիվ, ինչպես նշել է Լենինը, բանվոր դասակարգը «...ընդունակ է առաջնորդը լինելու այն բոլոր աշխատավոր ու շահագործվող մասսաների, որոնց բուրժուազիան շահագործում, կեղեքում ու ճնշում է, հաճախ ոչ պակաս չափով, քան պրոլետարներին, այլ ավելի ուժեղ չափով, բայց որոնք իրենց ազատագրության համար ինքնուրույն պայքար մղելու անընդունակ են» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 520)։

Արդ, բանվոր դասակարգի, որպես բուրժուական հասարակության գլխավոր արտադրաուժի, զարգացման պատմական աստիճանը նշանակալից չափով ընդլայնում է նրա գաղափարական և քաղաքական ազդեցությունը հասարակության մյուս խավերի վրա, ապահովում նրա ղեկավար դերը՝ բոլոր դեմոկրատական ուժերին մեկ միասնական, կապիտալիստական շահագործման դեմ ծառացած հակամոնոպոլիստական ճակատի մեջ համախմբելու համար՝ հանուն սոցիալական պրոգրեսի մղված պայքարում։

---

# ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԸ

**ՄԵՅԱ ՔԱՅԱԽՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

**ՍՄԿԿ** XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ առանձնապես կարևորեց գաղափարական երևույթների մարքս-լենինյան վերլուծության, հակակոմունիզմի ճամարտակությունների հիմնավորված քննադատության անհրաժեշտությունը։ Այս առումով հարկ ենք համարում անդրադառնալ արվեստագետի աշխարհայացքի ու մեթոդի փոխհարաբերության հարցին, որի շուրջ տակավին շարունակվում են վեճերը գիտական, գեղարվեստական շրջաններում։

Աշխարհայացքի և գեղարվեստական ստեղծագործության փոխհարաբերության պրոբլեմը բազմիցս գրավել է ուսումնասիրողների ուշադրությունը։ Այդ պրոբլեմի հետ կապված շատ հարցեր դարձել են բուռն վիճաբանությունների առարկա։ Դրա տարբեր կողմերը լուսաբանվել են սովետական գեղագետների ու արվեստաբանների աշխատություններում։ Բայց, թեև այդ պրոբլեմն արժանացել է բավականին ուշադրության, որոշ աշխատություններում դեռ հանդիպում ենք աշխարհայացքի ու գեղարվեստական ստեղծագործության հարցի սխալ ըմբռնման, դրանք միմյանց հակադրելու կամ նույնացնելու միտումների։ Ուստի, հարկ է մի անգամ ևս անդրադառնալ այդ խնդրին։ Դա առավել ևս անհրաժեշտ է, որովհետև բուրժուական գեղագիտությունը, մասնավորապես ռևիզիոնիստական գեղագիտական տեսությունները, ձգտելով արվեստն անջատել հասարակական կյանքից, ամեն կերպ փորձում են ապացուցել ստեղծագործության լիակատար անկախությունը աշխարհայացքից, խեղաթյուրելով Վ. Ի. Լենինի ասույթները գեղարվեստական ստեղծագործության մեջ աշխարհայացքի դերի վերաբերյալ։ Սովետական որոշ գեղագետների՝ ռևիզիոնիստական տեսությունների քննադատությունը երբեմն անհամոզիչ է, քանի որ գեղարվեստական ստեղծագործության մեջ աշխարհայացքի վճռական դերի թեզը ոմանց մոտ սոսկ հայտարարության բնույթ է կրում, իսկ դատողությունների և ապացույցների բուն էությունը չի հանգեցնում նման եզրակացության։ Դրա պատճառն այն է, որ շատ աշխատությունների հեղինակներ, ընդունելով աշխարհայացքի և գեղարվեստական մեթոդի սերտ կապը, հնարավոր են համարում դրանց կամ աշխարհայացքի առանձին կողմերի և գեղարվեստական մեթոդի հակասականությունը։ Այս թեզն ապացուցելիս նրանք հիմնականում վկայակոչում են Ֆ. Էնգելսի ասույթները Բալզակի և Վ. Ի. Լենինի ասույթները Տոլստոյի մասին։ Այսպես, Յու. Դավիդովը, խորհուրդ տալով հաշվի առնել գրողի աշխարհայացքի և ստեղծագործության չափազանց բարդ ու հակասական կապը, գրում է. «Ինչպես Բալզակի օրինակով ցույց է տվել Ֆ. Էնգելսը, այդ հակասությունը առաջինի և երկրորդի միջև կարող է հասնել կոնֆլիկտի աստիճանի» (Вопросы эстетики, вып. 9, М., 1971, стр. 7)։

Լ. Ի. Տիմոֆեևը, պնդելով, որ «...ստեղծագործությունը ողջ ուժով արտահայտելով գրողի աշխարհայացքը, միաժամանակ պարունակում է և այնպիսի նյութ, որը կարող է հեռանալ այդ աշխարհայացքից», նույնպես վկայակոչում է Ֆ. Էնգելսին. «Էնգելսը գրել է, որ ստեղծագործությունը կարող է մեծ նշա-

նակություն ունենալ «նույնիսկ անկախ հեղինակի հայացքներից», և որպես օրինակ բերել է Բալզակին» (Л. И. Тимофеев. Основы теории литературы. М., «Просвещение», 1971, стр. 81)։

Դիմենք Ֆ. Էնգելսի ասույթներին։ Արդյո՞ք դրանք հիմք են տալիս պնդելու, թե հակասություն գոյություն ունի աշխարհայացքի կամ թեկուզ դրա առանձին կողմերի և ստեղծագործության միջև։ Հիշենք Ֆ. Էնգելսի ասույթը, ընդ որում՝ ոչ այնպես, ինչպես սովորաբար վկայակոչում են, այլ ամբողջական ձևով, որպեսզի պարզ լինի, որ այն ոչ մի հիմք չի տալիս պնդելու, թե հակասություն գոյություն ունի աշխարհայացքի և ստեղծագործության միջև։ Ֆ. Էնգելսը, Մարգարիտա Հարկնեսին գրած նամակում, քննադատելով նրա պատմվածքը անբավարար ռեալիստականության համար, միաժամանակ նշում է, որ ինքը նկատի չունի «տենդենցիոզ վեպ» գրելը, որտեղ ընդգրկվեն հեղինակի սոցիալական ու քաղաքական հայացքները։ Այն «ռեալիզմը, որ ես նկատի ունեմ (ընդգծումը մերն է.— Մ. Ք.), արտահայտվում է նույնիսկ անկախ հեղինակի հայացքներից»։ Խոսելով այն ռեալիզմի մասին, որն «արտահայտվում է նույնիսկ անկախ հեղինակի հայացքներից» (արտահայտություն, որ մեջ է բերվում ավելի հաճախակի) Էնգելսը ճշտում է, և ոչ պատահականորեն— այն «ռեալիզմը, որ ես նկատի ունեմ»։ Էնգելսի ասույթները մեջբերելիս միշտ բաց են թողնվում այս բառերը, որովհետև միայն նման կրճատ ձևով է, որ այդ միտքը կարող է ծառայել որպես ապացույց աշխարհայացքի կամ դրա առանձին մասերի ու ստեղծագործության միջև հակասությունների հնարավորության։ Բայց միշտ էլ արտահայտություններին պետք է վերաբերվել զգուշորեն, առավել ևս, երբ քաղվում են մարքսիզմ-լենինիզմի դասականներից։ «Ռեալիզմը, որ ես նկատի ունեմ» արտահայտությունը խիստ էական է։ Էնգելսը հարկ է համարում ճշտել, որ իր բառերը վերաբերում են այն ռեալիզմին, որն ինքը նկատի ունի. խոսքը ոչ թե ռեալիզմի՝ բոլորի կողմից ընդունված նշանակության մասին է, այսինքն՝ ռեալիզմի, որպես գեղարվեստական մեթոդի, այլ իրականության ճշմարտացի, օբյեկտիվ արտացոլման։ Ֆ. Էնգելսի ակնարկած ռեալիզմը նույնպես կապված է աշխարհայացքի հետ, բայց այն կարող է դրսևորվել նաև անկախ հեղինակի սոցիալական ու քաղաքական հայացքներից։ Այն առավելապես կապված է արվեստագետի բարոյական, գեղագիտական սկզբունքների, նրա ըմբռնումների ու պատկերացումների հետ, որոնք ձերբազերծում են նրան իր դասակարգային համակրանքներից ու նախապաշարումներից։ Հեղինակի հայացքներից անկախ դրսևորվող ռեալիզմը... ներքին հակասական հայացքների վկայությունն է։ Ուրեմն խոսքը ոչ թե Բալզակի աշխարհայացքի ռեակցիոնության, այլ դրա հակասականության մասին է։

Խոսելով ռեալիզմի մասին՝ Ֆ. Էնգելսը տվյալ դեպքում իրոք նկատի ունի ռեալ իրականության սոսկ ճշմարտացի և օբյեկտիվ արտացոլումը. Բալզակը իր Մարդկային կատակերգության մեջ մեզ տալիս է ֆրանսիական հասարակության ամենաասքանչելի ռեալիստական պատմությունը, նկարագրելով բարքերը խրոնիկայի ձևով, տարի առ տարի, սկսած 1816-ից մինչև 1848 թվականը։ Նա պատկերում է բարձրացող բուրժուազիայի շարունակ ուժգնացող ճնշումը ազնվական հասարակության վրա... Նա ցույց է տալիս, թե ինչպես իր համար օրինակելի այդ հասարակության վերջին մնացորդները կա՛մ կամաց-կամաց կործանվում էին գռեհիկ մի նորելուկի գրոհի տակ, կա՛մ այլասերվում էին նրա կողմից։ Եվ այնուհետև Էնգելսը նշում է, որ ֆրանսիական հասարակության պատմության բալզակյան նկարագրությունից ինքը տնտեսական մանրամասնությունների առումով նույնիսկ ավելի շատ բան իմացավ, քան բոլոր մասնագետների՝ այդ շրջանի պատմագիրների, տնտեսագետների, վիճակագիրների գրքերից՝ միասին վերցրած (տե՛ս Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը արվեստի մասին, հ. 1, «Հայպետհրատ», 1963, էջ 8—9)։

Բալզակն իր քաղաքական հայացքներով լեգիտիմիստ էր,— գրում է Էնգելսը. խոսելով Բալզակի լեգիտիմիստական հայացքների մասին՝ նա նկատի ունի նաև գրողի ստեղծագործությունը։ Հենց այն պատճառով, որ Բալզակն իր հայացքներով լեգիտիմիստ է, նրա մեծ երկասիրությունը չընդհատվող մի եղերերգություն է բարձր հասարակության անուղղելի քայքայման առիթով. նրա համակրանքը մահացման դատապարտված դասակարգի կողմն է։ Բայց



այս բոլորով հանդերձ նրա երգիծանքը երբեք չի եղել ավելի սուր, նրա հեգնանքը՝ ավելի դառն, քան այն ժամանակ, երբ նա ստիպում է գործել հենց այն մարդկանց, որոնց նա ամենից ավելի է համակրում— արիստոկրատներին և արիստոկրատուհիներին։ Միակ մարդիկ, որոնց մասին նա միշտ խոսում է անսքող հիացմունքով, նրա ամենակատաղի հակառակորդներն են՝ հանրապետականները... (տե՛ս նույն տեղը, էջ 9)։ Ինչպես տեսնում ենք, խոսելով Բալզակի մասին, Էնգելսը նկատի ունի ոչ թե հակասությունը նրա աշխարհայացքի և ստեղծագործության միջև, այլ նրա աշխարհայացքի հակասականությունը, հակասությունը նրա քաղաքական, բարոյական, էթիկական և գեղագիտական հայացքների միջև։ Կարելի է նույնիսկ խոսել ո՛չ միայն Բալզակի աշխարհայացքի հակասականության ու բարդության մասին, այլև նրա քաղաքական հայացքների հակասականության մասին, որովհետև Բալզակը, չնայած լեգիտիմիստ էր, բայց և այնպես հումանիստ-մտածող էր։ Նրա հրապարակախոսական, գրական-քննադատական հոդվածները սոցիալական իրականության նկատմամբ Բալզակի խոր և բարդ հայացքների վկայությունն են։ Ինչպես ասել է Կ. Մարքսը, նա մի գրող էր, որն «աչքի էր ընկնում ռեալ հարաբերությունների խոր ըմբռնմամբ...» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 25, ч. I, изд. 2, М., 1961, стр. 46)։ Բալզակը «տեսավ իր սիրած արիստոկրատների անկման անխուսափելիությունը և նկարագրեց նրանց որպես մարդիկ, որոնք արժանի չեն ավելի լավ վիճակի, և այն, որ նա ապագայի իսկական մարդկանց տեսավ այնտեղ, ուր միայն կարելի էր գտնել նրանց...»։ Էնգելսի այս խոսքերը նույնպես ապացուցում են, որ չի կարելի պնդել, թե ամբողջովին ռեակցիոն են Բալզակի ո՛չ միայն աշխարհայացքը, այլև՝ քաղաքական հայացքները։ Իսկ ինչ վերաբերում է դրանց հակասականությանը, ապա այն արտացոլվել է նաև «ռեալիզմի խոշոր վարպետի» ստեղծագործության մեջ, մասնավորապես նրա այնպիսի գործերում, ինչպես՝ Գյուղական բժիշկը և Գյուղական հոգևորականը։ Պատահական չէ, որ Էնգելսը երկու անգամ ընդգծում է տեսավ բառը և ասում, որ «ռեալիզմի մեծագույն հաղթանակներից մեկը, ծերունի Բալզակի մեծագույն առանձնահատկություններից մեկը» համարում է «այն, որ Բալզակը հարկադրված էր դիմակայելու իր սեփական դասակարգային համակրություններին և քաղաքական նախապաշարումներին»։ Խոսելով ռեալիզմի հաղթանակի մասին՝ Էնգելսը նկատի ունի, որ ռեալիզմը հաղթանակել է Բալզակի բուն աշխարհայացքի մեջ՝ հաղթահարելով նրա քաղաքական լեգիտիմիստական հայացքները։ Այդ իսկ պատճառով Էնգելսը դա համարում է «ծերունի Բալզակի մեծագույն առանձնահատկություններից մեկը» (տե՛ս Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը արվեստի մասին, հ. 1, էջ 10)։

Այսպիսով, աշխարհայացքի և ստեղծագործության կամ աշխարհայացքի առանձին կողմերի և ստեղծագործության միջև հակասությունների դրույթը պնդելիս Ֆ. Էնգելսին վկայակոչելն անհիմն է։ Մանավանդ որ մի այլ առիթով Էնգելսը գրողի ստեղծագործության հակասությունները պատշաճ հստակությամբ բացատրում է նրա աշխարհայացքում, մասնավորապես նրա հասարակական հայացքներում եղած հակասություններով։ Խոսքը վերաբերում է Գյոթեի մասին նրա ասածին. Գյոթեն իր երկերում երկակի վերաբերմունք ունի իր ժամանակվա գերմանական հասարակության հանդեպ։ Նրա վերաբերմունքը մերթ թշնամական է այդ հասարակության նկատմամբ, վերջինս նողկալի է նրա համար, և նա փորձում է փախչել դրանից, ինչպես Իֆիգենիա-ում... Նա ընդվզում է նրա դեմ, ինչպես Գյոցը, Պրոմեթևոսը և Ֆաուստը, ծաղրում նրան Մեֆիստոֆելի պես։ Մերթ հակառակը, նա մտերմանում է նրան, «հաշտվում» նրա հետ, ինչպես իր Հեզ քսենիաների մեծ մասում, այնպես էլ շատ արձակ գործերում, փառաբանում նրան, ինչպես Դիմակահանդեսային շքերթներում, նույնիսկ պաշտպանում է նրան՝ նրա վրա գրոհող պատմական շարժումից, հատկապես բոլոր այն գրվածքներում, որոնցում նա հիշատակում է ֆրանսիական հեղափոխությունը... Այսպես, Գյոթեն մերթ վիթխարիորեն մեծ է, մերթ՝ չնչին, մերթ՝ ըմբոստ, ծաղրող, աշխարհն արհամարհող հանճար, մերթ՝ զգույշ, ամենքից գոհ, նեղ ֆիլիստեր (տե՛ս նույն տեղը, էջ 627)։

Դիմենք Տոլստոյի մասին Վ. Ի. Լենինի ասույթներին, որովհետև, որոշ հետազոտողներ, ապացուցելով խորապես ռեալիստական գործերի ստեղծման

հնարավորությունը՝ հակառակ աշխարհայացքի ռեակցիոն կողմերի, բացի Ֆ. Էնգելսին վկայակոչելուց, վկայակոչում են նաև Վ. Ի. Լենինին։ Ընդ որում, նրանք ելնում են այն բանից, որ Լենինը, շատ բարձր գնահատելով Տոլստոյին որպես գրողի, սուր և անողոք քննադատել է տոլստոյականությունը՝ Տոլստոյի հայացքների համակարգը, նրա «Մի կալ հակառակ չարի» բարոյական ինքնակատարելագործման կոչերը, «համընդհանուր սիրո» ու ասկետիզմի քարոզը և այլն։ Ստացվում է այնպես, որ, իբր, Տոլստոյի մասին Վ. Ի. Լենինի բնութագրումներում խոսքը նրա ռեակցիոն աշխարհայացքի և հանճարեղ ստեղծագործության մասին է, որ մի քայլ առաջ է մարդկության գեղարվեստական զարգացման գործում։ Այստեղից էլ արվում է այնպիսի եզրակացություն, թե Տոլստոյը մեծ է հակառակ իր աշխարհայացքի, կամ, լավագույն դեպքում՝ գրողն ստեղծագործում է շնորհիվ իր աշխարհայացքի ուժեղ և հակառակ թույլ կողմերի։ Այսպես, Ա. Զիսը Արվեստ և գեղագիտություն գրքում գրում է. «Չի կարելի հաշվի չառնել դեռևս Վ. Ի. Լենինի նշած հակասության հնարավորությունը գրողի աշխարհայացքի առանձին կողմերի և նրա ստեղծագործության բնույթի միջև» և ապա՝ «Ակնհայտ է, որ իրենց խորապես ռեալիստական գործերը Բալզակը և Տոլստոյն ստեղծել են ոչ թե հակառակ իրենց ողջ աշխարհայացքի։ Նրանք ռեալիստ էին՝ հակառակ իրենց աշխարհայացքի սոսկ ռեակցիոն կողմերի» (А. Зись. Искусство и эстетика. М., «Искусство», 1975, стр. 438)։ Վ. Վանսլովը գտնում է, որ «աշխարհայացքի և ստեղծագործության հակասության դեպքում ռեակցիոն կողմը կարող է որոշիչ չլինել ստեղծագործության համար» (В. Ванслов. Прогресс в искусстве. «Искусство», 1973, стр. 151)։

Կարելի է բերել այսպիսի շատ օրինակներ, երբ աշխարհայացքի և ստեղծագործության հակասության թեզի կողմնակիցները վկայակոչում են Վ. Ի. Լենինի սույթները։ Բայց Լենինը գրողի ստեղծագործությունը չի անջատում նրա աշխարհայացքից, հակառակը, նա բազմիցս շեշտել է դրանց անքակտելի կապը։ Իսկ ինչ վերաբերում է Տոլստոյին, ապա Վ. Ի. Լենինը նրա աշխարհայացքը չի համարում ամբողջությամբ ռեակցիոն։ Քննադատելով «տոլստոյականությունը», նրա աշխարհայացքի թույլ, հետադիմական կողմերը՝ Լենինը միաժամանակ նշում է գրողի հայացքների հակասությունը, միանգամայն որոշակի նշելով, որ Տոլստոյի ուսմունքը պետք է համարել սոցիալիստական, թեև այն ուտոպիական է և ռեակցիոն. Տոլստոյի ուսմունքը,— գրել է Լենինը,— անվերապահորեն ուտոպիական է և իր բովանդակությամբ ռեակցիոն՝ այս բառի ամենաճիշտ և ամենախոր իմաստով։ Բայց այստեղից բնավ չի հետևվում ո՛չ այն, թե այդ ուսմունքը սոցիալիստական չէ, ո՛չ էլ այն, թե դրանում չեն եղել քննադատական տարրեր, ունակ արժեքավոր նյութ տալու առաջավոր դասակարգերի լուսավորության համար (տե՛ս Վ. Ի. Լենինը կուլտուրայի և արվեստի մասին, «Հայպետհրատ», 1958 թ., էջ 128)։

Բնութագրելով կապիտալիզմի տոլստոյական քննադատության ուժեղ կողմերը՝ Լենինը, միաժամանակ, բացահայտել է դրա թուլությունն ու սնանկությունը։ Տոլստոյի աշխարհայացքի ուժեղ կողմերից Լենինը նշում է «նրա բուռն, կրքոտ, հաճախ անողոք-սուր բողոքն ընդդեմ պետության և ոստիկանական պետական եկեղեցու», «հողի մասնավոր սեփականության նրա անդրդվելի ժխտումը...», «կապիտալիզմի անդուլ, բուռն, զայրալի մերկացումը նրա կողմից...»։ Բայց, նշելով այս ուժեղ կողմերը՝ Լենինը միաժամանակ ցույց է տվել, որ Տոլստոյի ուսմունքի և ստեղծագործությունների մեջ դրսևորվել են նաև նրա գեղջկական աշխարհայացքի թուլությունները։ Ջերմ բողոքականը,— գրել է նա,— կրքոտ մերկացնողը, մեծ քննադատը... իր գրվածքներում դրսևորել է ճգնաժամի պատճառների և Ռուսաստանի վրա շարժվող ճգնաժամից դուրս գալու միջոցների այնպիսի անըմբռնողություն, որը հատուկ է միայն նահապետական, միամիտ գյուղացուն, և ոչ թե եվրոպականորեն— կրթված գրողին (տե՛ս Երկեր, հ. 16, էջ 422)։

Տոլստոյի մասին գրած իր հոդվածներում Լենինը խոսում է թե՛ նրա ստեղծագործություններում, թե՛ հայացքներում եղած հակասության մասին։ Հակասությունները Տոլստոյի երկերում, հայացքներում, ուսմունքներում... իրոք աղաղակող են (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 17, էջ 251)։ Լենինը բացահայտում



է այդ հակասությունները և մի կողմից՝ մեր առջև հառնում է հասարակական ստի ու կեղծիքի դեմ անկեղծորեն բողոքող, կապիտալիստական շահագործումն անողոք քննադատող հանճարեղ գրողը, մյուս կողմից՝ «ի Քրիստոս խենթացյալ կալվածատերը», որը քարոզում է բռնությամբ «չհակառակել չարին»։ Նշելով այս աղաղակող հակասությունները՝ Լենինը դրանք դիտում է որպես ռուսական հեղափոխության առանձնահատկությունների, դրա թերությունների ու թուլությունների արտահայտություն։ Լենինը նշում է, որ այդպիսի հակասությունների պայմաններում Տոլստոյը չէր կարող հասկանալ ո՛չ բանվորական շարժումը, ո՛չ դրա դերը սոցիալիզմի համար մղվող պայքարում, ո՛չ հեղափոխությունը։ «Բայց Տոլստոյի հայացքների և ուսմունքների մեջ հակասությունները պատահականություն չեն, այլ այն հակասական պայմանների արտահայտությունը, որոնց մեջ դրված էր XIX դարի վերջին երրորդի ռուսական կյանքը» (Նույն տեղը, էջ 252)։ Լենինը ցույց է տվել, որ կապիտալիզմի տոլստոյական քննադատությունն արտացոլում է միլիոնավոր ռուս գյուղացիների մտքերն ու զգացմունքները. «Տոլստոյը մեծ է որպես արտահայտիչը այն գաղափարների ու այն տրամադրությունների, որոնք ձևավորվել են միլիոնավոր ռուս գյուղացիների մեջ Ռուսաստանում բուրժուական հեղափոխությունն սկըսվելու ժամանակ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 17, էջ 253)։

Լ. Ն. Տոլստոյ հոդվածում Լենինը վերստին կրկնում է այդ նույն միտքը, ընդ որում, դարձյալ չանջատելով Տոլստոյ-մտածողին Տոլստոյ-գրողից. թե՛ իբրև արվեստագետ, թե՛ իբրև մտածող ու քարոզիչ, Տոլստոյը զարմանալի ցայտունությամբ մարմնավորել է իր երկերում ռուսական առաջին ողջ հեղափոխության պատմական յուրատեսակության գծերը, նրա ուժն ու նրա թուլությունը (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 16, էջ 420)։ Տոլստոյը, ինչպես ցույց է տվել Վ. Ի. Լենինը, կյանքին նայում էր նահապետական գյուղացու աչքերով, այդ պատճառով էլ նահապետական գյուղացու նման չէր հասկանում Ռուսաստանում վերահաս ճգնաժամի իրական պատճառները և այն, թե ինչպես պետք է պայքարել դրա դեմ։

Կարելի է հիշատակել Լենինի մի շարք արտահայտություններ ևս, որոնք ապացույց են այն բանի, որ գրողի ստեղծագործությունը նա չէր անջատում աշխարհայացքից, ամեն անգամ նշելով, որ հանճարեղ գրողի թե՛ ուժեղ, թե՛ թույլ կողմերն արտահայտվել են նրա փիլիսոփայության մեջ, դրսևորվել նրա ստեղծագործություններում։ Ավելին, Տոլստոյի մասին գրած իր հոդվածների շատ եզրակացություններ Լենինը հիմնավորում է ո՛չ միայն Տոլստոյի հրապարակախոսական և կրոնաբարոյական տրակտատներով, այլև նրա գեղարվեստական այնպիսի ստեղծագործություններով, ինչպես՝ Աննա Կարենինան, Առվույտը, Կրեյցերյան սոնատը։

Լ. Ն. Տոլստոյը և նրա դարաշրջանը հոդվածում Տոլստոյի հայացքների և ուսմունքի մեջ եղած հակասությունները Լենինը կրկին համարում է կոնկրետպատմական այն պայմանների, այն դարաշրջանի ծնունդ, որին պատկանում է Տոլստոյը։ Այդ ժամանակամիջոցի հենց անցումնային բնույթն էլ ծնեց, Լենինի խոսքերով ասած, «թե՛ Տոլստոյի երկերի և թե «տոլստոյականության» բոլոր հատկանշական գծերը» (Վ. Ի. Լենինը կուլտուրայի և արվեստի մասին, էջ 125)։

Այսպիսով, ինչպես ցույց է տվել Վ. Ի. Լենինը, Տոլստոյը և՛ իր ստեղծագործություններում, և՛ փիլիսոփայական, հրապարակախոսական, բարոյակրոնական հոդվածներում ու տրակտատներում, բացահայտելով կապիտալիստական Ռուսաստանի սոցիալական կյանքի արատներն ու չարիքը, իր ստեղծագործություններում հանճարեղ կերպով նկարագրելով իրականությունը, պատկերել է հակասությունները ռուսական հետռեֆորմյան, նախահեղափոխական կյանքի, որին բացի բուռն ատելությունից և դեպի լավագույնն ունեցած ձըգտումից, բնորոշ են «և երազկոտության, քաղաքական անդաստիարակության, հեղափոխական անողնաշարության տհասությունը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 17, էջ 255)։ Եթե ուշադրությամբ կարդանք Տոլստոյի հրապարակախոսական և կրոնաբարոյական թեմաներով գրած հոդվածներն ու տրակտատները, ծանոթանանք նրա օրագրերին և նամակներին, կտեսնենք, որ դրանցում արծարծված

շատ հարցեր արտացոլվել են նաև նրա գեղարվեստական ստեղծագործության մեջ։

Ուրեմն ինչ անել, Մեր ժամանակի ստրկությունը, Աստծո թագավորությունը մեր մեջ տրակտատներում և հոդվածներում, ինչպես իր լավագույն ստեղծագործություններում, Տոլստոյը բացահայտել և խարազանել է չարը, բռնությունը, հասարակական հարաբերությունների անարդարությունն ու կեղծիքը։ Այսպես, շարադրելով իր հայացքները կրոնի մասին, Տոլստոյը միաժամանակ խիստ քննադատում է ուղղափառ եկեղեցու պաշտոնական ուսմունքը։ Տոլստոյի կոչը դեպի կրոն՝ յուրօրինակ բողոք է ընդդեմ այն բանի, որ կրոնը կորցրել է իր նախնական բարոյական բովանդակությունը։ Պատահական չէ, որ, նշելով եկեղեցու տոլստոյական քննադատության ուժն ու համոզչականությունը, Վ. Ի. Լենինը Տոլստոյի կրոնի մեջ ևս բացահայտել է տոլստոյական այդ քննադատության մեջ թաքնված հակասությունները։ Մերժելով հավատի եկեղեցական ձևը, աստծու մասին եկեղեցական ուսմունքը՝ Տոլստոյը կոչ էր անում ամրապնդել հավատի բուն սկզբունքը, ընդունել աստծու մասին նոր՝ հոգեպես նրբացված, բարոյապես մաքրված հասկացությունը։ Դատապարտելով եկեղեցին կապիտալիստական կեղեքմանն աջակցելու համար, մեծ գրողը միաժամանակ հանդես էր գալիս չարին բռնությամբ չհակառակելու քարոզով։ Այդ պատճառով էլ Լենինը պնդում էր, որ Տոլստոյն արտահայտում է գյուղացիական մասսաների տրամադրությունը, և նրա ուսմունքը կրում է նրանց պարզամտությունը, նրանց խորթացումը քաղաքականությունից, նրանց անզոր անեծքը՝ ուղղված տիրող կարգերին։

Տոլստոյի աշխարհայացքի թույլ կողմերն իրենց կնիքն են դրել նույնիսկ նրա լավագույն գործերի վրա։ Բավական է հիշել թեկուզ և Աստվածաշնչի օգնությամբ Նեխլյուդովի ապաշխարման տեսարանը Հարություն վեպում։ Շատ հետազոտողներ բազմիցս նշել են, թե ինչպիսի աղաղակող հակասություն կա վեպի այդ տեսարանների և մերկացնող պաթոսի ու կենսական ճշմարտության միջև։

Տոլստոյի աշխարհայացքի թուլությունները արտահայտվել են նաև Կուտուզովի և Պլատոն Կարատաևի կերպարներում (Պատերազմ և խաղաղություն), հանգեցրել գեղարվեստական կեղծիքի նրա բարոյախոսական մի քանի պատմվածքներում, ինչպես, օրինակ, Կեղծ կտրոնում։ Մեծ գրողի ստեղծագործությունը լիովին համապատասխանում է նրա աշխարհայացքին, որից անբաժան է նրա արվեստը։ Ամեն մի աշխարհայացք, լինի այն ամբողջական, թե հակասական, արտացոլվում է ստեղծագործության մեջ։

Աշխարհայացքի և ստեղծագործության միջև հակասության հնարավորության ընդունումը վերապրուկն է վաղուց քննադատված մի թյուր տեսակետի, որը նույնացնում էր աշխարհայացքն ու քաղաքական համոզմունքները և դրա հիման վրա փորձում ապացուցել այս կամ այն արվեստագետի աշխարհայացքի ռեակցիոնությունը։ Ժամանակակից այն հետազոտողները, ըստ որոնց հակասություն գոյություն ունի աշխարհայացքի առանձին կողմերի և ստեղծագործության միջև, իրավամբ նշելով, որ աշխարհայացքը չի հանգեցվում սոսկ քաղաքական հայացքների, այլ իրենից ներկայացնում է քաղաքական, փիլիսոփայական, բարոյական, գեղագիտական և այլ սկզբունքների ու հայացքների ամբողջություն, ընդունում են որոշ գրողների աշխարհայացքի ուժեղ և թույլ կողմերի առկայությունը և գտնում, որ գրողն իր ռեալիստական գործերն ստեղծում է շնորհիվ իր աշխարհայացքի ուժեղ և հակառակ թույլ կողմերի։ «Հակասություն աշխարհայացքի և ստեղծագործության միջև» արտահայտության փոխակերպումը «հակասություն աշխարհայացքի առանձին կողմերի և ստեղծագործության միջև» արտահայտության՝ ըստ էության ոչինչ չի փոխում։ Երկու դեպքում էլ գեղարվեստական ստեղծագործության մեջ աշխարհայացքի դերը հանդես է գալիս որպես ոչ էական։ Եթե համաձայնենք, որ հնարավոր է աշխարհայացքի առանձին ռեակցիոն կողմերի և ստեղծագործության հակասությունը, և արվեստագետը կարող է ստեղծագործել հակառակ այդ կողմերի, ապա այդ եզրակացությանը կհետևեն գեղարվեստական ստեղծագործության մեջ աշխարհայացքի դերի թերագնահատումը և այն պնդումները, թե ռեալիզմը



պարգանում է իր ներքին տրամաբանությամբ, աշխարհայացքից անկախ։ Ստեղծագործության մեջ աշխարհայացքի վճռական դերը դեկլարատիվ պնդումներով փրկելու փորձերը համոզիչ չեն։ Առավել ևս, եթե հաշվի առնենք, թե մարքս-լենինյան գեղագիտությունն ինչպիսի՜ սուր պայքար է մղում բուրժուական, ռևիզիոնիստական գեղագիտական տեսությունների դեմ, տեսություններ, որոնք ճգնում են հիմնավորել ստեղծագործության լիակատար անկախությունը գրողի գիտակցությունից։

Հաճախ գրողի քաղաքական, սոցիալական կամ փիլիսոփայական հայացքները, նրա կարծիքը այս կամ այն ստեղծագործության մտահղացման մասին իրենց գաղափարական միտումով կամ, այլ կերպ ասած՝ որևէ ստեղծագործության մեջ արծարծված գեղարվեստական ընդհանրացումներով չեն համընկնում վերջնական արդյունքին, հեռանում են հեղինակի գաղափարական, հասարակական-քաղաքական նպատակադրումներից։ Այս դեպքում ևս հարկ չկա խոսելու աշխարհայացքի կամ դրա առանձին կողմերի ու ստեղծագործության հակասության մասին։ Կարևորը, ի վերջո, գրողի այս կամ այն, երբեմն պատահական կամ ինչ-որ նկատառումներից բխող կարծիքները չեն։ Շատ ավելի կարևոր է հայացքների այն համակարգը, որը դրսևորվում է հեղինակի կերտած կերպարների համակարգում, քանզի դա է ամենախորն ու ամենաանմիջականը։ Գրողը, ելնելով քաղաքական նկատառումներից, իր արտահայտություններում կարող է անկեղծ չլինել։ Իսկ ստեղծագործության մեջ նույնիսկ այդ նկատառումները չեն կարող նրան ստիպել փոխելու իր էությունը, հրաժարվելու նրանից, ինչ իր համար հիրավի թանկ է։

Հեղինակի գեղարվեստական մի քանի ընդհանրացումների և գաղափարական ու հասարակական-քաղաքական դրույթների անհամապատասխանության փաստերը շատ հետազոտողներ բացատրում են ստեղծագործական պրոցեսի վրա կյանքի, բնավորությունների տրամաբանության ներգործությամբ։ Իհարկե, չի կարելի ժխտել այդ ներգործությունը։ Բայց կարևորն այստեղ գրողի անձնական խառնվածքն է, այն հատկությունները, որոնք, հակառակ նրա պատկերացումների, հայացքների, համակրանքի, հնարավորություն են ընձեռում հետևելու կյանքի այդ տրամաբանությանը, այսինքն՝ այն ճշմարտությանը, որին ինքը համամիտ չէ։ Կյանքի այդ տրամաբանությանը հետևելու մեջ էլ կրկին դրսևորվում է գրողի աշխարհայացքը։

Այսպիսով, մեծ արվեստագետների օրինակով, մարքսիզմ-լենինիզմի կլասիկները ցույց են տվել, որ գրողի հասարակական ճանաչումը պայմանավորված է նրա բարոյաէթիկական, քաղաքական-հասարակական հայացքներով ու համոզմունքներով։

---

# ԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻՆ ԿՈՄՊԼԵՔՍԱՅԻՆ ՄՈՏԵՑՈՒՄ

**Ս. Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆ**
ՀԿԿ Երևանի քաղկոմի քարտուղար

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ զարգացման բարդ խնդիրները, կոմունիստական շինարարության հարաճուն մասշտաբները, միջազգային ասպարեզում իրադարձությունների ընդհանուր ընթացքը պահանջում են, ինչպես նշեց ՍՄԿԿ XXV համագումարը, ո՛չ միայն բարձրացնել էկոնոմիկայի և սոցիալ-կուլտուրական կյանքի կուսակցական ղեկավարման մակարդակը, այլև արմատապես բարելավել մարդկանց դաստիարակության գործը, ուժեղացնել նրանց շրջանում տարվող գաղափարաքաղաքական աշխատանքը։

Կուսակցությունը գաղափարախոսական գործունեությունը համարում է կոմունիստական շինարարության առաջավոր տեղամաս, առանձնահատուկ ուշադրություն նվիրում դրա հետագա բարելավմանն ու կատարելագործմանը։ Արդի փուլում կուսակցության գաղափարախոսական աշխատանքի հարցերը ամենայն խորությամբ արծարծվեցին «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշման մեջ։ ՍՄԿԿ Կենտկոմը նշեց, որ ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը, երկրի նյութական և հոգևոր պոտենցիալի հսկայական աճը, խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար ՍՄԿԿ-ի և սովետական պետության պայքարի հաջողությունները լայն հնարավորություններ են ստեղծել սովետական մարդկանց կոմունիստական գիտակցականության ձևավորման բնագավառում կուսակցության ծրագրային նպատակների իրականացման համար։

ՍՄԿԿ Կենտկոմն այդ որոշմամբ խնդիր է դնում կուսկազմակերպությունների առջև՝ ապահովել պրոպագանդայի և ագիտացիայի գիտական բարձր մակարդակը, զարգացնել դրանց հարձակողական բնույթը, ուժեղացնել գործարարությունն ու կոնկրետությունը, կապը կյանքի, տնտեսական և քաղաքական խնդիրների լուծման հետ։ «Գաղափարախոսական աշխատանքը,— նշվում է որոշման մեջ,— պետք է հասցվի որակապես ավելի բարձր մակարդակի, որը համապատասխանի զարգացած սոցիալիզմի պահանջներին, կոմունիստական շինարարության նոր խնդիրներին»։

Սոցիալիստական հասարակության զարգացման դիալեկտիկան ապացուցում է, որ որքան բարձր է հասարակական զարգացման աստիճանը, այնքան ավելի մեծ են մարդուն, հասարակության անդամին ներկայացվող պահանջները։ Չհնմարկելով տնտեսական, սոցիալ-քաղաքական այս կամ այն արմատական հարցի լուծումը՝ կուսակցությունն ամենից առաջ ելնում է այն իրողությունից, որ մեր բոլոր գործերի հիմքում մարդն է, որ հասարակական առաջընթացի ամեն մի հաջողություն պայմանավորված է նրա ակտիվ գործունեությամբ, բարձր գիտակցականությամբ, կոմունիզմ կառուցելու նրա պատրաստակամությամբ ու կարողությամբ։ Մեր հասարակարգի ուժը, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, մասսաների բարձր գիտակցականության մեջ է։ Կոմունիզմի կառուցման մեծ գործը, ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը, անհնար է առաջ շարժել, առանց բուն իսկ մարդու համակողմանի զարգացման, առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցականության, նրանց ներքին հասունության բարձր մակարդակի։

Մեր օրերում կոմունիստական դաստիարակության հարաճուն դերը պայմանավորված է սոցիալ-պատմական մի շարք հանգամանքներով. կյանք են մտնում մարդկանց նոր սերունդներ՝ իրենց հետ բերելով նոր հոգեբանություն, գիտելիքներ ու պահանջներ։ Գիտության ու տեխնիկայի զարգացումն իր հերթին նպաստում է սոցիալ-տնտեսական պայմանների նորացմանն ու բարելավմանը, սոցիալական զարգացման ընթացքի արագացմանը, տնտեսավարման ինտենսիվ մեթոդների կիրառմանը։ Աշխատավորության գիտակցականության և իրազեկության աճը նոր պահանջներ է առաջադրում մասսաների շրջանում տարվող ամբողջ աշխատանքին։

Կուսակցությունը գաղափարադաստիարակչական աշխատանքի միջուկը համարում է աշխատավորական լայն զանգվածների կոմունիստական գիտական աշխարհայացքի ձևավորումը, մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով նրանց զինելը։ Գաղափարախոսական աշխատանքի կարևորագույն խնդիրն է՝ սովետական բոլոր մարդկանց դաստիարակել սոցիալիստական սեփականության և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, անցյալի մնացուկների, բուրժուական գաղափարախոսության ու բարոյախոսության հանդեպ անհաշտելիության ու անհանդուրժողականության ոգով։

ԵՐԵՎԱՆԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ, նրա քաղաքային կոմիտեի համար գործունեության ծրագիր են գաղափարախոսական աշխատանքի վերաբերյալ կուսակցական վերադաս մարմինների որոշումներն ու փաստաթղթերը, XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ, նրա ելույթներում և աշխատություններում շարադրված սկզբունքներն ու հետևությունները։

Մեր գաղափարադաստիարակչական գործունեությանը նոր լիցք հաղորդեց ՀԿԿ Կենտկոմի՝ հունիսի 27-ին տեղի ունեցած պլենումը, որը քննարկեց «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կենսագործման ասպարեզում հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրները։ Պլենումում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանի զեկուցման և քննարկված հարցի առթիվ ընդունված որոշման մեջ հանգամանորեն արծարծվել են աշխատավորության գաղափարաքաղաքական դաստիարակության գործի կատարելագործման ու բովանդակության խորացման, սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծման հետ նրա փոխադարձ սերտ կապի ապահովման հարցերը։ Պլենումը մշակեց միջոցառումների լայն ծրագիր՝ աշխատավորության կոմունիստական դաստիարակության արմատական բարելավման, ողջ գաղափարախոսական աշխատանքի մակարդակի հետագա բարձրացման նպատակով։

Պլենումը ո՛չ միայն ընդհանրացրեց հանրապետության կուսկազմակերպությունների ծավալած գաղափարախոսական գործունեության հաջողությունները, այլև բացահայտեց այդ գործում տեղ գտած լուրջ թերություններն ու վրիպումները, պահանջեց կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեներից, սկզբնական կուսկազմակերպություններից՝ վճռական քայլերի դիմել դրանք վերացնելու և շտկելու համար։

Մայրաքաղաքի կուսակցական կազմակերպությունը, անշուշտ, անհրաժեշտ հետևություններ կանի պլենումի քննադատությունից և գործնական մի-

ջոցներ կձեռնարկի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջները հետևողականորեն կատարելու համար։

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ հատկապես կարևոր նշանակություն են ստանում աշխատավորների դաստիարակության գաղափարական, հոգևոր գործոնները՝ որպես հասարակական առաջընթացի հզոր արագացուցիչներ։ Այսօր մենք կարող ենք նշել, որ, լուծելով արտադրական առաջադրանքների կատարման գաղափարական ապահովման խնդիրը, քաղաքի կուսկազմակերպությունը, բոլոր աշխատավորները հայրենանվեր գործերով են նշանավորել հնգամյակի անցած յուրաքանչյուր տարին։ Կատարվել ու գերակատարվել են տնտեսական կարևորագույն ցուցանիշների՝ հնգամյակի երեք ու կես տարիների առաջադրանքները։ Ձեռք բերած հաջողությունների համար Երևան քաղաքը չորս անգամ անընդմեջ հաղթող է ճանաչվել համամիութենական սոցիալիստական մրցությունում և արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Այս ամենը վկայում է համագումարի առաջադրած խնդիրների կենսագործման ասպարեզում երևանցիների ցուցաբերած քաղաքական և աշխատանքային աննախընթաց ակտիվության մասին։

Արդի պայմանները կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական գործունեության առաջադրում են նոր, ավելի բարդ խնդիրներ։ ՍՄԿԿ Կենտկոմն իր վերջին որոշմամբ մեկ անգամ ևս կարևորեց այն ուղին, որով ընթանալով՝ կարելի է հասնել դաստիարակչական աշխատանքի արդյունավետության առավել բարձրացման։ Դա կոմպլեքսային մոտեցումն է դաստիարակության ամբողջ գործի նկատմամբ, այն է՝ գաղափարական-քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնության ապահովումը՝ հաշվի առնելով աշխատավորության զանազան խմբերի առանձնահատկությունները։

Կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեն, շրջկոմները և սկզբնական կուսկազմակերպությունները, կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, գաղափարադաստիարակչական աշխատանքի հարցերի կոմպլեքսային լուծման խնդիրները դարձրել են մշտական ուշադրության առարկա։ Քաղկոմի, շրջկոմների պլենումներում և բյուրոներում, կուսակցական ժողովներում պարբերաբար քննարկվում են աշխատավորության գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակությանը վերաբերող հարցեր, մշակվում կուսակցության այսօրվա պահանջներից բխող միջոցառումներ, որոնք նպաստում են կուսկազմակերպությունների գաղափարախոսական գործունեության բարելավմանը։

Գաղափարադաստիարակչական հարցերի կոմպլեքսային լուծման ուսանելի փորձ է կուտակել ՀԿԿ Սովետական շրջկոմը։ Նրա մշակած հեռանկարային պլանում մեծ տեղ է հատկացված կուսկազմակերպությունների գաղափարախոսական գործունեության բարելավման, դաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման, այդ գործի կազմակերպման ողջ համակարգի կատարելագործման խնդիրներին, որոնք հաջողությամբ իրականացվում են։ Այս ասպարեզում ակտիվ գործունեություն են ծավալել գաղափարադաստիարակչական աշխատանքի կոորդինացիոն խորհուրդը և սոցիոլոգիական ուսումնասիրությունների հանձնաժողովը։ Շրջկոմն առանձնահատուկ կարևորություն է տալիս աշխատավորության տարբեր խմբերի հետ և ըստ բնակության վայրի մարդկանց շրջանում տարվող աշխատանքին։ Խրախուսման արժանի է նաև կուսակցության Օրջոնիկիձեի և Մյասնիկյանի շրջկոմների գործունեությունը։

Բնական է, որ մեր գործնական աշխատանքում գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության ուղղությունները պետք է լինեն դիալեկտիկական անխզելի միասնության մեջ։ Դաստիարակության պրոցեսի արդյունավետության բարձրացումը պահանջում է կատարելապես տիրապետել գաղափարաքաղաքական աշխատանքի ողջ զինանոցին։

Մասսաների շրջանում տարվող գաղափարաքաղաքական և դաստիարակ-



չական աշխատանքի հիմքը կոմունիստների ու անկուսակցականների քաղաքական լուսավորությունն է, մարքսիստական-լենինյան ուսուցումը։ Եվ, բնականաբար, այս խնդիրն ամենայն լրջությամբ արծարծվեց ՀԿԿ Կենտկոմի պլենումում։ Պլենումում նշվեց, որ նկատելիորեն ընդլայնվել է քաղաքական և տնտեսագիտական ուսուցման ցանցը, բարձրացել պարապմունքների քաղաքական-գաղափարական մակարդակը, ուսուցումը մեծապես նպաստում է կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների լուծմանը։ Այս առնչությամբ դրվատվեց նաև Երևանի կուսակցական կազմակերպության աշխատանքը։

Եվ իրոք, վերջին տարիներին որակական ու քանակական զգալի տեղաշարժեր են կատարվել քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության սիստեմում։ Կուսակցության քաղկոմը, շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները, կենսագործելով «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի ներքո կուսակցական ուսուցման խնդիրների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, զգալի գործ են արել ավելի մեծ թվով մարդկանց ուսուցման մեջ ընդգրկելու համար։ 1978—1979 ուստարում, նախորդ տարվա համեմատությամբ, ուսուցման մեջ ընդգրկվածների թիվն աճել է յոթ հազարով։ Կուսակցական քաղաքական ուսուցման համակարգում իրենց գիտելիքները հարստացրին շուրջ 62 հազար ունկնդիրներ։ Ընդլայնվել են նաև մասսայական պրոպագանդայի օղակները, բարելավվել է քաղաքական բանավոր ագիտացիայի դրվածքը։ Պրոպագանդայի մասսայական օղակներում սովորում է շուրջ 125 հազար աշխատավոր։ Տնտեսագիտական կրթության ցանցում անհրաժեշտ գիտելիքներ են ձեռք բերում 85 հազար բանվոր-ծառայողներ։

Դրական տեղաշարժեր կան նաև կրթության բովանդակության խորացման ու հարստացման, նրա տեսական մակարդակի բարձրացման գործում։ Մեր երկրի կյանքում վերջին տարիներս տեղի ունեցած պատմական վիթխարի իրադարձությունները խոր ազդեցություն են թողել քաղաքական ուսուցման, տնտեսագիտական կրթության համակարգի, քաղմասսայական ողջ աշխատանքի բովանդակության վրա։ Բեղմնավոր գործունեություն է ծավալվել համագումարի որոշումների, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման, Մեծ Հոկտեմբերի 60-ամյակին նվիրված հոբելյանական հանդիսավոր նիստի նյութերի, ՍՍՀՄ նոր Սահմանադրության ուսումնասիրման, պրոպագանդման ու մասսայականացման ասպարեզում։ Այդ փաստաթղթերի ըմբռնումն օգնում է յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր աշխատավորի՝ հետևողականորեն ու խոր համոզվածությամբ կենսագործելու կուսակցության քաղաքականությունը, ստացած գիտելիքները գործողության ուղեցույց դարձնելու տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական ծրագրի, կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների իրականացման համար։

Ալյումինի, «Արդկապ» գործարանների, «Հայէլեկտրամեքենա», կոշիկի «Մասիս», Սովետաշենի տրիկոտաժի արտադրական միավորումների և բազմաթիվ այլ ձեռնարկությունների կուսկազմակերպություններ կարողացել են ապահովել տնտեսական-կազմակերպական և գաղափարադաստիարակչական աշխատանքի օրգանական միասնությունը, ղեկավար և ինժեներատեխնիկական անձնակազմի մասնակցությունը կոլեկտիվի անդամների գաղափարաքաղաքական դաստիարակությանը։

Ճշմարտությունը պահանջում է ասելու, սակայն, որ մարքս-լենինյան տեսության ուսուցման գործում դեռևս կան լուրջ թերություններ ու չլուծված հարցեր, մի բան, որ արժանացավ ՀԿԿ Կենտկոմի պլենումի լուրջ քննադատությանը։ Առանձին կուսկազմակերպություններ անտարբեր վերաբերմունք են ցուցաբերում քաղլուսցանցի գործունեության բարելավման նկատմամբ։ Հաճախ քաղդպրոցների, տեսական սեմինարների պարապմունքներում ուսումնասիրվող նյութը մատուցվում է մակերեսային ու պարզունակ ձևով, կուսակցության տնտեսական քաղաքականության պրոբլեմները չեն շաղկապվում աշխատավորական կոլեկտիվների առջև ծառացած սոցիալ-տնտեսական կոնկրետ խնդիրների հետ։ Գործերի վիճակը վատ է հատկապես մետաքսի կոմբինատում (կուսկոմիտեի քարտուղար՝ Ա. Գևորգյան), որտեղ ուսուցումից դուրս է մնացել կոլեկտիվի անդամների շուրջ 33 տոկոսը։

Այսօր բարելավման խիստ կարիք է զգում հատկապես աշխատավորության տնտեսագիտական կրթության գործը։ Վերջերս քաղկոմի բյուրոն քննարկեց «Աշխատավորների տնտեսագիտական կրթության բարելավման ասպարեզում սննդարդյունաբերության մինիստրության Երևան քաղաքի ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների գործունեության մասին» հարցը և նշեց, որ կուսակցական, արհմիութենական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարների կատարած աշխատանքը դեռևս չի համապատասխանում Բաշկիրիայի կուսակցական կազմակերպության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջներին։ Աշխատավորության տնտեսագիտական կրթության նկատմամբ լուրջ մոտեցում չեն ցուցաբերում «Հայծխախոտարդ», գարեջրի և ոչ-ալկոհոլային խմիչքների միավորումների, հացաթխման և հրուշակեղենի միավորման №№ 6 և 7 գործարանների, ձեթօճառ, գինու կոմբինատների կուսակցական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները։ Նրանք անբավարար են օգտագործում տնտեսագիտական կրթության ընձեռած հնարավորությունները դաստիարակչական աշխատանքի բարելավման, կոլեկտիվներում գիտակցական կարգապահության ամրապնդման, սոցիալիստական սեփականության պահպանման գործում բանվոր-ծառայողների ակտիվության բարձրացման համար։ Պարապմունքներն ընթանում են արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման պրոբլեմներից, կոլեկտիվի առջև ծառացած կենսական խնդիրներից կտրված, որի հետևանքով էլ խիստ ցածր է ունկնդիրների տնտեսագիտական գիտելիքների մակարդակը։ Անցկացված գրավոր ստուգարքներին մասնակցած ավելի քան 600 ունկնդիրներից առաջադրված հարցերին բավարար պատասխան են տվել միայն 61-ը կամ մասնակիցների 10 տոկոսը։

ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՎ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ հաջողությունը,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— ամբողջովին պայմանավորված է պրոպագանդիստական կադրերի տեսական և մեթոդական պատրաստականության մակարդակով։ Դրա համար պահանջվում է կուսկոմիտեներից՝ հմտորեն ընտրել ու դաստիարակել պրոպագանդիստներին, նրանց շրջապատել ամենօրյա հոգատարությամբ և ուշադրությամբ։ Մեզ մոտ քիչ չեն այն պրոպագանդիստները, որոնք մարքս-լենինյան տեսությունը, կուսակցության քաղաքականությունը պրոպագանդում են հմտորեն, հիրավի խանդավառությամբ, ստեղծագործաբար կապում ուսուցումը կյանքի հետ, գաղափարադաստիարակչական, արտադրական խնդիրների լուծմանը մոտենում կոմպլեքսային կարգով։ Սակայն մի շարք սկզբնական կուսակցական կազմակերպություններ պատշաճ վերաբերմունք չեն ցուցաբերում գաղափարական կադրերի ընտրությանն ու դաստիարակությանը, հանձնարարված գործի նկատմամբ նրանց պատասխանատվության բարձրացմանը։ Հատկապես անբավարար են օգտագործվում ղեկավար և ինժեներատեխնիկական աշխատողների ուժերը կոլեկտիվի դաստիարակության գործում։

Մի քանի ամիս առաջ քաղաքային կոմիտեի բյուրոն քննարկեց «Կոլեկտիվի անդամների գաղափարաքաղաքական դաստիարակությանը Չերեպովեցի մետալուրգիական գործարանի ղեկավար և ինժեներատեխնիկական աշխատողների մասնակցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարման ասպարեզում «Էլեկտրոն» և «Էլեկտրասարք» արտադրամիավորումների կուսկազմակերպությունների կատարած աշխատանքի վերաբերյալ հարցը և նշեց, որ այդ ձեռնարկություններում արդյունավետ ու նպատակային չեն օգտագործվում ղեկավար և ինժեներատեխնիկական աշխատողների մեծ մասի հնարավորությունները կոլեկտիվի անդամների դաստիարակության գործում։

Պրոպագանդիստական կադրերի ընտրության և դաստիարակության հարցով անբավարար է զբաղվում 26 կոմիսարների անվան շրջանի տրիկոտաժի կոմբինատի կուսկազմակերպությունը (քարտուղար՝ Լ. Կարապետյան)։ Այստեղ աշխատավորության քաղաքական և տնտեսագիտական ուսուցման համար չեն ստեղծված նորմալ պայմաններ։ Պրոպագանդիստների զգալի մասը, օգտվելով կուսկազմակերպության թույլ պահանջկոտությունից, պարապմունքի է ներկայանում անպատրաստ, աշխատում առանց անհատական ստեղծագործական պլանների։ Կոլեկտիվի անդամների դաստիարակության նկատմամբ անպատասխանատվություն է դրսևորել կոմբինատի դիրեկտոր Ա. Խառատյանը. նա հրաժարվել է պրոպագանդիստի պարտականությունը կատարելուց և այն, իր իսկ արտահայտությամբ, «վերահանձնարարել է կուսքարտուղարին», պատճառաբանելով, որ «ինքը խիստ զբաղված է»։

Շատ կարևոր է, որպեսզի կուսակցության շրջկոմները, պրոպագանդիստական կադրերի պատասխանատվության բարձրացման, նրանց հետ տարվող աշխատանքի բարելավման նպատակով, յուրաքանչյուր ուսումնական տարվա արդյունքներով անցկացնեն պրոպագանդիստների հասարակական-քաղաքական պատրաստականության ատեստացիա։ Այս պահանջը թելադրվում է կոնկրետ պրակտիկայով։ Սննդարդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում տնտեսագիտական կրթության համակարգի պրոպագանդիստների հետ անցկացված ստուգարքի ժամանակ 90 պրոպագանդիստներից առաջադրված հարցերին ճիշտ պատասխանել է միայն 10-ը։ Մինչդեռ նրանց ճնշող մասը առաջատար մասնագետներ և արտադրության հրամանատարներ են։ Այդ նշանակում է, որ մարդկանց ղեկավար պաշտոններում առաջ քաշելիս և պրոպագանդիստ առաջադրելիս կուսակցական կոմիտեները հաշվի չեն առնում նրանց քաղաքական ու տնտեսագիտական մակարդակը։

«ՄԱՍՍԱՆԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ հաջողության չափանիշը,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— իհարկե, կոնկրետ գործերն են։ Կոմունիստական գաղափարայնությունը գիտելիքների, համոզմունքների և պրակտիկ գործողության համաձուլվածքն է»։ Գիտելիք—համոզմունք—պրակտիկ գործողություն ընդհանուր շղթայի մեջ որոշիչ դեր ունի գաղափարական համոզվածությունը։ Այդ բարդ ու խոր պրոցեսը մշակվում և ձևավորվում է պրակտիկ աշխատանքում։ Ելնելով դրանից՝ կուսկազմակերպությունները մարդկանց քաղաքական մակարդակի բարձրացումը շաղկապում են դաստիարակության պրոցեսի նկատմամբ կոմպլեքսային մոտեցման հաջորդ գործոնի՝ աշխատանքային դաստիարակության հետ։ Տասնյակ հազարավոր ունկնդիրներ դրսևորում են ո՛չ միայն տեսական խոր գիտելիքներ, այլև հնգամյա պլանի կատարման, աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման բնագավառում կուսակցության առաջադրած խնդիրների լուծման գործում այդ գիտելիքներն ավելի ակտիվորեն կիրառելու ձգտում։ Սոցիալիստական մրցության մեջ քաղաքի աշխատավորության ձեռք բերած հաջողությունները դրա վառ վկայությունն են։ ՀԿԿ Կենտկոմի հունիսյան (1979 թ.) պլենումը շեշտեց այն կարևոր հանգամանքը, որ հանրապետության աշխատանքային շատ կոլեկտիվների կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններ, տնտեսական ղեկավարներ խորապես հասկանում են սոցիալիստական մրցության դաստիարակչական ֆունկցիան, հմտորեն զուգակցում դաստիարակչական և տնտեսական խնդիրների կատարումը։ Ընդ որում, այս առումով արժեքավորվեց նաև Երևան քաղաքի մի շարք կոլեկտիվներում կատարվող արդյունավետ աշխատանքը։

Արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, ակտիվորեն մասնակցելով «Աշխատել առանց ետ մնացող ձեռնարկության» նշանաբանով ծավալված մրցությանը, հասել են շոշափելի հաջողությունների։ Տասներորդ հնգամյակի երեք տարվա արդյունքներով մայրաքաղաքում չկա պլանային առաջադրանքները թերակատարող ձեռնարկություն։ Այսօր գործարար սոցիալիստական մրցության մեջ ընդգրկված է ավելի քան 304 հազար աշխատավոր։ Նրանցից 65 հազարն արժանացել է կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման։ Շուրջ 1.200-ը կատարել է տասներորդ հնգամյակի առաջադրանքը։ Կոլեկտիվներում ծնունդ են առել և լայն տարածում գտել հայրենասիրական այնպիսի շարժումներ, ինչպիսիք են՝ «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք», «Յուրաքանչյուրի աշխատանքի որակից՝ դեպի կոլեկտիվի արդյունավետ աշխատանքը» և այլն։

Քաղկոմի բյուրոն, քննարկելով «Սոցիալիստական մրցության կազմա-

վայրը, ուր իրականացվում է գաղափարախոսական աշխատանքը։ Այն միաժամանակ լայն հնարավորություն է ստեղծում գաղափարախոսական աշխատանքի առաջավոր փորձի ուսումնասիրման և տարածման, աշխատանքի կազմակերպման առավել արդյունավետ ձևերի ու մեթոդների օգտագործման, դաստիարակչական աշխատանքի կոմպլեքսային լուծման գործում բոլոր կոմունիստների և դրանով շահագրգռված բոլոր կազմակերպությունների գործունեությունը կոորդինացնելու համար։

Հաջողությամբ իրականացնել գաղափարադաստիարակչական մեծ ու ծավալուն աշխատանքը, այն իրագործել կոմպլեքսային եղանակով՝ նշանակում է օգնել յուրաքանչյուր կոմունիստի, մեր քաղաքի բոլոր աշխատավորներին՝ տիրապետելու կուսակցական փաստաթղթերի գաղափարական հարստությանը, փաստաթղթեր, որոնք խարսխված են լենինյան անմահ ժառանգության վրա, ընդհանրացնում են մեր կուսակցության քաղաքական վիթխարի փորձը, նոր ավանդ են գիտական կոմունիզմի տեսության մեջ և պրակտիկայում։ Դա նշանակում է օգնել յուրաքանչյուր աշխատավորի՝ ստացած գիտելիքները գործողության ուղեցույց դարձնելու կուսակցության քաղաքականության, տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական ծրագրի, կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների իրականացման ասպարեզում։

Կուսակցության քաղաքային կոմիտեն ջանում է, որպեսզի աշխատավորների գաղափարաքաղաքական դաստիարակության գործը դառնա շրջանային կոմիտեների, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, ձեռնարկությունների ու կոլտնտեսությունների, գիտական հիմնարկությունների և ուսումնական հաստատությունների, մեր կենսագործունեության բոլոր ոլորտների յուրաքանչյուր օղակի գործունեության անքակտելի և բաղկացուցիչ մասը։ Մեր խնդիրն է՝ կոորդինացնել և նպատակասլաց օգտագործել գաղափարաքաղաքական աշխատանքի այն բոլոր միջոցները, որոնցով մեզ զինել է կուսակցությունը, զարգացնել գաղափարադաստիարակչական պրոբլեմների լուծման նկատմամբ կոմպլեքսային մոտեցումը։ Տնտեսական և սոցիալ-քաղաքական ասպարեզներում մեր ձեռք բերած նվաճումները, դաստիարակության բնագավառում կուտակված հարուստ փորձը, գաղափարական կադրերի հասունությունն ու հմտությունը բարենպաստ հնարավորություններ են ստեղծում մայրաքաղաքի կուսկազմակերպության համար՝ ավելի մեծ հաջողությամբ իրականացնելու մեր մարդկանց գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության հույժ կարևոր խնդիրները, արժանի ավանդ ներդնել նոր հասարակարգի կառուցման, լենինյան կենարար գաղափարների հաղթանակի գործում։

---

# ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԿԱՆԸ

**ՅՈՒ. Հ. ՃՇՄԱՐԻՏՅԱՆ**
ՀԿԿ Ստեփանավանի շրջկոմի քարտուղար

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ կուսկազմակերպությունների ուշադրությունը մեկ անգամ ևս սևեռեց այն իրողության վրա, որ կոմերիտմիության ղեկավարման, աճող սերնդի կոմունիստական դաստիարակության գործը կուսակցական աշխատանքի կարևորագույն տեղամասն է։ Այս կապակցությամբ ՀամԼԿԵՄ XVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մենք հաճախ և իրավացիորեն ասում ենք, որ կոմերիտմիությունը մեծ ուժ է։ Միևնույն ժամանակ մենք երբեք, ոչ մի պարագայում իրավունք չունենք մոռանալու, որ կոմերիտմիության ուժը նախ և առաջ կուսակցական ղեկավարման մեջ է, նրա նկատմամբ մեր մշտական ուշադրության, աջակցության և հոգատարության մեջ»։

Կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի պահանջները, ՀԿԿ Ստեփանավանի շրջկոմը և շատ սկզբնական կուսկազմակերպություններ զգալիորեն բարելավել են կոմերիտական կազմակերպություններին ցույց տրվող օգնությունն ու ղեկավարությունը։ Ներկայումս շրջանի 100 կոմերիտական կազմակերպություններում հաշվվում է 5.400 անդամ։ Նրանց զգալի մասն ընդգրկված է նյութական արտադրության ոլորտում, աշխատում է արդյունաբերական ձեռնարկություններում և կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, ակտիվորեն մասնակցում հնգամյակի տնտեսական և սոցիալ-կուլտուրական մեծ ծրագրի իրականացմանը։

Այսպիսով, մենք գործ ունենք երիտասարդության մի ստվար ջոկատի հետ, որին ցույց տրվող օգնությունը կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է։ Եվ պետք է ասել, որ վերջին տարիներին շրջանի կուսկազմակերպությունները մեծ ջանքեր են գործադրում կոմերիտմիության նկատմամբ ղեկավարությունը բարելավելու նպատակով. դրա շնորհիվ կոմերիտական կազմակերպությունների գերակշռող մասի գործունեությունը դարձել է ավելի բովանդակալից ու արդյունավետ, մեծացել է նրանց դերը տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր ասպարեզներում, բարձրացել է երիտասարդության աշխատանքային և հասարակական-քաղաքական ակտիվությունը։ Կուսշրջկոմն ու սկզբնական կազմակերպությունները ձգտում են կատարելագործել կոմերիտական կազմակերպություններին ցույց տրվող օգնության ձևերն ու եղանակները, խթանել երիտասարդության համակած աշխատանքային խանդավառությունը, զարգացնել նրանց ստեղծագործական նախաձեռնությունը։

Կոմերիտական կազմակերպությունների ճիշտ ղեկավարման, նրանց ցույց տրվող արդյունավետ օգնության ուսանելի փորձ են կուտակել Կուրթանի, Ագարակի, Վարդաբլուրի սովխոզների, բարձր հաճախականության էլեկտրասարքավորումների, «Արդկապ» գործարանների, բուժմիավորման, Ստեփանավանի №№ 1, 2, 5, Վարդաբլուրի միջնակարգ դպրոցների և այլ կուսկազմակերպություններ։ Դրանց բյուրոներն ու քարտուղարները մշտապես հետևում են, թե կոմերիտական կազմակերպությունները տվյալ ժամանակաշրջանում ինչպիսի

խնդիրներ ունեն լուծելու, ինչպիսի մասնակցություն են ցույց տալիս հիմնարկության, ձեռնարկության, տնտեսության գործերին։ Նրանք հետաքրքրվում են կոմերիտականների առօրյայով, նրանց հոգսերով ու գործերով, անհրաժեշտության դեպքում աջակցում երիտասարդության նախաձեռնած միջոցառումների իրականացմանը։ Ժողովներում ու բյուրոների նիստերում, որպես կանոն, պարբերաբար քննարկվում են կոմերիտական կազմակերպությունների գործունեությանը, երիտասարդության կոմունիստական դաստիարակությանն առնչվող հարցեր, գործնական որոշումներ են ընդունվում՝ եղած թերությունները վերացնելու, երիտասարդությանը հանրօգուտ աշխատանքում, սոցիալիստական մրցության մեջ ներգրավելու համար։

«Արդկապ» գործարանը միութենական նշանակություն ունի։ Նրա կոլեկտիվը երիտասարդ է, կոմերիտականներն այստեղ մեծ թիվ են կազմում, կոմունիստների ճնշող մեծամասնությունը նախկին կոմերիտականներ են և շարունակում են սերտ կապ պահպանել ԼԿԵՄ կազմակերպության հետ։ Գործարանի կուսբյուրոյի քարտուղար Մ. Տարանուշինը, գլխավոր ինժեներ Ա. Պողոսովան և պատասխանատու շատ աշխատողներ ամեն անգամ պարտադիր կարգով մասնակցում են կոմերիտական ժողովներին, ելույթներ ունենում, իրենց խորհուրդներով ու առաջարկություններով ուղղություն տալիս կազմակերպության աշխատանքին, օգնում ճիշտ որոշումներ ընդունելու, խելացիորեն լուծելու դաստիարակության հարցերը։ Եվ բնական է, որ այստեղ կոմերիտական կազմակերպությունն աչքի է ընկնում իր մարտունակությամբ. կոմերիտական ժողովներն ու կոմիտեի նիստերը տեղի են ունենում ժամանակին, անցնում բարձր մակարդակով, կոմերիտականների ակտիվ մասնակցության պայմաններում։ Դրանցում քննարկվում են երիտասարդության առօրյային վերաբերող, նրանց սրտին ու խոհերին մոտ զանազան հրատապ հարցեր։ Կանոնավոր գործում են կոմերիտական քաղխմբակները։ Կոմերիտականներն ակտիվորեն մասնակցում են ձեռնարկության տնտեսական ու հասարակական կյանքին, զգալի ավանդ մուծում նրա առաջընթացի գործում։

Գործարանի դիրեկցիան և կուսբյուրոն երիտասարդ բանվորների համար ստեղծում են բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթություն ստանալու և արտադրության մեջ առաջադիմելու լավ պայմաններ, նրանց առաջ են քաշում պատասխանատու աշխատանքի։ Գյուղական ավտոմատ կայանների միջև կապ ապահովող սարքավորումների տեղամասում մոնտաժող բանվոր էր Սերժիկ Բաբաջանյանը, երբ հեռակա կարգով ավարտեց պոլիտեխնիկական ինստիտուտը։ Եվ ահա նրան առաջ քաշեցին նույն տեղամասի վարպետի պաշտոնում։ Ինժեներ-կոնստրուկտորի պարտականություն է կատարում նախկին ֆրեզերագործ Ռազմիկ Այգունյանը, որը նույնպես, առանց արտադրությունից կտրվելու, ավարտել է պոլիտեխնիկական ինստիտուտը։

Հանրահայտ ճշմարտություն է, որ միայն կուսակցական ճիշտ և ամենօրյա ղեկավարություն ապահովելու դեպքում կոմերիտական կազմակերպությունը կարող է արդյունավետ կազմակերպել երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործը, նրան ակտիվորեն ներգրավել հանրօգուտ աշխատանքում։ Դրա կոնկրետ վկայությունը կարող ենք տեսնել Կուրթանի պետական տնտեսությունում։ Այստեղ կուսկազմակերպությունը մեծապես կարևորում է երիտասարդության աշխատանքային դաստիարակության գործը, օգնում ԼԿԵՄ կազմակերպությանը՝ կոմերիտականներին և արտամիութենական երիտասարդներին ներգրավելու սոցիալիստական մրցության, հանրային արտադրության վերելքի համար ծավալված պայքարի մեջ։ Անցած տարի կերի կուտակման նախապատրաստման օրերին կոմերիտական կազմակերպության կոմիտեն որոշեց այդ գործին ակտիվորեն մասնակից դարձնել նաև երիտասարդությանը և նպատակահարմար գտավ ստեղծել կեր հայթայթող կոմերիտական-երիտասարդական երկու բրիգադ։ Կուսկազմակերպության բյուրոն հավանություն տվեց այդ նախաձեռնությանը։ Շուտով բրիգադները կոմպլեկտավորվեցին և գործարար մրցություն ծավալվեց նրանց միջև։ Այդ մրցությունը գլխավորում էին կոմերիտական ակտիվիստներն ու երիտասարդ կոմունիստները։ Բրիգադ-



ների ուժերով կուտակվեց 672 տոննա խոտ, 1.540 տոննա սիլոս, 420 տոննա սենաժ։ Կոմերիտականներն ու երիտասարդներն իրենց այդ պայքարը շարունակում են նաև այս տարի։

Կուսակցական կազմակերպության գործնական օգնության և բանիմաց ղեկավարության շնորհիվ տասներորդ հնգամյակի երրորդ՝ հարվածային տարում իրենց աշխատանքային կենսագրությունը նոր, լավ էջերով հարստացրին բարձր հաճախականության էլեկտրասարքավորումների գործարանի կոմերիտականները։ Հավաքման արտադրամասի կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվը, որը կոչվում է Սովետական Միության հերոս, սահմանավանցի զոհված տանկիստ Իվան Բոնդարևի անունով, անցած տարի երեք արտադրատեսակ թողարկեց որակի պետական նշանով և արժանացավ «Կոմունիստական աշխատանքի բրիգադի» կոչման, իսկ կոմունիստ բրիգադավար Ալբերտ Ավագյանը պարգևատրվեց ՀամԼԿԵՄ Կենտկոմի և ՀԱՄԿԽ-ի «Վարպետ-դաստիարակ» կրծքանշանով։ Այժմ կոլեկտիվն աշխատում է «Լավագույնն է նա, ում կողքին ետ մնացող չկա» նշանաբանով։

Կոմերիտական կազմակերպություններում ծնունդ առած ամեն մի հայրենասիրական շարժում ու նախաձեռնություն արժանանում են կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությանը, պաշտպանություն գտնում նրանց կողմից։ Նրանք օգնում են կոմերիտական կազմակերպություններին՝ լայնորեն տարածելու և արմատավորելու նաև բոլոր այն նախաձեռնությունները, որոնք սկսվել են երկրի առաջավոր ձեռնարկություններում ու տնտեսություններում և վայելում են լայն մասսայականություն։ Այս առումով հատկանշական է «Երիտասարդների խանդավառությունն ու ստեղծագործությունը՝ արդյունավետության և որակի հնգամյակին» շարժումը։ Այն մեծապես խթանում է սոցիալիստական մրցությունը, նպաստում պետական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարմանը, հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը։

Շրջանի կոմերիտական կազմակերպություններում լայն արձագանք ստացավ «Մեծ Հոկտեմբերի 60-ամյակից դեպի ՀամԼԿԵՄ 60-ամյակը» նշանաբանով հարվածային հերթափոխի կանգնելու վերաբերյալ երկրի կոմերիտական-երիտասարդական առաջավոր կոլեկտիվների կոչը։ Այդ օրերին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում հարվածային հերթափոխին մասնակցում էին շրջանի 3.500 պատանիներ ու աղջիկներ։ Լենինյան կոմերիտմիության պանծալի հոբելյանի նախօրյակին արտադրության հարյուրավոր երիտասարդ առաջավորներ ու կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներ ստանձնեցին լրացուցիչ պարտավորություններ՝ տասներորդ հնգամյակի երեք տարվա պլանային առաջադրանքները մինչև ՍՍՀՄ սահմանադրության ընդունման առաջին տարեդարձի օրը կատարելու համար։ Մինչև հոկտեմբերի 7-ը և կոմերիտմիության տոնը 600 երիտասարդ աշխատավորներ և 22 կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներ զեկուցեցին 1978 թ. պլաններն ու սոցպարտավորությունները կատարելու և 1979 թ. հաշվին արտադրանք տալու մասին։ Տասներորդ հնգամյակի պլանային առաջադրանքները կատարելու վերաբերյալ կոմերիտմիության 60-ամյակի նախօրեին զեկույց տվեցին գուլպայի և գորգագործական ֆաբրիկաների ինը կոմերիտականներ։

Շրջանի կոմերիտական կազմակերպությունների գործունեության կարևոր բնագավառներից մեկը եղել և մնում է պայքարը գյուղատնտեսության հետագա զարգացման համար։ Կուսակցական կազմակերպությունները ձգտում են ճիշտ օգտագործել երիտասարդության ուժերը, նրանց մասնակից դարձնել գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումի որոշումների կենսագործմանը։ Գյառղյանի սովխոզի կոմերիտական կազմակերպությունը, ստանձնելով վիտամինային խոտալյուրի պատրաստման շեֆությունը, անցյալ տարի պատրաստեց 76 տոննա խոտալյուր և հաղթող ճանաչվեց սոցմրցության մեջ։ Ամեն տարի շրջանի գյուղական կոմերիտական կազմակերպություններն ստեղծում են կերհայթայթման բրիգադներ և ակտիվորեն մասնակցում կերի բազայի ամրապնդման համար ծավալված պայքարին։ Անցած տարի ստեղծված այդպիսի 52 բրիգադներում ընդգրկված

էին 6.100 պատանիներ ու աղջիկներ, որոնք կուտակեցին մեծ քանակությամբ խոտ, սիլոս և սենաժ, կերի ճակնդեղ։ Լավագույն աշխատանքի համար 20 կոմերիտականներ պարգևատրվեցին ՀամԼԿԵՄ Կենտկոմի և ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրերով, իսկ Վարդաբլուրի սովխոզի կոմերիտական-երիտասարդական բրիգադն արժանացավ ՀամԼԿԵՄ Կենտկոմի և ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության դիպլոմի։

Կոմերիտմիության նկատմամբ կուսակցական ղեկավարությունը և նրան ցույց տրվող օգնությունը պետք է մշտական բնույթ կրեն։ Յուրաքանչյուր ԼԿԵՄ կազմակերպություն պետք է վստահ լինի, որ իր ձեռնարկած ամեն մի լավ գործ պաշտպանության ու աջակցության կարժանանա կուսկազմակերպությունների կողմից։ Դրա համար հարկավոր է, որ վերջիններս մշտապես հետաքրքրվեն երիտասարդությանը հուզող հարցերով, նրանց հոգսերով, կոմերիտական կազմակերպությունների առջև ծառացած խնդիրներով, զբաղվեն կոմերիտական կադրերի ընտրությամբ ու դաստիարակությամբ։ Այդ միտումով էլ անցած տարի կուսշրջկոմի պլենումում քննարկեցինք կոմերիտական կազմակերպության կուսակցական ղեկավարման հետագա ամրապնդման հարցը։ Նշելով կատարված դրական աշխատանքը՝ պլենումը բացահայտեց նաև այդ ասպարեզում տեղ գտած թերությունները։ Մասնավորապես նշվեց, որ մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ աչքաթող են արել երիտասարդության կոմունիստական դաստիարակության, հասարակական ակտիվության բարձրացման խնդիրները, ժողովներում ու բյուրոյի նիստերում չեն քննարկում կոմերիտական կազմակերպությունների գործունեությանը վերաբերող հարցեր։ Պլենումը կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց կոմերիտական կազմակերպությունների մարտունակության բարձրացման, երիտասարդության հասարակական-քաղաքական ակտիվության զարգացման վրա։ Պլենումից հետո նկատելիորեն բարելավվեց կոմերիտական աշխատողների որակական կազմը. սկզբնական կոմերիտական կազմակերպությունների 100 քարտուղարներից 48-ը ՍՄԿԿ անդամներ են, 43-ն ունի բարձրագույն կրթություն։

Անցած տարվա հոկտեմբերին շրջկոմի բյուրոյի նիստում քննարկեցինք պլենումի որոշման կատարման ընթացքը շրջկենտրոնի անասնաբուծական-անասնաբուժական սովխոզ-տեխնիկումի կուսկազմակերպությունում։ Քննարկումը ցույց տվեց, որ թեև սովխոզ-տեխնիկումի կուսկոմիտեն որոշ աշխատանք է կատարել պլենումի որոշումը կենսագործելու համար, սակայն այդ գործում թերությունները խիստ նկատելի են։ Արմանիսի և Լ. Բերդի տեղամասային կուսկազմակերպությունները չեն քննարկել պլենումի արդյունքները, չեն զբաղվել կոմերիտական աշխատանքի ղեկավարմամբ։ Դրա հետևանքով տեղամասային ԼԿԵՄ կազմակերպություններն անգործության են մատնվել, մեկ տարի կոմերիտական ժողով չեն գումարել, ցածր է կոմերիտականների և երիտասարդների ակտիվությունը։ Բյուրոն խստորեն քննադատեց սովխոզ-տեխնիկումի կուսկոմիտեին, պարտավորեցրեց նրան՝ արմատապես բարելավել կոմերիտական աշխատանքի ղեկավարումը, ուժեղացնել ԼԿԵՄ կազմակերպություններին ցույց տրվող օգնությունը, երիտասարդության շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքը։ Բյուրոյի որոշումը զգաստացրեց նաև մյուս կուսակցական կազմակերպություններին։

Երբ կուսակցությունը խնդիր է դնում ուժեղացնել կոմերիտմիությանը ցույց տրվող օգնությունն ու ղեկավարությունը, ապա դրանով իսկ պահանջում է, առաջին հերթին, արմատապես բարելավել երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը, ձևավորել կոմունիզմի ակտիվ կառուցողների բանակը։ Այսօր կոմերիտական աշխատանքի արդյունավետության չափանիշը պետք է լինեն երիտասարդության կոմունիստական համոզվածությունը, քաղաքական ակտիվությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական, գիտակցական վերաբերմունքը։ Եվ մենք մեր գործունեության ընթացքում ելնում ենք այդ իրողությունից։ Մենք գործ ունենք ոչ միայն արդեն հասուն, շրջապատի երևույթները ճիշտ ընկալող, քաղաքական իրադարձությունները սթափ գնահատող երիտասարդության, այլև կյանքը տակավին նոր ճանաչող պատանիների ու աղջիկների հետ։ Մենք բնավ չենք մոռանում, որ կուսակցությունը



պահանջում է այս խնդիրները մշտապես պահել տեսադաշտում, դրա համար օգտագործել դաստիարակչական աշխատանքի ողջ զինանոցը։ «Բոլոր կուսկազմակերպությունների մշտական հոգատարության և ուշադրության առարկան պետք է լինի երիտասարդության, աճող սերունդների դաստիարակության ըստ ամենայնի կատարելագործումը։ Բարձրացնել այդ գործում կուսակցության յուրաքանչյուր անդամի դերն ու պատասխանատվությունը»,— ասված է «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշման մեջ։ Այդ որոշումը գործողության մարտական ծրագիր է մեր շրջանի կուսկազմակերպության համար։

Այսօրվա դպրոցականը վաղվա բանվորն է ու կոլտնտեսականը, բարձրագույն ու միջնակարգ-մասնագիտական հաստատության ուսանողը։ Եվ այն, թե ինչպիսին կլինի նրա կենսադիրքորոշումը, մեծ չափով պայմանավորված է երիտասարդության շրջանում այսօր մեր կատարած աշխատանքով։ Շրջանի մի շարք դպրոցներում (Կուրթան, Վարդաբլուր, Ստեփանավանի №№ 1, 5 միջնակարգ և այլն) սևեռուն ուշադրություն են նվիրում սովորող երիտասարդության աշխատանքային դաստիարակության կազմակերպմանը։ Բարձր դասարանցիների աշխատանքային գործունեությունը սերտորեն շաղկապվում է նրանց գաղափարական դաստիարակության խնդիրների լուծմանը, ծառայում դրան։ Անցած տարի աշխատանքի ու հանգստի ճամբարում, արտադրական ու շինարարական բրիգադներում աշխատանքային կոփվածք ստացան ավելի քան 2.000 սովորողներ։ Շրջանի 40 կոմերիտականներ իրենց հիանալի են դրսևորում համամիութենական հարվածային կառույցներում՝ ԲԱՄ-ում, Տյումենի մարզում, ՌՍՖՍՀ ոչ սևահողային գոտում։

Պատանիների ու աղջիկների քաղաքական, գաղափարական աճին, հասարակական ու աշխատանքային ակտիվության բարձրացմանը մեծապես նպաստում են համամիութենական լենինյան ստուգարքները։ Սկզբնական կուսակցական կազմակերպություններն օգնում են կոմերիտական կազմակերպություններին՝ հաջողությամբ անցկացնելու այդ միջոցառումը, կոմերիտականներին ու երիտասարդներին դաստիարակելու առաջնորդի կյանքի օրինակով, ավագ սերնդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթներով։ «Կենսագործենք ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները» նշանաբանով անցկացվող ստուգարքները շրջանի կոմերիտական կազմակերպություններում վերածվել են գաղափարական դաստիարակության ներգործուն ձևի։

Երիտասարդության ինտերնացիոնալ և ռազմահայրենասիրական դաստիարակությունն այսօր կոմերիտական կազմակերպությունների գործունեության անքակտելի մասն է։ Մեր շրջանում այդ խնդիրն ավելի է կարևորվում, քանի որ շատ կոլեկտիվներ, ինչպես շրջկենտրոնում, այնպես էլ գյուղերում, ինտերնացիոնալ կազմ ունեն։ Եվ պիտի գոհունակությամբ նշել, որ իրենց այդ խնդիրը ճիշտ են ընկալում ու հաջողությամբ լուծում գուլպայի ֆաբրիկայի, Ուռուտի, Պուշկինոյի, Կիրովյի կոլտնտեսությունների, շրջկենտրոնի №№ 1, 2, 5 դպրոցների և այլ կոմերիտական կազմակերպություններ։ Նշված կոլեկտիվներում արդեն ավանդույթ են դարձել ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությանը նվիրված երեկոների, զրույց-դեկուցումների, դասախոսությունների անցկացումը, շրջանում ապրող տարբեր ազգությունների ներկայացուցիչների հանդիպումները։ Շատ դպրոցների կոմերիտական ու պիոներական կազմակերպություններ նամակագրական կապեր են պահպանում ՍՍՀՄ տարբեր հանրապետությունների կոմերիտականների ու պիոներների հետ, ուսումնասիրում իրենց բարեկամների ծննդավայրի պատմությունը, ծանոթանում տնտեսական ու սոցիալ-կուլտուրական նվաճումներին, ուսման բնագավառում ձեռք բերած հաջողություններին։ Հանդիսավոր պայմաններում, շրջանի կոմերիտական կազմակերպությունների ակտիվ մասնակցությամբ է անցկացվում «Զինակոչիկի օրը»։ Այդ օրը տեղի են ունենում սպորտի ռազմատեխնիկական ձևերի մրցումներ, հանդիպումներ Հայրենական պատերազմի վետերանների և զինվորական ծառայության գերազանցիկների հետ։

ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, որ կուսակցության նոր համալրման գե-

րակշռող մասը կոմերիտականներն են և «...ՍՄԿԿ մեջ երիտասարդության հարաճուն հոսքը ակնբախորեն ցույց է տալիս, որ կուսակցության կենսական ուժերը անսպառ են, որ մեր երիտասարդ սերունդը խորապես նվիրված է կոմունիզմի իդեալներին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 94)։ Կուսշրջկոմը և սկզբնական շատ կուսկազմակերպություններ, ելնելով համագումարի պահանջներից, վերջին տարիներին լուրջ ուշադրություն են նվիրում կոմերիտականների հաշվին ՍՄԿԿ շարքերի համալրմանը։ Այսպես, ՍՄԿԿ շարքերն ընդունվածների մեջ կոմերիտականները 1971 թ. կազմել են 43, իսկ 1977 և 1978 թվականներին՝ համապատասխանաբար 66,7 և 77,2 տոկոս։

Կուսակցության շարքերի համալրման ժամանակ ճիշտ ընտրության շնորհիվ մենք կարողանում ենք ստեղծել ղեկավար ու միջին օղակի կադրերի հուսալի ռեզերվ, երիտասարդ կոմունիստներին ներգրավել կոմերիտական աշխատանքում, արդյունավետ օգտագործել նրանց եռանդն ու խանդավառությունը։ Ներկայումս կոմերիտական ղեկավար մարմիններում ընտրված են ՍՄԿԿ 247 անդամ-թեկնածուներ։ Նրանք ՀԼԿԵՄ շրջկոմի անդամներ են, սկզբնական կոմերիտական կազմակերպությունների քարտուղարներ, նրանց կոմիտեների անդամներ։

Այո՛, ճիշտ է ասված՝ կոմերիտմիությունը կուսակցության ռեզերվն է, հուսալի օգնականը։ Կադրային քաղաքականություն վարելիս մենք միշտ էլ զգում ենք կոմերիտականների կարիքը, վստահում նրանց, ակտիվիստներին համարձակորեն ներգրավում ղեկավար աշխատանքի, նրանցով ամրապնդում միջին օղակը։ Ագարակի սովխոզում հարկավոր էր լուծել գլխավոր անասնաբույժի հարցը. կային մի քանի թեկնածուներ, որոնցից մեկը ՀամԼԿԵՄ անդամ Սեյրան Փարսադանյանն էր։ Ճիշտ է, որոշ թերահավատություն կար նրա նկատմամբ (պատճառը անհրաժեշտ փորձի պակասն էր), բայց և այնպես որոշեցինք վստահել. բյուրոն նրան երաշխավորեց գլխավոր անասնաբույժի պաշտոնում և չսխալվեց։ Փարսադանյանը բարեխղճորեն է կատարում իր պարտականությունները, արդարացնում իր նկատմամբ ցուցաբերած վստահությունը։ Վերջին տարիներին Ագարակի սովխոզի անասնապահները հասել են նկատելի հաջողությունների, և այդ գործում զգալի ներդրում ունի երիտասարդ անասնաբույժը։

Այսօր շրջանի գյուղատնտեսության և արդյունաբերության բնագավառների հատկապես միջին օղակի կադրերի կազմում կան մեծ թվով կոմերիտականներ։ Քաղաքային և շրջանային սովետների դեպուտատներից 40-ը, գյուղական սովետների դեպուտատների զգալի մասը, ժողովրդական վերահսկողության խմբերի և պոստերի անդամներից 210-ը ՀամԼԿԵՄ անդամներ են։ Եվ պետք է ասել, որ նրանք իրոք մեծ ուժ են մեր կանխագծումների իրականացման համար ծավալած պայքարում։

Սակայն ասածից չի կարելի հետևություն անել, թե շրջանի սկզբնական կուսկազմակերպություններն ամեն ինչ արել են՝ կոմերիտական աշխատանքի արդյունավետությունն ապահովելու, այն բովանդակալից ու հետաքրքրական դարձնելու համար։ Ամենևին ո՛չ։ Կոմերիտական աշխատանքի կուսակցական ղեկավարման գործում դեռևս կան լուրջ, ես կասեի՝ անհանդուրժելի թերություններ։ Երբ մեր արածը գնահատում ենք «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների տեսանկյունից, ապա պարզ է դառնում, որ մենք լուրջ խնդիրներ ունենք լուծելու հատկապես աճող սերնդի դաստիարակության բնագավառում։ Մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ (Պուշկինոյի կոլտնտեսային, Լեցանի և Մաքսիմ Գորկու սովխոզային) դեռևս անհրաժեշտ օգնություն և ղեկավարություն ցույց չեն տալիս կոմերիտական կազմակերպություններին՝ բարձրացնելու լենինյան ստուգարքի դերը երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրների կոմպլեքսային լուծման գործում։ Կույբիշևոյի, Յաղդանի, Կաթնաղբյուրի դպրոցների սկզբնական կուսկազմակերպությունները կոմերիտականներին ակտիվորեն չեն ներգրավում պիոներների, դեռահասների հետ տարվող աշխատանքի մեջ։

Դեռևս ոչ բոլոր կուսկազմակերպություններն են իրենց ամենօրյա ուշա-



դրության կենտրոնում պահում այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսիք են քաղաքական գիտելիքների նկատմամբ սովորող երիտասարդության մեջ հետաքրքրասիրություն պատվաստելը, նրանց հասարակական ակտիվության բարձրացումը։ Սվերդլովի, Ուռուտի, Կաթնաղբյուրի դպրոցների կուսկազմակերպությունները վատ են զբաղվում արտադպրոցական աշխատանքի կազմակերպման, սովորողների տեխնիկական ստեղծագործության, գեղարվեստական ինքնագործունեության, ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման հարցերով։

Մեզ մոտ պրոբլեմ է դարձել երեխաների ամառային հանգստի կազմակերպումը, քանի որ այդ գործի ամբողջ ծանրությունը հիմնականում ընկնում է պիոներչակատավարի վրա։ Հարկ է, որ կուսկազմակերպությունները, ժողովրդական կրթության բաժինների հետ միասին, ամռան ամիսներին պիոներների հանգստյան գործին պարտադիր կարգով մասնակից դարձնեն նաև մանկավարժներին։

Չափազանց կարևոր է ընտանիքի, դպրոցի և հասարակայնության կապի ամրապնդումը։ Խորհրդածության տեղիք է տալիս այն հանգամանքը, որ շատ դեպքերում ընտանիքը ակտիվորեն չի մասնակցում երեխաների դաստիարակությանը՝ այն հիմնականում համարելով դպրոցի գործը։ Ճիշտ է, առանձին կուսկազմակերպություններ կոմունիստների, աշխատավորների ուշադրությունը բևեռել են դպրոցի և ընտանիքի կապի ամրապնդման վրա, կուսբյուրոների նիստերում և կուսակցական ժողովներում լսել հաղորդումներ, անցկացրել անհատական զրույցներ ծնողների հետ, լավագույն ծնողների նկարները փակցրել արտադրամասերում, բայց արածը դեռևս չի բավարարում այսօրվա պահանջները։

Թերությունները վերացնելու համար կուսշրջկոմը ձեռնարկում է գործնական միջոցներ։ Մենք ելնում ենք կուսակցության այն պահանջից, որ երիտասարդ սերնդի քաղաքական գիտակցականության ամրապնդման, գաղափարական համոզվածության մշակման պրոցեսն ստեղծագործական գործ է, որը չի հանդուրժում շաբլոն և ձևականություն։ Շրջանի կոմերիտական կազմակերպությունները, կուսակցական կազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ, ձգտում են մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով տոգորել երիտասարդության լայն զանգվածներին, նպաստել նրա կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը։ Այդ նպատակով կուսկազմակերպություններն ուժեղացնում են կոմերիտական աշխատանքին ցույց տրվող օգնությունը, ապահովում դրա արդյունավետությունը։ Շրջանի կուսկազմակերպության համար գործողության ուղեցույց է «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հետևյալ պահանջը. «Յուրաքանչյուր կոմերիտական կազմակերպության կոնկրետ մարտական գործը պետք է դառնա պատանիների ու աղջիկների քաղաքական, աշխատանքային ու բարոյական կոփման ուժեղացումը, նրանց մեջ գիտելիքների, կուլտուրայի, պրոֆեսիոնալ վարպետության ձգտման դաստիարակումը, ժողովրդական սեփականության նկատմամբ հոգատար վերաբերմունքի դաստիարակումը»։ Կոմերիտական կազմակերպություններն իրենց այս խնդիրները կարող են հաջողությամբ լուծել կուսակցական արդյունավետ ղեկավարման միջոցով։

---

# ԵՐԲ ԿՈՄՈՒՆԻՍՏԸ ՍԽԱԼՎՈՒՄ Է

Ս. Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի կազմբաժնի վարիչ

**ԺՈՂՈՎՆ ՈՒՇ ՎԵՐՋԱՑԱՎ**: Թե՞ իրեն այդպես թվաց: Ուշ վերադարձավ տուն: Տանն անհանգիստ էին: Հետաքրքրվեցին.

— Ի՞նչ եղավ:

Քիչ էր մնում ճչար. «Ախր, դրանից ավելի ի՞նչ պիտի լիներ: Մնում էր, որ հեռացնեին, պրծնեին»: Բայց զսպեց իրեն: Լռեց: Խոսելու տրամադրություն չուներ: Բան էլ չկերավ. ախորժակ չուներ: Պառկեց քնելու: Աչքերը չէին փակվում: Ականջներում շարունակ ժողովի տաք խոսակցություններն էին: Մանավանդ կոլտնտեսության նախագահի ասածը.

— Առաջարկում եմ անել խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում:

Իսկ դրանից առաջ ազատել էին աշխատանքից: «Մի մեղքի համար քանի՞ պատիժ է հասնում մարդուն»:

Մնաց ինքն իր հետ: Մեն-մենակ՝ իր խղճի հետ: «Խիղճը մարդու ամենաարդար դատավորն է»: Նորից ծանրութեթև արեց իր արածը, ընկերների ասածը: Ի՞նչ ասացին նրանք՝ ժողովին մասնակցող կոմունիստները: Ասացին՝ անծանո՞թ մարդ ես դու մեզ համար: Չէ՛: Ծնվել, մեծացել ես մեր աչքի առաջ: Աշխատանքային կենսագրությունդ սկսեցիր կոլտընտեսությունում: Լավ էիր աշխատում. գլուխ պահել չգիտեիր: Գյուղի ջահելները շատ բան են սովորել քեզանից: Դրա համար՝ շատ շնորհակալություն:

Էլ ի՞նչ ասացին: Նաև ասացին, որ քո լավ գործերն աննկատ չեն մնացել: Ճարպկին էիր, առաջ քաշեցին, դարձար ֆերմայի վարիչ: Կուսկազմակերպությունը, կոլտնտեսության վարչությունը քեզ հետ հույսեր էին կապում: Եվ չէին սխալվում: Այստեղ էլ լավ աշխատեցիր: Կարճ ժամանակում ֆերման դարձավ առաջավոր, շրջանում անուն հանեց: 100 մաքուց 105 գառ էր ստացվում, ամեն մի ոչխարից՝ 4—4,5 կգ. բուրդ:

Ո՛չ միայն լավ աշխատող էիր, նաև ակտիվ կոմունիստ էիր:

Բայց...

Ճռռումուռ եկավ տեղի մեջ, անհանգիստ շարժվեց: Ախր, ինչ ասացին այդ «բայցից» հետո, մի տեսակ դատարանում արձակված խիստ վճռի էր նման: Հաջողությունները, ասացին, քեզ մոտ այլ տրամադրություններ առաջացրին: Մեծամտացար: Կարծում էիր, թե քեզանից լավ ֆերմայի վարիչ կոլտնտեսությունը չի ունեցել ու չի էլ ունենա: Դու ես, որ կաս: Քեզ փոխարինող չկա: Հանգստացար ձեռք բերածով: Կորցրիր պատասխանատվության զգացումը, ֆերմայում ընկավ աշխատանքային կարգապահությունը, բարձիթողի արվեցին ոչխարների հաշվառումը, մթերքների ստացման գործը: Եվ, խնդրեմ, կանգնեցիր տխուր փաստի առջև:

Խղճի դեմ բա՞ն ասացին նրանք: Նորից հարցն ուղղեց իրեն: Եվ ինքն էլ պատասխանեց՝ չէ՛: Եթե առաջվա պես մտահոգվեր գործի համար, ապա ֆերմայից ոչխար չէր պակասի, գործ չէին կազմի ու քննչական մարմիններին չէին ուղարկի: Իսկ չուղարկեի՞ն: Հաշվել էին, ու գումարը կազմել էր 322 ռ. 10 կոպեկ: Թաքցնեի՞ն: Չէ՛, չէ՛:

Բայց մտածում էր, այդքան խիստ չպիտի վարվեին իր հետ, մանավանդ որ վնասը փոխհատուցվել էր: Հետո հիշեց, որ ժողովում այդ մասին էլ խոսվեց:

— Լավ է, ասացին, որ վնասը փոխհատուցվել է, կորցրածը ետ է բերվել: Բայց մենք չպետք է մոռանանք կատարվածի բարոյական կողմի մասին: Ինչպես ասում են, գրքի մյուս էջն էլ հարկավոր է կարդալ: Ուրեմն՝ այնպես է ստացվում, որ կարելի է անտարբեր լինել կոլտնտեսության ունեցվածքի հանդեպ, չմտահոգվել, չափսոսալ, վնաս պատճառել, իսկ երբ օրենքը ցույց տա իր ուժը, արդարանալ, թե՝ էլ ի՞նչ եք ուզում ինձանից, վնասը փոխհատուցվել է: Ո՛չ: Ե՛վ վնասը պիտի փոխհատուցվի, և՛ մեղավորը պիտի պատժվի:



Ու նորից ականջներում հնչեցին նախագահի խոսքերը.

— Առաջարկում եմ անել խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում:

Նախագահին առաջարկեց, մյուսները կրկնեցին նրան: Հետո մտածեց, որ, չէ՛, արդար բան չի ասում: Ամեն մարդ իր կարծիքը հայտնեց: Մյուսներն էլ իր և՛ լավն ասացին, և՛ վատը: Վատի մասին նրանք էլ խիստ ասացին:

Այժմ էլ նրան մեկ ուրիշ հարց էր հուզում: Իսկ ինչպե՞ս կվարվեն իր հետ կուսակցության շրջանային կոմիտեում: Ի՞նչ կասեն շրջկոմի բյուրոյում:

Բյուրոն գտավ, որ սկզբնական կուսկազմակերպությունը ճիշտ է որոշել: Բայց միաժամանակ ասվեց, որ նա կորած մարդ չէ, վաստակ ունի տնտեսության մեջ: Հանձնարարվեց կուսկազմակերպության բյուրոյին օգնել նրան՝ շտկելու սխալը, ուղղելու իրեն:

Հաջորդ օրն իսկ նա մտավ կոլտնտեսության վարչության գրասենյակ, դիմեց նախագահին.

— Ինձ մի գործ տվեք, ես առանց աշխատանքի մնալ չեմ կարող, մարդու սիրտ կպայթի:

— Քո մասին մտածում ենք,— պատասխանեց նախագահը:

Ուզեց հարցնել՝ ի՞նչ եմ անելու: Հետո մտածեց՝ իսկ քի՞չ գործ կա տնտեսությունում: Հո ինքը ի ծնե ֆերմայի վարիչ չի՞ եղել: Մինչև ֆերմա գնալը մյուսների պես ինքն էլ հող չէ՞ր մշակում, բերք չէ՞ր անեցնում ու հավաքում: Այո՛, անում էր:

Ու կոմունիստ Մխիթար Ղանդիլյանը սկսեց մասնակցել կերի կուտակման աշխատանքներին:

— Երևում է սիրտդ անասուններից չի կտրըվում,— կես լուրջ, կես կատակ ասացին ընկերները:

Ճիշտ էին նկատել նրանք: Մխիթարն օրնիբուն դաշտում էր, դեզերի մոտ: Երբ առատ կեր կուտակվեց կոլտնտեսությունում, բոլորից շատ թերևս նա ուրախացավ:

Գլուխը կախ իր գործի հետ էր: Բայց զգում էր, որ հիմա ավելի շատ են հետաքրքրվում իրենով: Հանձնարարություն են տալիս, հնարավորություն ընձեռում, որ ժողովներում ելույթ ունենա: Խոսում էր: Երբեմն էլ սուր խոսքեր ասում: Հետո մտածում, որ լավ չարեց: Բայց ուշ էր, խոսքը ետ վերցնել չէր կարող: Նախագահը, կուսբյուրոյի քարտուղարը հաճախ էին հանդիպում, զրուցում:

Ժամանակ անցավ: Կոմունիստները համոզվեցին, որ ուղղվել, դաստիարակվել է իրենց աշխատանքային ընկերը: Նորից քննարկեցին նրա հարցը և որոշեցին վերացնել կուսակցական տույժը:

Կուսշրջկոմի բյուրոյից կոմունիստ Մխիթար Ղանդիլյանը դուրս եկավ թեթևացած: «Արդար կշեռքով նժարվեց իմ արածը: Ճիշտ է, ծանր ապրումներ ունեցա, բայց լուրջ դաս առա»:

Իսկ դա լավ դաս էր նաև մյուսների համար: Ո՛չ միայն կոմունիստները, այլև բոլոր կոլտընտեսականները մեկ անգամ ևս համոզվեցին, որ ոչ ոք իրավունք չունի թերանալու իր պարտականությունների կատարման մեջ, որ միայն իրենցից ամեն մեկի քրտնաջան աշխատանքի, տնտեսության ունեցվածքի նկատմամբ սրտացավ վերաբերմունքի շնորհիվ, ինչպես ասում են, մեկը դառնում է երկուս:

Իսկ Հովունիի կոլտնտեսությունը, իրոք, հարուստ է: Գյուղը փոքր է, հողը՝ քիչ, բայց բերք ու բարիքը շատ է: Այնքան շատ, որ փոքր տընտեսությունը մրցում է մեծերի հետ ու հաղթող դուրս գալիս մրցությունից:

Ո՞րն է գաղտնիքը: Աշխատասիրության, սրտացավության արգասիք են բերքն ու բարիքը, առատությունը: Աշխատասեր, սրտացավ մարդիկ են հովունցիները: Ամենաբարձր ցուցանիշը նրանցն է Ախուրյանի շրջանում: Հեկտարից 50—52 ցենտներ հացահատիկ են ստանում, 600—650 ցենտներ շաքարահումք, 300—350 ցենտներ բանջարեղեն: Նաև շատ կեր են կուտակում անասունների համար: Ամեն մի հեկտարից ոչ պակաս 75—80 ցենտներ ցանովի խոտ են հավաքում, 400—450 ցենտներ՝ եգիպտացորենի կանաչ զանգված: Եվ շատ էլ մթերքներ են արտադրում ու վաճառում պետությանը: Ու նրանց ջանքերը գնահատվում են ըստ արժանվույն. անցած տարի Հովունի գյուղի կոլտնտեսությունը հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցության մեջ և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:

Եվ մարտյան արևոտ մի օր գյուղը տոնական տրամադրության մեջ էր: Ուրախ, ծիծաղկոտ էին գյուղի մեծն ու փոքրը և նրանց հետ՝ Մխիթար Ղանդիլյանը: Հանդիսավոր պայմաններում կոլտնտեսությանը հանձնվեց հաղթողի դրոշը: Նա ևս նստած էր դահլիճում՝ հպարտ ու ժպտերես: Նա էլ բաժին ուներ ձեռք բերած հաջողությունների մեջ, և, բնականաբար, նաև ուրախանալու իրավունք:

Մարտունակ է Հովունիի կուսկազմակերպությունը, առաջավոր ու հարուստ է կոլտնտեսությունը: Այլ կերպ չէր էլ կարող լինել այնտեղ, ուր կոմունիստներն իրենց անձնական ակտիվությամբ մշտապես բարձրացնում են կազմակերպության մարտունակությունը:

Մեր կուսակցությունը համախոհ կոմունիստների կամավոր միություն է, ամուր՝ իր անդամների գաղափարաքաղաքական հայացքների

վորվի այն թյուր կարծիքը, որ եթե ինքը սխալվել ու պատժվել է, ապա այլևս իրենով հետաքրքրվող, իր ձայնը լսող չի կարող լինել: Ընդհակառակը, նա հաստատ համոզված պետք է լինի այն բանում, որ այժմ առավել ուշադիր են իր նկատմամբ, հետաքրքրվում են իրենով, պատրաստակամությամբ օգնում են՝ ուղղելու սխալները:

Ահա ինչու հարկ է հաճախակի սրտամոտ զրույցներ ունենալ տուժարկվածների հետ, ծանոթանալ նրանց աշխատանքային ու կենցաղային պայմաններին, նաև հոգալ նրանց հոգսերի, հուզող հարցերի մասին:

Մեզ մոտ տուժարկված կոմունիստների հետ անհատական զրույցներ են անցկացվում և՛ կուսկազմակերպություններում, և՛ շրջանային կոմիտեում: Զրույցների ընթացքում ջանում ենք, որպեսզի կոմունիստը քննադատաբար գնահատի իր արարքը: Վերջերս շրջկոմում անհատական զրույցներ կազմակերպվեցին տուժարկված կոմունիստների հետ: Դրանք կրում էին պարզ ու շիտակ բնույթ: Նման պայմաններում մարդը լինում է անկեղծ, անկաշկանդ խոսում իրեն հուզող հարցերի շուրջ:

Շրջկոմում տեղի ունեցած այդպիսի զրույցի ժամանակ Կամո գյուղի միջնակարգ դպրոցի դիրեկտոր Սերյոժա Մինասյանը, որը տուժարկվել էր փաստաթղթերի ձևակերպման կարգը խախտելու համար, անկեղծորեն ասաց.

— Հավատացեք ինձ, այլևս այդպիսի բան չի կրկնվի:

Մայիսյանի անվան սովխոզի ֆերմայի վարիչ Վոլոդյա Գրիգորյանը խոստովանեց.

— Թողնում էի ընտանիք, տուն ու տեղ, մեկնում հանրապետությունից դուրս: Սկզբում չէի հասկանում, թե ինչ եմ անում: Սխալն զգացի, երբ կուսկազմակերպությունն ինձ պատժեց: Խիստ նկատողությունը սթափեցրեց ինձ:

Ճիշտ կազմակերպված անհատական աշխատանքի պայմաններում կուսակցական տույժը ծառայում է որպես միջոց կոմունիստի պատասխանատվությունը, նրա ստեղծագործական ակտիվությունը բարձրացնելու համար: Իսկ առանց բարձր պատասխանատվության, առանց խիստ պահանջկոտության, հնարավոր չէ ապահովել բոլոր կոմունիստների միասնական գործունեությունը, կուսկազմակերպությունում ստեղծել գործարարության ու անհանդուրժողականության մթնոլորտ: Իսկ դա յուրաքանչյուր կազմակերպության արդյունավետ գործունեության կարևոր նախապայմաններից է:

Անհատական աշխատանքի ձևերից մեկն այն է, որ տուժարկված բոլոր կոմունիստներին տրվում են կուսակցական հանձնարարություններ: Դրանց կատարման ստուգումն ակտիվացնում է կոմունիստին, ստիպում նրան՝ բարձր պատասխանատվությամբ վերաբերվելու իրեն հանձնարարված գործին:

— Ձեզ հանձնարարվում է զբաղվել թողարկվող արտադրանքի որակով և կանոնավոր ինֆորմացիա հաղորդել մեզ,— «Գյուղշին» № 4 տրեստի կուսբյուրոյում ասացին շինարարական իրերի կոմբինատի ամրանագործ, կոմունիստ Թելման Խաչատրյանին: Կուսբյուրոն նրան մի քանի օր առաջ ազատել էր արտադրամասի վարիչի պարտականություններից և տուժարկել՝ շինանյութերի պակասորդի համար: Իսկ հիմա նա ո՛չ միայն ինքն էր բարձրորակ արտադրանք տալիս, այլև հետևում էր, որ նույնն անեն իր գործընկերները: Անհրաժեշտության դեպքում կոմունիստը գործերի վիճակի մասին տեղյակ էր պահում բյուրոյին, հարցերը քննարկելիս ակտիվ ելույթներ էր ունենում, բացահայտում թերությունները, լավատեղյակ լինելով գործին՝ նշում էր դրանց պատճառներն ու վերացման միջոցները: Կարճ ժամանակում բարելավվեց շինարարության համար թողարկվող երկաթբետոնյա իրերի որակը: Իսկ կոմունիստ շինարարն այդ ճանապարհով վերականգնեց իր բարի անունը: Դրանից հետո միայն վերացվեց նրա կուսակցական տույժը:

Շրջանի կուսկազմակերպությունների համար փորձված, արդյունավետ մեթոդ է նաև այն, որ իրենց ժողովներում ու բյուրոների նիստերում լսում են տուժարկված կոմունիստների հաշվետվություններն ու հաղորդումները՝ կանոնադրական և աշխատանքային պարտականությունների կատարման վերաբերյալ: Նաև դրա շնորհիվ է, որ նրանց մեծ մասն ընդգրկված է արտադրության մեջ և ապահովում է իր ավանգարդային դերը, բարեխղճորեն կատարում կանոնադրական պարտականությունները: Այդ ամենը հաշվի առնելով՝ շրջկոմի բյուրոն վերացնում է նրանց տույժերը:

Մեզ մոտ ստեղծված է տուժարկված կոմունիստների հետ տարվող աշխատանքի գրքույկ: Այն պահվում է կուսկազմակերպությունում, որտեղ կանոնավոր նշումներ են կատարվում կոմունիստին տրված կուսակցական հանձնարարությունների և դրանց կատարման արդյունքների, նրանց հետ ունեցած անհատական զրույցների, ժողովներում հաղորդումներով հանդես գալու, քաղուսուցման պարապմունքներին մասնակցելու, ինչպես նաև արտադրական ցուցանիշների վերաբերյալ:

Երբ կուսկազմակերպությունը որոշում է վերացնել կոմունիստի տույժը, ժողովի քաղվածքի հետ միասին շրջկոմին կից կուսհանձնաժողով է ներկայացնում նաև այդ գրքույկը: Վստահելով հանդերձ՝ կուսհանձնաժողովն ստուգում է գրքույկում կատարված նշումների ռեալությունն ու օբյեկտիվությունը, ապա նոր միայն քննարկում կոմունիստի հարցը:

Ավելորդ թղթաբանությո՞ւն է սա: Ո՛չ: Դա մի միջոց է, որն օգնում է՝ տուժարկված կոմունիստին ո՛չ միայն ընդգրկելու արտադրական ու հասարակական ակտիվ գործունեության մեջ, այլև բարձրացնելու նրա պատասխանատվությունը, պայմաններ ստեղծելու կատարած սխալն ուղղելու, իրեն շտկելու համար:

Իսկ մի՞շտ է մեզ հաջողվում կուսակցական տույժն օգտագործել որպես դաստիարակության միջոց: Ցավոք, ո՛չ:

Եղած դրականի կողքին, կան նաև թերություններ: Դեռևս բավարար չափով չենք զբաղվում այն կոմունիստների հարցով, որոնք ունեն առանց գրանցելու կուսակցական տույժեր: Իսկ մի քանի կուսկազմակերպություններ (Մուսայելյանի, Արևիկի կոլտնտեսային, Քեթիի սովխոզային, № 6 ճանշինվարչության) պարզապես անհատական աշխատանք չեն կազմակերպում կոմունիստների հետ: Եվ դա է պատճառը, որ առանձին կոմունիստներ կոպիտ կերպով խախտում են կանոնադրական պարտականությունները: Ավելին, նրանք նույնը շարունակում են նաև տուժարկվելուց հետո:

Կոմունիստի մոտ անտարբերությունը, անպատասխանատվությունն արմատավորվում են այն ժամանակ, երբ կուսկազմակերպությունը տուժարկելուց հետո անուշադրության, պարզապես մոռացության է մատնում նրան, անհատական աշխատանք չի տանում նրա հետ, չի ընդգրկում ակտիվ գործունեության մեջ: Իսկ կուսակցական տույժը վերացնելիս՝ հանդես է բերում ձևական մոտեցում: Այդպես էր վարվել Գյուղտեխսպասկոմի Ախուրյանի շրջանային միավորման կուսկազմակերպությունը՝ վերացնելով միավորման ավտովարորդ Զավեն Կարապետյանի տարիներ առաջ ստացած կուսակցական տույժը: Իսկ ինչի՞ համար էր նա տուժարկվել: Ո՛չ միայն կնոջը, երեխաներին լքելու, այլև նրանց ապրուստի միջոցներով ապահովելուց հրաժարվելու համար: Նման մարդու նկատմամբ թեթևամիտ վերաբերմունք դրսևորել չէր կարելի: Եվ նա չհապաղեց «ապացուցել», որ կուսկազմակերպությունն իր հարցում պարզապես վրիպել է: Տույժը վերացնելուց հետո շատ չանցած՝ Զ. Կարապետյանը բռնվեց սոցիալիստական ունեցվածքի հափշտակության փորձ կատարելու մեջ: Եվ նույն կուսկազմակերպությունն այս անգամ որոշեց վտարել նրան ՍՄԿԿ շարքերից:

Մեկ այլ օրինակ: Արամայիս Ավետիսյանն աշխատում էր Անիի շրջանում, շինարարության մեջ: Լավ էլ վաստակում էր: Բայց նրան հրապուրում էր հեշտ վաստակը: Եվ, լքելով հարազատ կոլեկտիվը, նա մեկնել էր հանրապետության սահմաններից դուրս: Դրա համար կուսակցական խիստ տույժ էր ստացել: Կուսկազմակերպությունը դրանով իր գործն ավարտված էր համարել: Այլևս ոչ մի աշխատանք չէր տարվել նրա հետ: Տույժը ոչ մի ազդեցություն չէր թողել նրա վրա: Եվ ի՞նչ: Հազիվ էր աշխատանքի տեղափոխվել Ախուրյանի շրջան, երբ նորից բռնեց արտագնացության ճանապարհը: Նա կորցրեց կապը կուսկազմակերպության հետ, երկար ժամանակ չմուծեց կուսանդամավճար: ՀԿԿ շրջկոմի բյուրոյի որոշմամբ, ՍՄԿԿ կանոնադրության 8-րդ կետին համապատասխան, նա վտարվեց կուսշարքերից:

Այս ամենից հետևում է, որ անհրաժեշտ է համակողմանիորեն, խորությամբ ուսումնասիրել ՍՄԿԿ շարքերն ընդունվողների գործնական, քաղաքական ու բարոյական հատկանիշները, այդ վստահությանն արժանացնել միայն լավագույններից լավագույններին:

ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի բյուրոն 1979 թ. մայիսին քննարկեց տուժարկված կոմունիստների հետ տարվող աշխատանքի վիճակը և մշակեց անհրաժեշտ միջոցառումներ՝ եղած թերությունները վերացնելու, անհատական աշխատանքի արդյունավետ ձևեր ու մեթոդներ կիրառելու համար: Շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները հետևողականորեն հոգում են, որպեսզի հնարավորին չափ նվազեն այն դեպքերը, երբ կոմունիստի նկատմամբ կիրառվում է կուսակցական տույժի առավելագույն չափը՝ վտարումը ՍՄԿԿ շարքերից: Նաև աշխատանք է տարվում, որպեսզի կոմունիստը չսխալվի, չխախտի կանոնադրական պահանջները: Իսկ երբ, այնուամենայնիվ, նա սխալվում է ու խորապես զղջում դրա համար, ձեռնարկվում են բոլոր անհրաժեշտ միջոցները, որպեսզի ուղղի իր սխալը, դաստիարակվի ու նորից մնա կուսշարքերում:

## Էկոնոմիկայի հարցեր

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՎՃՌԱԿԱՆ ԳՈՐԾՈՆԸ

**Թ. Դ. ՉԱԼՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու

Մեր էկոնոմիկայի առջև ծառացած սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծման գլխավոր ուղին ժողովրդական տնտեսության ինտենսիվացումն է, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը։ Արտադրության արդյունավետությունն արտահայտում է հասարակության տնտեսական գործունեության զարգացման աստիճանը, չափվում է արդյունքի և ծախսերի համադրությամբ։ Արտադրության արդյունավետության չափանիշը նվազագույն ծախսումներով առավելագույն արդյունքի ստացումն է։ Դրանով է արտահայտվում տնտեսական բոլոր միջոցառումների արդյունավետությունը, այդ է հետապնդում կուսակցության տնտեսական քաղաքականությունը։ Ժողովրդի կենսամակարդակի աճը պահանջում է շրջադարձ արտադրության արդյունավետության բարձրացման ապարեզում։

Արդյունավետության բարձրացման գործոնները բազմազան են, սակայն դրանցից հիմնականն աշխատանքի արտադրողականության աճն է։

ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց՝ «Հատուկ ուշադրություն կենտրոնացնել աշխատանքի արտադրողականության աճի արագացման վրա, որն արտադրության հետագա զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման վճռական պայմանն է» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 248)։

Արտադրության արդյունավետության բարձրացման էությունն այն է, որ աշխատանքային, նյութական և ֆինանսական ծախսումների յուրաքանչյուր միավորի հաշվով ընդլայնվի արտադրության և ազգային եկամտի ծավալը, որը, վերջին հաշվով, նշանակում է հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացում։ Արտադրության արդյունավետությունը և հանրային աշխատանքի արտադրողականությունն էապես չեն տարբերվում միմյանցից, թեև դրանք չի կարելի նույնացնել։ Արտադրության արդյունավետությունն ավելի լայն հասկացություն է, քան հասարակական աշխատանքի արտադրողականությունը։ Մեր կարծիքով, հասարակական աշխատանքի արտադրողականությունն արդյունավետության ամենաընդհանրական, ամենաամփոփ ցուցանիշն է։ Արտադրության արդյունավետությունը որոշվում է ստացված արդյունքի և կատարված բոլոր ծախսերի չափակցմամբ։

Հասարակական աշխատանքի արտադրողականությունը նույնպես չափվում է կենդանի և առարկայացած աշխատանքի ծախսումներով։ «Աշխատանքի արտադրողականության բարձրացումն հենց այն է,— նշել է Ֆ. Էնգելսը,— որ կենդանի աշխատանքի բաժինը նվազում է, իսկ անցյալ աշխատանքինը՝ աճում, բայց աճում է մի այնպիսի հարաբերությամբ, որ ապրանքի մեջ պարունակվող աշխատանքի ողջ գումարը նվազում է, որ ուրեմն կենդանի աշխատանքն ավելի շատ է նվազում, քան անցյալ աշխատանքն ավելանում է» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, մաս 1, էջ 244)։ Այսինքն, աշխատանքի արտադրողականության բարձրացումը նշանակում է ժամանակի միավորի ընթացքում թողարկվող արտադրանքի ավելացում, կամ, որ նույնն է, աշխատաժամանակի խնայողության միավոր արտադրանքի թողարկման ընթացքում։ Հասարակության մասշտաբով դրա աճն արտահայտվում է ինչպես կենդանի, այնպես էլ առարկայացած աշխատանքի խնայողությամբ։



Արտադրության արդյունավետությունը, որպես տնտեսական կատեգորիա, արտացոլում է միավոր արտադրանքի վրա կատարված աշխատանքային ողջ ծախսումները, այսինքն՝ հասարակական աշխատանքի արտադրողականությունը։ Գիտատեխնիկական առաջընթացին համապատասխան՝ արտադրանքի մեջ մարմնավորված ամբողջ աշխատանքում առարկայացած աշխատանքի տեսակարար կշիռը մեծանում է, իսկ կենդանի աշխատանքինը՝ համապատասխանաբար նվազում։ Այդ է վկայում այն փաստը, որ 1932—1977 թթ. արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքում նյութական ծախսերը 57 տոկոսից հասել են 80,4-ի, իսկ աշխատավարձի բաժինը համապատասխանաբար 35,6 տոկոսից իջել է 14,9 տոկոսի։ Այս պրոցեսում վիթխարի չափով բարձրանում են կենդանի աշխատանքի դերն ու նշանակությունը արտադրողականության և արտադրության արդյունավետության աճի գործում։ Կենդանի աշխատանքի կրողն ինքը՝ մարդը, արտադրողն է, որն ապահովում է ինչպես կենդանի, այնպես էլ անցյալ աշխատանքի տնտեսումը։ Հայտնի է, որ ազգային եկամուտն ստեղծվում է կենդանի աշխատանքով, իսկ նյութական ծախսերը նրա համար ծառայում են որպես անհրաժեշտ պայմաններ։

Արտադրության արդյունավետության բարձրացման ռեզերվները թաքնված են աշխատանքի արտադրողականության աճի հնարավորություններում։ Դրանով չեն նսեմացվում կամ թերագնահատվում արտադրամիջոցների խնայողաբար օգտագործումը, անցյալ աշխատանքի ծախսերի կրճատումը, որոնք մարմնավորված են հումքի, նյութերի, վառելիքի և հիմնական ֆոնդերի մեջ։ Արտադրամիջոցների խնայողությունը ո՛չ միայն արտադրանքի ինքնարժեքի իջեցման և շահույթի ավելացման միջոց է, այլև աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր գործոն։ Արտադրամիջոցների տնտեսման շնորհիվ կրճատվում է փոխհատուցման ֆոնդը և համապատասխանաբար աճում ազգային եկամտի ֆիզիկական ծավալը։

Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, «Այժմ եղած հիմնական ֆոնդերից արտադրանքի ստացումը միայն մեկ տոկոսով ավելացնելը հինգ տարում կտա այնպիսի գումարի լրացուցիչ ազգային եկամուտ, որը բավական է բնակելի մակերես կառուցելու երկու-երկուսուկես միլիոն ընտանիքների համար» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 190)։

Այստեղ կարևոր է հաշվի առնել այն հանգամանքը, որ կենդանի աշխատանքի արտադրողականությունը տարեցտարի աճում է ավելի արագ տեմպերով, քան ֆոնդահատույցը՝ հիմնական ֆոնդերի յուրաքանչյուր ռուբլու հաշվով արտադրանքի ավելացումը և նյութական ծախսերի կրճատումը։ Հետևաբար, ժողովրդական տնտեսության մեջ խնայողությունը ձեռք է բերվում կենդանի աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Սոցիալիստական արտադրությունը բնութագրվում է աշխատանքի արտադրողականության անշեղ աճով։ Եթե 1913 թ. ցարական Ռուսաստանը արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության մակարդակով երեքից չորս անգամ ցածր էր Ֆրանսիայից, Գերմանիայից, Անգլիայից և ավելի քան 9 անգամ՝ ԱՄՆ-ից, ապա այժմ մեր երկիրը վիթխարի առաջընթաց է կատարել։ Ներկայումս արտադրանքի առանձյակ տեսակների արտադրությամբ մենք աշխարհում չունենք մրցակից. մեծացել է երկրի տնտեսական պոտենցիալը։

Հասարակական կյանքի առաջընթացը և մարդկանց բազմակողմանի զարգացման ու նրանց աճող պահանջմունքների բավարարման հնարավորությունները, ի վերջո, որոշվում են աշխատանքի արտադրողականությամբ։

Արտադրողականության բարձրացման խնդիրը օրգանապես կապված է ժողովրդատնտեսական այնպիսի կարևոր պրոբլեմների հետ, ինչպիսիք են՝ գիտատեխնիկական առաջընթացը, կապիտալ ներդրումների և հիմնական արտադրաֆոնդերի արդյունավետությունը, ազգային եկամտի օպտիմալ բաշխումը և ժողովրդի բարեկեցության վերելքը։ Հետզհետե մեծանում է աշխատանքի

արտադրողականության դերը սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում, որն ընդգրկում է հասարակության տնտեսական գործունեության բոլոր կողմերը։ Դա ամենից առաջ բացատրվում է նրանով, որ հասարակության զարգացման համար անհրաժեշտ նյութական բարիքների արտադրության աճը հիմնականում ապահովվում է աշխատանքի արտադրողականությամբ։ Այսպես, առաջին հնգամյակում աշխատանքի արտադրողականության հաշվին ստացվել է արդյունաբերական արտադրանքի աճի 51, իսկ իններորդ հնգամյակում՝ 84 տոկոսը և գյուղատնտեսական արտադրանքի ամբողջ աճը։ Դեռ ավելին, երկրի շատ քաղաքներում և արտադրության ճյուղերում արտադրանքի աճն ամբողջապես ստացվել է արտադրողականության բարձրացման հաշվին, առանց աշխատողների թվի ավելացման։ Արտադրողականության բարձրացման շնորհիվ անցած հնգամյակում խնայվեց 20 մլն մարդու աշխատանք։

ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, որ տասներորդ հնգամյակում արդյունավետության կուրսն իր արտահայտությունն է գտնում այն բանում, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը պետք է ապահովի արդյունաբերական արտադրանքի աճի մոտ 90 տոկոսը, գյուղատնտեսության և շինարարության արտադրանքի ամբողջ աճը։ Ընդհանուր առմամբ, դրա հաշվին կստացվի երկրի ազգային եկամտի աճի 85—90 տոկոսը՝ նախորդ հնգամյակի 80 տոկոսի դիմաց։ Ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով աշխատանքի արտադրողականությունը կաճի մոտ 27 տոկոսով, դրա շնորհիվ կտնտեսվի 26 մլն մարդու աշխատանք։ Միայն արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության աճը նախատեսվում է 30,6 տոկոս։

ՍՍՀՄ կենտվիճվարչության տվյալներով, վերջին երեք տարում արդյունաբերական արտադրանքի աճը կազմել է 16 տոկոս, իսկ աշխատանքի արտադրողականությանը՝ 11։ Արտադրողականության բարձրացման հաշվին ստացվել է արտադրանքի աճի 75 տոկոսը։ Այդ ցուցանիշները սահմանվածից ցածր են նաև մեր հանրապետությունում, որի մասին սկզբունքային լուրջ խոսակցություն ծավալվեց ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան (1979 թ) պլենումում։ Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը 1978 թ. հանրապետությունում աճել է 3,2 տոկոսով, արդյունաբերական արտադրանքի աճի 7,7 տոկոսի դիմաց։ Արտադրության ինտենսիվ զարգացումը պահանջում է, որ արտադրողականության աճի տեմպերը գերազանցեն արտադրության աճի տեմպերին։ Մինչդեռ արտադրանքի աճի միայն 43 տոկոսն է ստացվել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Նշանակում է՝ արտադրության աճի հիմնական մասը ստացվում է աշխատողների թվի ավելացման հաշվին, իսկ դա չի համապատասխանում արտադրության ինտենսիվ զարգացման պահանջներին։ Այժմ խնդիրն այնպես է դրվում, որ հատուկ ուշադրություն նվիրվի արտադրության աճի որակական կողմին, այլ ոչ՝ քանակական։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. հիմնական ուղղություններում շեշտված է, որ «...երկրի ինչպես ընթացիկ, այնպես էլ ավելի տևական զարգացման շահերը պահանջում են համակողմանիորեն ինտենսիվացնել արտադրությունը, արագացնել գիտատեխնիկական առաջընթացը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, որոնք արտադրության արդյունավետության և բնակչության կենսամակարդակի բարձրացման վճռական գործոններ են» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 187)։

Առաջիկայում՝ 80-ական թվականներից սկսած, այդ խնդիրների լուծումն առանձնապես հրամայական է դառնում։ Դա ամենից առաջ կապված է աշխատանքային ռեսուրսների պրոբլեմի սրման հետ։ Հարցի էությունն այն է, որ աշխատուժի լրացուցիչ պահանջն աճում է ավելի արագ, քան առկա աշխատունակ բնակչությունը։ Դա պայմանավորված է ծննդաբերության, տնային և անձնական օժանդակ տնտեսություններում զբաղվածների թվի կրճատմամբ, ընդհանուր միջնակարգ պարտադիր կրթության անցնելու շնորհիվ արտադրության մեջ երիտասարդության ներգրավման հնարավորությունների սահմանափակմամբ, ոչ-արտադրական ոլորտում զբաղվածների տեսակարար կշռի մեծացմամբ։ Ուստի և տնտեսական անհրաժեշտություն է, որ արտադրության,



ազգային եկամտի աճն առավել մեծ չափերով, իսկ հետագայում՝ ամբողջապես ձեռք բերվի աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

ՍՄԿԿ XXV համագումարը հարցն այսպես դրեց. «Մենք պետք է հույս դնենք ոչ թե լրացուցիչ աշխատուժի ներգրավման, այլ միմիայն աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 64)։

Հայտնի է, որ արտադրության, ազգային եկամտի աճը կատարվում է ի հաշիվ երկու գործոնի՝ նյութական արտադրության պրոցեսում կիրառվող կենդանի աշխատանքի քանակի, այսինքն՝ աշխատողների թվի ավելացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման։ Այս գործոններից վճռականն աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ Եթե առաջին գործոնի ազդեցությունը սահմանափակված է աշխատունակ բնակչության աճի հնարավորություններով, ապա երկրորդի հնարավորություններն ըստ էության անսահմանափակ են։ Դեմոգրաֆների վկայությամբ առաջիկայում բնակչության, այդ թվում և ժողովրդական տնտեսության մեջ զբաղվածների աճի տեմպերը զգալիորեն կրճատվելու են։ Ինքնին հասկանալի է, որ այդ պայմաններում արտադրության հետագա աճն անհնար կլինի արտադրության ոլորտում զբաղվածների թվի ավելացմամբ։ Այստեղից հետևում է, որ եթե աշխատանքի արտադրողականությունը ներկա պայմաններում արտադրության աճի վճռական գործոնն է, ապա հետագայում այն կլինի միակը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը պայմանավորված է մի շարք գործոններով՝ գիտատեխնիկական առաջընթացով, աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակով, աշխատանքի արդյունքների նկատմամբ նյութական ու բարոյական շահագրգռվածությամբ, արտադրության ու աշխատանքի գիտական կազմակերպմամբ, արտադրության կառավարմամբ ու կատարելագործմամբ, աշխատանքային կարգապահությամբ և այլն։ Արտադրության կոնկրետ պայմաններում աշխատանքի արտադրողականության բոլոր գործոնները գտնվում են սերտ կապի և փոխադարձ ներգործության մեջ։ Բարձր արտադրողականություն կապահովվի միայն այն դեպքում, երբ յուրաքանչյուր ձեռնարկությունում, արտադրամասում լավագույն ձևով կիրառվի դրա աճի գործոնների ամբողջ համակարգը։ Ընդ որում, շատ կարևոր է բացահայտել և հատուկ ուշադրություն նվիրել այն գործոնների վրա, որոնք տվյալ պայմաններում համարվում են առաջատար և որոշիչ։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման գլխավոր պայմանը գիտատեխնիկական առաջընթացն է, որի շնորհիվ ստացվում է արտադրողականության աճի ավելի քան 75 տոկոսը։

Գիտատեխնիկական առաջընթացը պահանջում է «գիտություն-տեխնիկա-արտադրություն» ցիկլի կրճատում և այդ շղթայի օղակներում ընդգրկված մարդկանց այնպիսի գործունեություն, որն ապահովի դրա նվաճումների արագ արմատավորումը։ Այժմ լայն մասշտաբներով իրականացվում են արտադրության մեջ նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման, նոր արտադրատեսակների յուրացման վիթխարի միջոցառումներ։ Այդ են վկայում ընթացիկ հնգամյակի անցած տարիներին հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում ներդրված նոր տեխնիկայի շուրջ 700 կարևորագույն միջոցառումները։ Գործարկվել են 155 մեքենայացված հոսքային և ավտոմատ գծեր, 36 կոմպլեքսային-մեքենայացված և ավտոմատացված աշխատամասեր և արտադրամասեր։ Հանրապետության ձեռնարկությունները յուրացրել են շուրջ 200 նոր արտադրատեսակներ։ Արտադրությունից հանվել են հին կոնստրուկցիայի շատ մեքենաներ, սարքավորումներ, ապարատներ։ Նախատեսված է ընթացիկ տարում ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության, արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացման նպատակով արմատավորել տեխնիկական 727 միջոցառում։ Գիտատեխնիկական առաջընթացի հիմնական խնդիրը աշխատանքի մեքենայացումն ու ավտոմատացումն են հատկապես այն ճյուղերում, որտեղ բարձր է կենդանի աշխատանքի տեսակարար կշիռը։ Ձեռքի աշխատանքը ինչպես Միության, այնպես էլ մեր հանրապետության ժողովրդական տնտեսության

մաշտաբով դեռևս մեծ տեսակարար կշիռ ունի, իսկ դա լրջորեն խոչընդոտում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը: Տասներորդ հնգամյակում նախատեսված է արդյունաբերության մեջ մեքենայական և ավտոմատացված աշխատանքի փոխադրել շուրջ 3 մլն մարդու:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում կարևոր դեր են խաղում արտադրաֆոնդերի, կապիտալ ներդրումների օգտագործման բարելավումն ու արտադրության տեխնոլոգիայի կատարելագործումը: Հիմնական արտադրաֆոնդերը կազմում են գիտատեխնիկական առաջընթացի նյութական հիմքը և ազգային հարստության գլխավոր մասը: Այդ ֆոնդերի արդյունավետ օգտագործումը հնարավորություն է ընձեռում ավելի շատ արտադրանք թողարկելու առանց լրացուցիչ ծախսումների: Գաղտնիք չէ, սակայն, որ երկրի ժողովրդական տնտեսության մեջ հիմնական արտադրաֆոնդերը, որոնց արժեքը անցնում է 1 տրիլիոն ռուբլուց, օգտագործվում են բնավ ոչ լրիվ ձևով, որի հետևանքով զգալիորեն ցածր է ֆոնդահատույցը՝ մեկ ռուբլու հիմնական ֆոնդերի դիմաց ստացված արտադրանքը: 1970—1977 թթ. երկրի արդյունաբերության մեջ ֆոնդազինվածությունն աճել է 62 տոկոսով, հիմնական ֆոնդերը՝ 75, իսկ աշխատանքի արտադրողականությունը 44 տոկոսով (Народное хозяйство СССР в 1977 г., М., 1978, стр. 132—135): Ֆոնդահատույցի բարձրացման ցուցանիշն այն է, որ աշխատանքի արտադրողականության աճը գերազանցի ֆոնդազինվածության աճին: Պակաս կարևոր չեն նոր արտադրակարողությունների օգտագործման արագացումը, հիմնական արտադրաֆոնդերի նորացումն ու դրանց ակտիվ մասի տեսակարար կշռի բարձրացումը:

Աշխատանքի արտադրողականությունը պայմանավորված է նաև կապիտալ ներդրումների ռացիոնալ օգտագործման աստիճանով: Որքան մեծանում է կապիտալ ներդրումների ծավալը, այնքան բարձրանում է դրա արդյունավետ օգտագործման պահանջը: Կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման ուղիները բազմազան են, որոնք կարելի է համառոտ ձևով արտահայտել այնպես, ինչպես պահանջում է ՍՄԿԿ XXV համագումարը՝ կառուցել արագ, խնայողաբար և ժամանակակից տեխնիկական հիմքի վրա՝ ահա կապիտալ շինարարության մեջ բարձր արդյունավետության գումարելիները:

Անհրաժեշտ է շեշտել նաև նոր, բարձր արդյունավետ նյութերի ստեղծման ու դրանց լայն կիրառման, արտադրանքի նյութատարության կրճատման և դրա սպառողական հատկությունների՝ որակի բարելավման դերը աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության բարձրացման գործում: Բարձր որակը ո՛չ միայն աշխատանքային և նյութական ռեսուրսների խնայողություն է, այլև հասարակության աճող պահանջմունքների առավել լրիվ բավարարում: Որակը միաժամանակ քանակ է. ավելի լավ՝ նշանակում է նաև շատ: Քանակը իմաստ ունի միայն այն ժամանակ, երբ այն զուգորդված է լավ որակի հետ: Որակի պրոբլեմն այժմ սուր է դրված ինչպես սպառման առարկաների, այնպես և արտադրամիջոցների նկատմամբ: Անհրաժեշտ է արտադրական բոլոր օղակներում ամեն կերպ բարձրացնել արտադրանքի որակը՝ տեխնիկական մակարդակը, հուսալիությունն ու երկարակեցությունը: Այս ասպարեզում զգալի աշխատանք է կատարվել: Անցյալ տարի բարձրագույն որակի արժանացած արտադրանքի արտադրության ծավալը հանրապետությունում մեծացավ 40 տոկոսով և տարեվերջին պետական որականիշ ունեցող արտադրատեսակների քանակն անցավ 1.800-ից: 1979 թ. պետական որականիշ ունեցող ապրանքների տեսակարար կշիռն արտադրանքի ընդհանուր ծավալում կհասնի 16,6 տոկոսի՝ 1978 թ. 13,3 տոկոսի փոխարեն: Որակի բարձրացման կարևոր նախադրյալ է խոտան արտադրանքի վերացումը: Խոտանը ոչ միայն առարկայացած, այլև կենդանի աշխատանքի լուրջ կորուստ է, ամեն մի ձեռնարկության գործերի անբավարար վիճակի էական ցուցանիշը:

Արտադրողականության բարձրացման կարևոր պայման է աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակի անշեղ աճը: Որքան էլ զարգացած լինեն տեխնիկան, աշխատանքի միջոցները, ինքնին վերցրած, առանց աշխատողի մտավոր ու ֆիզիկական կարողությունների գործադրման, դրանք չեն կարող բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը: Գիտատեխնիկական



առաջընթացի ազդեցությունն աշխատանքի արտադրողականության վրա նույնպես կատարվում է գլխավոր արտադրաուժի՝ մարդկանց միջոցով, և պայմանավորված է նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակով: Աշխատանքի արտադրողականության աճը միայն այն դեպքում կարող է ապահովվել, երբ աշխատողները համապատասխանաբար բարձրացնեն իրենց մակարդակը, տիրապետեն և արդյունավետ օգտագործեն գիտության ու տեխնիկայի նվաճումները: Որքան բարձր է աշխատողների որակավորումը, այնքան ակտիվ է նրանց մասնակցությունն արտադրության կատարելագործմանը, աշխատանքի լավագույն մեթոդների մշակմանը, արտադրամիջոցների և աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործմանը: Արտադրության մեջ աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը ենթադրում է որակյալ աշխատանքի կիրառում, իսկ որակյալ աշխատանքը, որպես կանոն, ժամանակի միավորի ընթացքում ավելի շատ ու որակով նյութական բարիքներ է ստեղծում, քան որակավորում չունեցող աշխատանքը: Այդ մակարդակի բարձրացմամբ կենդանի աշխատանքը ո՛չ միայն ավելի արտադրողական է դառնում՝ կիրառելով արտադրամիջոցների մեծ զանգված, այլև զգալի չափով ազդում է դրանց (կենդանի և առարկայացած աշխատանքի) տնտեսման վրա: Տնտեսագետների հաշվարկները ցույց են տվել, որ աշխատողների հանրակրթական և տեխնիկական մակարդակի բարձրացումն ուղիղ համեմատական է աշխատանքի արտադրողականության աճին: Ակադեմիկոս Ս. Գ. Ստրումիլինի կատարած հաշվարկները վկայում են, որ դեռևս 60-ական թվականների սկզբին ուսուցման վրա ծախսված յուրաքանչյուր մեկ ռուբլին ազգային եկամուտն ավելացնում էր վեց ռուբլով, որ ազգային եկամտի ավելի քան 23 տոկոսն ստացվում էր աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման հաշվին (Экономическая газета, 1962 г., № 14):

Էկոնոմիկայի աճի պահանջներին համապատասխան՝ զարգանում է ժողովրդական կրթությունը, և այսօր մեր երկիրը, նրա աշխատունակ բնակչությունը կրթական մակարդակով և որակավորվածությամբ աշխարհում չունի իրեն հավասարը: Տնտեսության մեջ զբաղվածների մոտ 80 տոկոսն ունի բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն: 1978 թ. տվյալներով, ուսուցման զանազան ձևերում ընդգրկված էր ավելի քան 95 մլն մարդ: Նոր պրոֆեսիայի տիրապետել և իրենց որակավորումը բարձրացրել են ավելի քան 37 մլն մարդ: Մեր հանրապետությունում այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմում են՝ ավելի քան 1.110 հազար և 335 հազար մարդ: Ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում զբաղված բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետների թիվը 1977 թ. կազմում էր 248,3 հազար, այդ թվում՝ 138,7 հազարը բարձրագույն կրթությամբ (Народное хозяйство Армянской ССР в 1977 г., Ереван, стр. 153):

Արտադրողականության բարձրացման կարևոր խթան է աշխատանքի և արտադրության գիտական կազմակերպումը, որը մասնագիտացման և կոոպերացման պայմաններում ապահովում է արտադրակարողությունների գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների առավել լրիվ օգտագործումը: ԱԳԿ-ն արտադրության պրոցեսում մարդկանց աշխատանքի և տեխնիկայի ամենաարդյունավետ միացումն է, որտեղ դրսևորվում են ձեռնարկության սոցիալ-տնտեսական գործունեության այն բոլոր ցուցանիշները, որոնք ապահովում են աշխատանքի արտադրողականության, արտադրության արդյունավետության բարձրացումը և աշխատանքի պայմանների բարելավումը:

Արտադրողականության բարձրացումը զգալի չափով պայմանավորված է նաև ոչ-արտադրական ոլորտի աշխատանքի կազմակերպմամբ: Աշխատանքի տնտեսման օրենքը գործում է ոչ միայն նյութական արտադրության, այլև ժողովրդատնտեսության մյուս ճյուղերում: Ոչ-արտադրական ոլորտի գործունեության բարելավումը նպաստում է ազատ ժամանակի մեծացմանը, հասարակության անդամների մտավոր ու ֆիզիկական ունակությունների զարգացմանը, իսկ այդ ամենը նկատելի ազդեցություն է գործում աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա:

Բացահայտելով արտադրողականության աճի հիմնական գործոնները,

առանձնահատուկ ուշադրություն պետք է հատկացնել արտադրության աշխատողների կարգապահության, պատասխանատվության, իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ անձնական շահագրգռվածության բարձրացման հարցերին։ Մեզ մոտ թեպետև առկա են աշխատանքի արտադրողականության անշեղ աճի օբյեկտիվ պայմանները, սակայն դրանց լիարժեք իրականացմանը խոչընդոտում են մի շարք սուբյեկտիվ գործոններ, մասնավորապես՝ ոչ բավարար աշխատանքային կարգապահությունը, անձնական շահագրգռության սկզբունքի ոչ հետևողական կիրառումը և այլն։ Դրանով պետք է բացատրել այն փաստը, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման հնգամյակի առաջադրանքները չեն կատարում հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների մոտ 20 տոկոսը, շինարարական և գյուղատնտեսական ձեռնարկությունների ավելի քան կեսը։ Մի շարք ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության աճը պլանավորվում է հնգամյակի առաջադրանքներից, իսկ որոշ դեպքերում՝ նաև նախորդ տարում ձեռք բերված մակարդակից էլ ցածր։ Որպես տնտեսական օրինաչափություն, աշխատանքի արտադրողականության աճը պետք է զգալի չափով գերազանցի աշխատավարձի աճին, մինչդեռ մի շարք ձեռնարկություններում հակառակն է կատարվում։

Աշխատանքային կարգապահության խախտումները, աշխատուժի հոսունությունն ու աշխատաժամանակի կորուստները զգալի են և մեծ վնաս են պատճառում ժողովրդատնտեսությանը։ Աշխատուժի հոսունությունը, որպես սոցիալական չարիք, բացասաբար է ազդում աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։

Շատ ձեռնարկություններում դեռևս մեծ են աշխատաժամանակի կորուստները։ Հաշվարկները ցույց են տալիս, որ աշխատաժամանակի կորուստների պատճառով ամեն տարի հանրապետությունը զրկվում է մոտ 50 մլն ռուբլու արդյունաբերական արտադրանքից։ Աշխատաժամանակն անգնահատելի հարստություն է, արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության ինտենսիվ զարգացման խոշոր ռեզերվ և պետք է արդյունավետ օգտագործվի նրա ամեն մի րոպեն։

ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, որ «Երկրի առջև կանգնած տնտեսական և սոցիալական բազմազան խնդիրները հաջողությամբ լուծելու համար այլ ուղի չկա, բացի աշխատանքի արտադրողականության արագ աճից, ամբողջ հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացումից» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 64)։ Ահա թե ինչու հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացմանը պետք է ի սպաս դրվեն տնտեսական ողջ մեխանիզմը, տնտեսագիտական միտքը, նյութական և բարոյական խրախուսման ողջ սիստեմը, արդյունաբերական-արտադրական անձնակազմի կարողություններն ու հնարավորությունները։

Այդ արմատական խնդրի լուծմանը մեծ ուշադրություն նվիրեց նաև ՀԿԿ Կենտկոմի 1979 թ. ապրիլյան պլենումը՝ պահանջելով դրա իրականացմանը նպատակամղել կուսակցական կազմակերպությունների, սովետական ու տնտեսական մարմինների, ինչպես նաև համապատասխան գիտական հաստատությունների ջանքերը։

# ՏԵՂԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵԾ ԽՆԴԻՐՆԵՐԸ

**Վ. Թ. ՍՄԲԱՏՅԱՆ**
ՀՍՍՀ տեղական արդյունաբերության
մինիստրի տեղակալ

ՏԵՂԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ խնդիրներն ամփոփված են արդեն իսկ ճյուղի անվան մեջ. այն կոչված է տեղական հումքի աղբյուրների, աշխատանքային ռեսուրսների, ինչպես նաև արդյունաբերական թափոնների օգտագործմամբ նպաստելու արտադրաուժերի հետագա զարգացմանը, համալրելու միութենական և միութենական-հանրապետական արդյունաբերությունը՝ լայն սպառման ապրանքների, ինչպես նաև արտադրանքի մի շարք այլ տեսակների նկատմամբ բնակչության և արտադրության պահանջմունքները բավարարելու նպատակով։

Կուսակցությունը և կառավարությունը տեղական արդյունաբերության զարգացման տարբեր փուլերում սահմանել են ճյուղի առջև ծառացած կոնկրետ խնդիրներ, որոշել նրա հետագա զարգացման ուղիները։ ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց տասներորդ հնգամյակում տեղական արդյունաբերության արտադրանքն ավելացնել 1,3—1,4 անգամ, իրականացնել ձեռնարկությունների հետագա տեխնիկական վերազինման և մասնագիտացման միջոցառումներ։ Նման մասշտաբների միջոցառումների պլանավորման և իրագործման ասպարեզում կարևոր նշանակություն ունեցան նախորդ հնգամյակներում ձեռք բերած նվաճումները։

Իններորդ հնգամյակում երեք անգամ աճեցին հանրապետության տեղական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների արտադրական ֆոնդերը, զգալիորեն մեծացան դրանց կարողությունները, շահագործման հանձնվեցին ավելի քան 22 ձեռնարկություն, մասնաճյուղ, արտադրամաս։ Կապիտալ շինարարության, գործող ձեռնարկությունների վերակառուցման և ընդարձակման նպատակով ծախսվեց 23 մլն ռուբլի։ Այդ ամենի շնորհիվ մեծ չափով ավելացել են ձեռնարկությունների հիմնական ֆոնդերը, որոնք 1978 թ. կազմեցին 62,5 մլն ռուբլի՝ 11,5 անգամ ավելի, քան 1966 թվականին։ Ինդուստրիալ մեթոդների ներդրման շնորհիվ զգալիորեն մեծանում է կենդանի աշխատանքի արդյունավետությունը։ Եթե մեկ աշխատողի թողարկած արտադրանքը 1970 թ. կազմում էր 7.040 ռուբլի, ապա 1978 թ.՝ 11.641 ռուբլի։ Մեր հաշվարկներով 1980 թ. այդ թիվը կհասնի 12,5 հազարի։ Դա մեզ հնարավորություն կընձեռի հնգամյակում պլանից ավելի արտադրելու ավելի քան 13 մլն ռուբլու լայն սպառման ապրանքներ։

Արտադրական նոր ֆոնդերի և կարողությունների գործարկման հետ միասին մեր ձեռնարկություններում զգալիորեն բարելավվել են աշխատանքային պայմանները, կայունացել է բանվորական կոնտինգենտը։ Արտադրության վերակառուցման, նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման շնորհիվ հանրապետությունում ստեղծվել են տեղական արդյունաբերության նոր ճյուղեր։ Ավելի արդյունավետ են օգտագործվում տեղական հումքն ու արդյունաբերական թափոնները։ Սկզբունքային կարևոր նշանակություն ունեցավ կոնստրուկտորական-տեխնոլոգիական հատուկ բյուրոյի կազմակերպումը, որը հիմք դա-

ռայից «Հայպետտեղարդնախագիծ» ինստիտուտի, իսկ հետագայում՝ գիտաարտադրական միավորման ստեղծման համար: Վերջին տարիներին զգալի աշխատանք է կատարվել արտադրության կենտրոնացման ու մասնագիտացման նպատակով: Մշակվել և մի շարք ձեռնարկություններում ներդրվել են որակի կառավարման կոմպլեքսային համակարգեր, իրականացվում են ձեռնարկությունների կոլեկտիվների սոցիալական զարգացման կոմպլեքսային պլանները:

Տեղական արդյունաբերությունը ներկայումս կարևոր դեր է խաղում էկոնոմիկայում. բավական է նշել, որ նրա տեսակարար կշիռը հանրապետության ենթակա արդյունաբերության մեջ այժմ հասնում է շուրջ 50 տոկոսի: Հայաստանում թողարկվող կուլտուր-կենցաղային և տնային գործածության ապրանքների մոտ 85 տոկոսը արտադրում են տեղական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները, որոնք բնակչության մեկ շնչի հաշվով վաճառքի են հանում 66 ռուբլու ապրանք:

Տասներորդ հնգամյակի անցած երեք տարիները տեղական արդյունաբերության ձեռնարկությունների համար եղան արդյունավետության բարձրացման, տեսականու ընդլայնման, որակի բարելավման տարիներ: Արտադրական նոր հզորությունների գործարկման, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման շնորհիվ ստեղծվել են նոր ճյուղեր, յուրացվել նոր արտադրատեսակներ, որոնց մեծ մասը իրենց որակով և հուսալիությամբ արժանացել են սպառողների հավանությանը: Մինիստրության 9 արտադրամիավորումներում, 17 խոշորացված կոմբինատներում ու գործարաններում 1979 թ. թողարկվելու են լայն սպառման շուրջ 2.000 անուն ապրանքատեսակներ:

Գիտության և տեխնիկայի նվաճումների, առաջավոր տեխնոլոգիայի ներդրման նպատակով վերջին տարիներին ձեռնարկություններում լուրջ միջոցառումներ են իրականացվում: Հնգամյակի երեք տարիներին յուրացված է 145 առաջավոր տեխնոլոգիական պրոցես, այդ թվում՝ մեքենայացված և ավտոմատացված է 125 արտադրապրոցես, իրականացված է 600 կազմակերպական տեխնիկական միջոցառում:

Ուշադրության է արժանի ճաշարանային պարագաների փաթեթավորման տուփերի պատրաստման, այդ պարագաների արծաթապատման պրոցեսի կոմպլեքս մեքենայացումը էջմիածնի կենցաղային մետաղյա իրերի կոմբինատում: Ընդ որում, էջմիածնի կոմբինատը մասնագիտացված է նշված պարագաների, ինչպես նաև ոսկու և արծաթի վերամշակման ու կանացի զարդերի արտադրության ասպարեզում: «Ավանգարդ» արտադրամիավորումում յուրացված է հովանոցների ավտոմատ հարմարանքների արտադրման տեխնոլոգիական պրոցեսը:

Բարձր արտադրողական գծեր, սարքավորումներ են ներդրված «Շուշան», «Հայճենապակի» արտադրամիավորումներում, Երևանի «Մետաշին» գործարանում և այլուր:

Գիտաարտադրական միավորման ինստիտուտի մշակած գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական աշխատանքներից անհրաժեշտ է նշել ձեռնարկություններում աղմուկի նվազեցման, արտադրական պրոցեսների մեքենայացման մակարդակի բարձրացման, էլեկտրոնային փականքների արտադրման, տեղական հումքի ռեսուրսների ու թափոնների ռացիոնալ օգտագործման և դրանցից ավելի շատ լայն սպառման ապրանքներ արտադրելու և մի շարք այլ մշակումները, որոնցից շատերն արդեն ներդրված են արտադրության մեջ:

Դիատոմիտների արտադրության փորձնական գործարանում մեծ աշխատանք է տարվում այդ կարևոր հումքի օգտագործման նպատակով, որի համար 1978 թ. ծախսվել է շուրջ 150 հազար ռուբլի:

Գիտահետազոտական աշխատանքների ծավալման նպատակով յուրաքանչյուր տարի ծախսվում է շուրջ 400 հազար ռուբլի, իսկ մշակումների և յուրացումների համար կենտրոնացված ֆոնդի հաշվին տարեկան ծախսվում է շուրջ 800 հազար ռուբլի, դրանց ներդրումից ստացվում է տարեկան 1,5 մլն ռուբլու դրամական օգուտ:

Ժողովրդական սպառման առարկաներ թողարկող ձեռնարկությունների



տեխնիկական վերազինումը հնարավորություն է ընձեռում տարեկան 20—30 տոկոսով նորացնելու կուլտուր-կենցաղային և տնային գործածության իրերի տեսականին, «Հայհուշանվերներ և գեղարվեստական արհեստագործություն», «Շուշան», «Սուտակ», «Հայբնագույնքարեր», «Հայճենապակի», «Ջովունի», «Ավանգարդ», «Պլաստիկ» արտադրամիավորումներում, էջմիածնի կենցաղային մետաղյա իրերի կոմբինատում, «Մետաշին», «Լույս», Լուսակերտի փականքների գործարաններում, Կիրովականի գեղարվեստական կոմբինատում և մյուս ձեռնարկություններում թողարկվում են բարձր պահանջարկ ունեցող բազմատեսակ իրեր՝ մետաղյա ու ալյումինե տնտեսական ամաններ, մելքիորե թեյնիկներ, պղնձե, արծաթե, ոսկե առարկաներ ու կանացի զարդեր, էլեկտրակենցաղային ու ճաշարանային պարագաներ, փայտյա ու կիսաթանկարժեք քարերից պատրաստված իրեր, ճենապակե, բյուրեղապակե, մանկական հեծանիվներ ու խաղալիքներ, սպորտային իրեր, լուսատեխնիկական սարքեր, արհեստական մորթեղեն ու կորունդներ և այլն:

Վերջին տարիներին լայնորեն ծավալվեց գեղարվեստական արհեստագործության և հուշանվերների արտադրությունը: Ինքնուս վարպետների ջանքերով ստեղծվում են նոր, ինքնատիպ իրեր, գունագեղ զարդեր, ականջօղեր, ապարանջաններ, գոտիներ...

Ժողովրդական արհեստների շատ տեսակների վերածնմանը նպաստում է մինիստրության գեղարվեստակոնստրուկտորական հատուկ բյուրոն, որի արշավախմբերը եղել են հանրապետության բոլոր շրջաններում, կապեր հաստատել ժողովրդական հմուտ վարպետների հետ: Դրա շնորհիվ գորգագործությունն ու գեղարվեստական հյուսքն ասես նոր կյանքով են ապրում Մարտունու, Վարդենիսի, Հրազդանի, Սևանի ու մի շարք այլ շրջաններում, փայտյա փորագրությունը՝ Դիլիջանում, Իջևանի, Գորիսի, Ղափանի շրջաններում, մետաղների գեղարվեստական մշակումը՝ Կամոյի շրջանում, Շիրակում:

Կոնստրուկտորական բյուրոյի արհեստանոցի աշխատողները՝ մետաղի ու փայտի փորագրիչները, մանրանկարիչները, ջուլհակները նոր շունչ են հաղորդում ժողովրդական ստեղծագործությանը՝ համապատասխանեցնելով այսօրվա պահանջներին ու ճաշակին: Այդ գեղեցիկ արվեստին են ծառայում նաև Երևանի և Կիրովականի գեղարվեստական կոմբինատների տասնյակ ստեղծագործողներ, գեղարվեստական-տեխնիկական № 8 ուսումնարանի պատանի սաները: Ուրախալի է նշել, որ մշտապես աճում է ժողովրդական վարպետների ստեղծագործությունների նկատմամբ պահանջարկը, նրանց աշխատանքներն արտահանվում են շատ երկրներ: Հայ վարպետների գործերը մեծ հաջողություն են ունեցել ո՛չ միայն մեր երկրում, այլև Արգենտինայում, Ալժիրում, Հունգարիայում, ԱՄՆ-ում, Նիգերիայում կազմակերպված ցուցահանդեսներում:

Արտադրության արդյունավետության բարձրացման համար ծավալված մրցության հաջող կազմակերպման շնորհիվ մինիստրության տնտեսական գործունեության բարելավման բնագավառում հնգամյակի անցած տարիներին ձեռք բերվեցին նոր հաջողություններ: Ձեռնարկությունների կոլեկտիվները արտադրության ծավալի մեծացման երեք տարվա առաջադրանքը կատարեցին ժամկետից շուտ: Գերակատարված է կապիտալ շինարարության այդ նույն տարիների պլանը, համախառն արտադրանքի ծավալն աճել է 125,4 տոկոսով, ներդրվել և յուրացվել է ավելի քան 860 նոր արտադրատեսակների արտադրությունը: Պլանից ավելի թողարկվել է 8,5 մլն ռուբլու արտադրանք, այդ թվում՝ մեծ քանակությամբ ժողովրդական օգտագործման ապրանքներ, որոնց աճը, նախորդ հնգամյակի երեք տարիների համեմատությամբ, կազմում է 127 տոկոս: Երեք տարվա ընթացքում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 17 տոկոսով՝ ամբողջ հնգամյակի համար նախատեսված 15,2-ի փոխարեն, 0,66 տոկոսով իջել է արտադրանքի ինքնարժեքը, ապահովվել է 4,6 մլն ռուբլու արտապլանային եկամուտ: 1975 թ. համեմատությամբ պետական որականիշով արտադրատեսակների ծավալն ավելացել է 6 անգամ և այժմ որականիշով է թողարկվում 100-ից ավելի արտադրատեսակ: Որակի բարձրացման նպատակով մեր ձեռնարկություններն իրականացնում են մի շարք գործնական միջոցառումներ, որոնք տալիս են որոշակի արդյունք: Այս տեսակետից զգալի

հաջողությունների է հասել էջմիածնի կենցաղային մետաղյա իրերի կոմբինատի կոլեկտիվը, որի թողարկած արտադրատեսակների 90 տոկոսն ունի պետական որականիշ:

Վերջին տարիներին զգալիորեն բարելավվել են մեր շատ միավորումների ու ձեռնարկությունների արտադրական ցուցանիշները, որի համար Երևանի գլխարկների ֆաբրիկայի, «Պլաստիկ», «Շուշան» արտադրամիավորումների կոլեկտիվները պարգևատրվել են ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով, իսկ Կիրովականի գեղարվեստական կոմբինատի կոլեկտիվն այդ բարձր պարգևին արժանացել է տասներորդ հնգամյակի երեք տարիներին անընդմեջ: Այդ կոլեկտիվի անունը գրանցվել է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի պատվո տախտակին: Մի շարք ձեռնարկություններ պարգևատրվել են ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշներով:

Անցել է մի քանի տարի, ինչ մշակվել, մինիստրության կոլեգիայի և արհմիության ճյուղային կոմիտեի կողմից հաստատվել ու գործում են արտադրողականության և որակի բարձրացման խրախուսման ծրագիրը: Հաստատվել են «ՀՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրության որակի գերազանցիկ» կրծքանշանի կանոնադրությունը և այդ պարգևին արժանանալու մրցույթի պայմանները: Խոտանի ճանապարհը փակելու, հումքի կորուստները կանխելու և արտադրանքի որակը բարձրացնելու համար շատ ձեռնարկություններ բանվորներին խրախուսելու նպատակով սահմանել են պարգև-հավելում:

Ձեռնարկությունների տեխնիկական մակարդակի և արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի պայմանների բարելավման, ներքին ռեզերվների հայտաբերման, հումքի, նյութերի և վառելիքի խնայման նպատակով մեծ աշխատանք են կատարում ռացիոնալիզատորներն ու գյուտարարները: Նորարարական առաջարկությունների թիվն անընդհատ աճում է: 1978 թ. տրված 764 առաջարկություններից արտադրության մեջ ներդրվել են 690-ը: Այդ առաջարկությունների ներդրման շնորհիվ պայմանական տնտեսական օգուտները կազմել են 1,2 մլն ռուբլի, որը պլանի համեմատ կազմում է 109,8 տոկոս:

Անվանի ռացիոնալիզատորները շատ են մեզ մոտ: Նրանցից կարելի է հիշատակել «Ավանգարդ» արտադրամիավորման փականագործ-գործիքագործ Մ. Սարգսյանին, «Սուտակ» արտադրամիավորման լաբորատորիայի պետ Ս. Գաբրիելյանին, «Հայընագույնքարեր» արտադրամիավորման Ազիզբեկովի մասնաճյուղից Տ. Հարությունյանին և ուրիշների, որոնցից յուրաքանչյուրը 2—4 առաջարկությունների հեղինակ է:

Մեր ձեռնարկություններում մեծ աշխատանքներ են կատարվում գունավոր մետաղների ռացիոնալ օգտագործման, հումքի և նյութերի ծախսերի նորմավորումը կատարելագործելու նպատակով: Գործող նյութածախսի նորմաների կեսից ավելին 1978 թվականին վերանայվել է, որի շնորհիվ տնտեսվել են 267 հազար ռուբլու հումք և նյութեր: Վերանայվել են շուրջ 1.250 նորմատիվներ և ժամանակավարձի տիպային նորմաներ. դրա տնտեսական օգուտը կազմում է 180 հազար ռուբլի: Խնայված հումքի հաշվին թողարկվել է հարյուր հազարավոր ռուբլու արտադրանք:

Տարիների ընթացքում մեր ձեռնարկություններում աճել են հիանալի բանվորական կադրեր, որոնք գլխավորում են սոցիալիստական մրցությունը, ձեռք բերում արտադրության արդյունավետության բարձր ցուցանիշներ: Տասներորդ հնգամյակում արդյունավետ աշխատանքի և սոցիալիստական մրցության մեջ ունեցած հաջողությունների համար Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով պարգևատրվել են Երևանի «Մետշին» գործարանից՝ Ա. Արզումանյանը, «Շուշան» միավորումից՝ Լ. Ռեսյանը, Լենինականի հեծանիվի գործարանից՝ Ա. Հակոբյանը, «Զովունի» արտադրամիավորումից՝ Գ. Ավետիսյանը և ուրիշներ: Տասնյակ առաջավորներ արժանացել են կառավարական այլ պարգևների, ինչպես նաև «Հնգամյակի հարվածային» կրծքանշանի: Միայն 1978 թ. ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի պատ-



վավոր դիպլոմներով պարգևատրվել են արտադրական 6 բրիգադներ և 20 առաջավոր բանվորներ: Մեր շատ ձեռնարկություններում սոցիալիստական մրցությունը հաջողությամբ օգտագործվում է կոլեկտիվի բարոյաքաղաքական կլիման բարելավելու, աշխատողներին ընկերական փոխօգնության և կոլեկտիվիզմի ոգով դաստիարակելու նպատակով: Այժմ տնտեսական ղեկավարները, կուսակցական, հասարակական կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում սոցիալիստական մրցության ներգործունության բարելավմանը, նրա բովանդակության հարստացմանը: Խնդիր է դրված գաղափարական, ագիտմասսայական աշխատանքի ուժեղացման, գիտատեխնիկական պրոպագանդայի բարելավման միջոցով հասնել բոլոր աշխատողների քաղաքական և տնտեսագիտական մակարդակի ընդհանուր աճի:

Հաճելի է նշել, որ մեր ձեռնարկություններում աշխատող բանվորական կադրերի հիմնական մասը երիտասարդներ են և ճնշող մեծամասնությունն ունի միջնակարգ տեխնիկական կամ ընդհանուր միջնակարգ կրթություն, ինժեներատեխնիկական աշխատողների շուրջ 75 տոկոսը՝ բարձրագույն տեխնիկական կամ տնտեսագիտական կրթություն:

Մեզ հաճախ որոշակի դժվարությունների առջև են կանգնեցնում մատակարարող կազմակերպությունները, որոնք միշտ չէ, որ մեր ձեռնարկություններին ապահովում են անհրաժեշտ սարքավորումներով: Իսկ դա խիստ անհրաժեշտ է՝ ձեռնարկությունների հնացած, բարոյապես մաշված սարքավորումները փոխարինելու համար: Կարևոր է շեշտել, որ ստացված հումքի, նյութերի որակը ոչ միշտ է համապատասխանում ստանդարտին, իսկ դա ազդում է արտադրանքի որակի վրա:

Մեր առջև ծառացած խնդիրներից կարևորագույնը, անշուշտ, արտադրանքի որակի բարձրացումն է: Ճիշտ է, արդեն երկու տարի է, ինչ ձեռնարկություններում 2-րդ կարգի որակ ունեցող ապրանքներ չեն արտադրվում, սակայն այդ ցուցանիշով մենք չենք կարող բավարարվել: Ճյուղի սոցիալ-տնտեսական զարգացման պլանով նախատեսված է 1980 թ. ամբողջ արտադրանքի ծավալի 15 տոկոսը թողարկել պետական որականիշով:

Նախատեսված պլանների կատարման համար մինիստրությունը մշակել է կոմպլեքս միջոցառումներ: Նախ և առաջ դա արտադրության կառավարման հետագա կատարելագործման և մասնագիտացման խորացման հարցն է: Բոլոր ձեռնարկություններում մշակվել են որակի կոմպլեքսային կառավարման համակարգեր և սոցիալական զարգացման հեռանկարային պլաններ:

Հանրապետության պետպլանի մաթեմատիկական հաշվիչ կենտրոնի օգնությամբ մեր մինիստրությանը կից ստեղծվում է հաշվիչ կենտրոն, որը կարևոր դեր կխաղա արտադրության կառավարումը բարելավելու, հաշվապահական-հաշվառման և նյութատեխնիկական մատակարարման գործը կարգավորելու և շատ այլ հարցերում:

Կարևոր խնդիրներ են ծառացած մեր առջև ձեռնարկությունների հետագա մասնագիտացման, տեղական հումքը և թափոնները ավելի լայնորեն ու ռացիոնալ օգտագործելու մարզում: Աշխատանքներ են տարվում արտադրության ընդհանուր ծավալի մեջ անընդհատ ավելացնելու պարզ, հասարակ, բայց բնակչության համար խիստ անհրաժեշտ ապրանքատեսակների՝ «1000 ու մի մանրուքի» արտադրությունը:

Գեղարվեստական արհեստագործության հետագա զարգացման, տնայնատնտեսուհիների, ինչպես նաև ինքնուս վարպետների, պատերազմի հաշմանդամների, աշխատանքի վետերանների, թոշակառուների ուժերն օգտագործելու լայն հնարավորություններ է ընձեռում «Հուշանվերներ և ժողովրդական գեղարվեստական արհեստագործություն» արտադրամիավորմանը կից կազմակերպված «Տնայնագործ» կոմբինատը, որի աշխատանքը ճիշտ կազմակերպելու դեպքում կարելի է առանց կապիտալ ներդրումների տարեկան թողարկել միլիոնավոր ռուբլիների ապրանքատեսակներ:

Այս հնգամյակում ճյուղի ողջ համակարգում պետք է ապահովվի արտադրանքի 140—150, իսկ արտադրողականության՝ 133 տոկոսի աճ: Կթողարկվեն մոտ 1.500 անուն նոր արտադրատեսակներ: Իրականացվելու է ավելի քան 40

մլն ռուբլու կապիտալ շինարարություն՝ գործող օբյեկտների վերակառուցման ու նոր օբյեկտների կառուցման նպատակով: Շահագործման կհանձնվեն «Ավանգարդ» արտադրամիավորման Ջովունի ավանի մետաղե ամանեղենի 7 մլն ռուբլու թողունակությամբ գործարանը և նույն միավորման հովանոցների արտադրամասը: Վերակառուցումից հետո կարողություններն զգալիորեն կավելացնի Կալինինոյի էմալապատ ամանեղենի գործարանը: Լենինականի մանկական հեծանիվների գործարանը, արտադրական նոր մասնաշենքերը գործարկելուց հետո, տարեկան կարտադրի շուրջ 420 հազար տարբեր մակնիշի մանկական հեծանիվներ:

Ընթացիկ տարվա երկրորդ կեսից լրիվ կարողությամբ կաշխատի Արտաշատի ճենապակու գործարանը, որը մեր հանրապետության առաջնեկը կլինի իր տեսակի մեջ: Շահագործման կհանձնվի նաև Արտաշատի բրուտագործական և կերամիկական իրերի գործարանի նոր արտադրական մասնաշենքը: Շինարարական աշխատանքներ են կատարվում նաև այլ ձեռնարկություններում:

Հանրապետության տեղական հումքի աղբյուրներից ժողովրդական սպառման և արտադրության կարիքների համար նոր արտադրատեսակներ թողարկելու նպատակով մինիստրությունը մշակել է ժողովրդական տնտեսության համար շատ կարևոր հանքանյութի՝ դիատոմիտների արտադրության ավելացման, կիսաթանկարժեք քարերի՝ յաշմայի, ագաթի և օնիքսի վերամշակման, Շահնազարի քարի կոնգլոմերատներից ներկերի արտադրության ավելացման, պեռլիտներից կենցաղային ապակու արտադրության կազմակերպման ծրագրի իրականացման միջոցառումներ:

Հասկանալի է, որ այս ամենը կատարելու են տեղական արդյունաբերության ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնց ուսուցման, կուլտուր-կենցաղային պահանջմունքների բավարարման վրա լուրջ ուշադրություն է նվիրվում: Խնդիր է դրված առաջիկայում բոլոր կին աշխատավորներին տեղափոխել թեթև աշխատանքի: Յուրաքանչյուր տարի իրականացվում են կոմպլեքս միջոցառումներ՝ աշխատանքի անվտանգության գործը բարելավելու, սանիտարական ու հիգիենիկ պատշաճ պայմաններ ստեղծելու համար: Այս նպատակներին տարեկան հատկացվում է ավելի քան 700 հազար ռուբլի: Նախատեսվում է իրականացնել բնակարանային շինարարության, մանկական հիմնարկությունների կառուցման լայն ծրագիր:

Մինիստրության ձեռնարկությունները ձգտում են հնգամյակի 4 տարիների պլանը, արտադրության ծավալով, կատարել մինչև 1979 թ. դեկտեմբերի 10-ը, իսկ հնգամյակի պլանը՝ մինչև 1980 թ. նոյեմբերի 29-ը՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 60-ամյակը: Նրանք պարտավորվել են ընթացիկ տարվա դեկտեմբերի 26-ին կատարել համախառն արտադրանքի տարեկան պլանը և մինչև տարեվերջ պլանից ավելի թողարկել 2 մլն ռուբլու ժողովրդական սպառման ապրանքներ:

Նշելով ձեռք բերված հաջողություններն ու հեռանկարները, պետք է ընդունել, որ մինիստրության ձեռնարկությունների աշխատանքում դեռևս կան մի շարք թերություններ ու բացեր: Դեռ ոչ բոլոր ձեռնարկություններն են համաչափ ու պլանավորված աշխատում, որոշ տեղերում անարդյունավետ են օգտագործվում եղած նյութաֆինանսական և աշխատանքային ռեսուրսները:

Պլանային, կատարողական ու տեխնոլոգիական ցածր կարգապահության հետևանքով անբավարար են աշխատում, առաջադրանքներն ընդհատումներով են կատարում, հաճախ վատորակ արտադրանք են թողարկում Կալինինոյի էմալապատ ամանեղենի, Լուսակերտի փականքային իրերի գործարանները և մի շարք մասնաճյուղեր:

Ներկայումս գործնական միջոցներ են ձեռնարկվում առկա թերությունների վերացման, ետ մնացողներին անհրաժեշտ կազմակերպական և տեխնիկական օգնություն ցույց տալու համար:

ՀՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրությունը և նրա ձեռնարկությունները 1979 թ համար ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու նպատակով մոբիլիզացնում են արտադրական կոլեկտիվների և բոլոր աշխատողների ջանքերը, նրանց նպատակամղում եղած ռեզերվների լրիվ օգտագործմանը:

---



# ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ԱԿՈՒՆՔՆԵՐԻ ՄՈՏ

**Ս. Տ. ԵՐԵՄՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ իսկական անդամ

**ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ** և, հատկապես, գաղափարախոսության ոլորտում առաջացած և ողջ հին աշխարհն ընդգրկած ճգնաժամն արագացրեց նոր հարաբերությունների հաստատումը իր դարն ապրած ստրկատիրական հասարակության ընդերքում: Արևելքում՝ Իրանում, այդ ճգնաժամը դրսևորվեց պարթև Արշակունիների քաղաքական ասպարեզից հեռանալով և Սասանյան դինաստիայի պատմության ասպարեզ գալով. նվաճումների և ենթակա երկրները կողոպտելու միջոցով Իրանը կարողացավ զարգացնել իր տնտեսությունը:

Մ. թ. երրորդ հարյուրամյակում վիթխարի ռազմական բախումներ են տեղի ունենում Հռոմի և Սասանյան Իրանի միջև: Այդ ռազմական գործողությունների մեջ են ներքաշվում Իբերիան, Վիրքը, Աղվանքը և, ամենից առաջ՝ Մեծ Հայքը, որն, իր կամքին հակառակ, պետք է մասնակցեր Վերին Միջագետքում, Ասորիքում և Փոքր Ասիայի արևելյան մասերում տեղի ունեցող այդ կործանարար պատերազմներին:

Համընդհանուր ճգնաժամի պայմաններում հին՝ հելլենիստական հասարակության ընդերքում ծագում էին զանազան սինկրետիկ պաշտամունքներ. դրանցից առավել ուժեղ ու ազդեցիկ են դառնում քրիստոնեական համայնքների առաջադրած սիստեմները, որոնց արտահայտությունն էին գնոստիկյան տարբեր ուսմունքները: Արևելքում հատկապես տարածվում են դուալիստական ուսմունքներ, որոնք ձուլվում են մանիքեականության և զրադաշտականության մեջ: Վերջինս դառնում է Սասանյան Իրանի պետական պաշտոնական կրոնը և ռազմաքաղաքական էքսպանսիայի գաղափարական դրոշը:

Օտարերկրյա ագրեսիայի դեմ մղված պայքարի պայմաններում անդրկովկասյան երկրներում զրադաշտականություն-մազդեականությունը դառնում է Սասանյան Իրանի ագրեսիայի սիմվոլ: Հայաստանում և Վրաստանում հելլենիստական կամ հելլենականացված տեղական պաշտամունքներին ավելի մեծ չափով փոխարինում են գնոստիկյան տարբեր ուսմունքներ և ձևավորվող քրիստոնեական եկեղեցու պաշտամունքը: Ե՛վ Հայաստանում, և՛ Վրաստանում քաղաքային մեծ կենտրոններում արդեն գոյություն ունեին քրիստոնեական համայնքներ:

Պատմական այս պայմաններում, IV դարի առաջին կեսում, քրիստոնեությունը հռչակվեց Հայաստանի, Վրաց աշխարհի, ապա Աղվանքի պետական կրոն: Այդ ժամանակվանից առավել ուժգնանում է խզումը Իրանի և Անդրկովկասի երկրների միջև: Անդրկովկասի երկրների ձևավորվող քրիստոնեությունը դառնում է ծնունդ առնող ֆեոդալական վերնախավի գաղափարախոսությունը և միաժամանակ վերածվում գաղափարական զենքի՝ Անդրկովկասում Սասանյան Իրանի զավթողական քաղաքականության դեմ մղված պայքարում: Անդրկովկասի երկրների քրիստոնեական եկեղեցու դիրքերը հատկապես ամրապնդվում են, երբ Հռոմի կայսրությունը քրիստոնեությունը հռչակում է պետական կրոն:

Ֆեոդալականացման պրոցեսի խորացման հետևանքով, երբ Հայաստանում և Վրաստանում առաջատար քաղաքական ուժը դառնում է խոշոր հողատիրական վերնախավը, որն իր ձեռքն է վերցնում պետության կառավարման բարձունքները, կենտրոնական իշխանությունը՝ հանձին թագավորի, ավելի ու ավելի է կորցնում իր սոցիալական հենարանը: Այդ առավել ցայտուն դրսևորվեց Հայաստանում, ուր հայ նախարարները՝ ֆեոդալական ազնվականու-

թյան վերնախավը, Մեծ Հայքի Արշակունի թագավորի իշխանության դեմ ծավալած իր պայքարում օգտվում էր իրանական և հռոմեական զավթիչների դեմ մղած պայքարի հետևանքով կենտրոնական իշխանության համար ստեղծված անելանելի վիճակից: Այդ լավ էին հասկանում պարսից արքայից արքան և Հռոմի կայսրը. նրանք ամեն կերպ հովանավորում էին իրենց կողմն անցնող հայ նախարարներին: Ներքին սոցիալական հակասությունների և Սասանյան Իրանի ու Հռոմեական կայսրության զավթողական քաղաքականության հետևանքով 385 թվականին[1] Մեծ Հայքի միասնական թագավորությունը բաժանվեց երկու իրար դեմ պայքարող տերությունների՝ Սասանյան Իրանի և Հռոմեական կայսրության միջև: Այդպիսով, թանկ գնով հայ նախարարները դարձան իրենց վստահված գավառների ու «աշխարհների» ժառանգական սեփականատերերը, իսկ այդ հողերում գտնվող գյուղական համայնքները՝ ֆեոդալական կախյալ համայնքներ: Այսպես ավարտվեցին ֆեոդալականացման պրոցեսները, որոնք ինքնին լինելով պրոգրեսիվ, օտարերկրյա զավթիչների դեմ մղված պայքարի պայմաններում հանգեցնում էին քաղաքական անկախության կորստի. երկիրը ենթակա էր դառնում օտար գերիշխանության:

Այնուամենայնիվ ծնունդ առնող ֆեոդալական ազնվականության սոցիալական ու դասային իրավունքների ընդունումն ու հանդուրժումը երկրում օտարերկրյա տիրապետության հաստատման առաջին փուլն էր: Ժամանակակիցների կարծիքով Հայաստանում հաստատվում էր հայ նախարարների տիրապետությունը: Եվ իրոք, 385 թ., Մեծ Հայքի թագավորության բաժանումից հետո, «պարսկապատկան» Հայաստանը դարձավ Սասանյան Իրանից վասալական կախման մեջ գտնվող երկիր, պահպանելով իր ներքին ինքնավարությունը՝ խարսխված այդ ժամանակ ստեղծված նախարարական իրավունքի վրա: Ճանաչվեց նախարարների ձեռք բերած ժառանգական իշխանությունը իրենց «տերության» սահմաններում. նախարարները դարձան երկրի փաստական տերերը: Հինգերորդ դարի կեսերին հայ պատմիչ Եղիշեն գրել է. «Երբ Արշակունյաց ցեղը վերացավ... իշխանությունն անցավ Հայոց նախարարներին. որովհետև թեպետև հարկը Պարսից արքունիքն էր գնում, սակայն հեծելազորն ամբողջապես նախարարներն էին առաջնորդում պատերազմի ժամանակ: Այս պատճառով էլ աստվածապաշտությունը բաց ճակատով ու ինքնիշխան փայլում էր Հայոց աշխարհում»[2]: Բայց սկզբնական շրջանում ստեղծված այդ իրադրությունը երկար չտևեց: Այն ժամանակվանից, երբ Հայաստանը, Վիրքը և Աղվանքը հակադրվեցին Իրանին նաև կուլտուր-կրոնական առումով, այդ երկրների նըկատմամբ Իրանի ասիմիլյատորական քաղաքականության իրականացման գործում ծագեց նոր արգելք: Կրոնական և դրա հետ կապված կուլտուրական տարբերությունն էր այդ:

Այնուհետև այդ հանգամանքը դարձավ լուրջ գործոն, որով պայմանավորված էր օտար ագրեսիայի դեմ պայքարող Անդրկովկասյան ժողովուրդների լինել-չլինելու հարցը: Բռնի կրոնափոխության և դրա հետ զուգորդված ֆիզիկական բնաջնջման վտանգին վերջ տրվեց, երբ Վրաստանը և Հայաստանի արևելյան մասը մտան Ռուսաստանի կազմի մեջ:

Սասանյան Իրանից հետո, երբ ասպարեզ իջավ արաբական խալիֆաթությունը, իսկ հետագայում՝ թուրք-սելջուկները, թուրք-օսմանները և պարսիկ ղզլբաշները՝ սեֆյանները, մշտապես ծառացած էր տիրող պետության պետական կրոնները Հայաստանում և Վրաստանում բռնի ներմուծելու հարցը: Զրադաշտականության, իսկ հետագայում մահմեդականության ընդունումը բերում էր իր հետ ապազգայնացում և ասիմիլյացիա:

Այս պայմաններում, հասկանալի է, որ քրիստոնեական եկեղեցու հակադրումը նվաճող այլակրոն պետության կրոնին՝ պայքար էր հանուն ինքնապահպանման, հանուն սեփական ազգային կուլտուրական կերպարանքի պահպանման[3]: Միաժամանակ կրոնակուլտուրա-

1 *Մինչ այժմ բաժանման տարեթիվը հիմնականում ընդունված էր 387 թ.: Այժմ ապացուցված պիտի համարել 385 թ.: Տե՛ս է. Լ. Դանիելյան,* Հայաստանի բաժանման տարեթիվը՝ 387 թե՞ 385:

2 *Եղիշեի* Վարդանանց պատմությունը՝ *թարգմանությամբ և ծանոթագրություններով Ե. Տեր-Մինասյանի, Երևան, 1958, էջ 13:*

3 *Այս դրույթը հստակ արտահայտված է Ալեքսանդր Բարամիձեի հոդվածում. «Անցումը այլ կրոնի,— գրում է նա,— երկրի այլասերման ռեալ վտանգ էր ներկայացնում: Արևելքում սովորաբար իրանական զրադաշտականները, արաբական մուսուլմանները, օսմաններն ու ղզլբաշները իրենց դավանանքն օգտագործում էին իբրև այլ ժողովուրդներին ստրկացնելու հասու զենք: Վրացիներին լավ հայտնի էր թշնամու այս նենգ քաղաքականությունը: Ամեն ոք, ով զոհվում էր հանուն քրիստոնեության, ծառայում էր ազգային հայրենասիրական մեծ գործին: Քրիստոնյա նահատակներն ազգային հերոսի փառք էին վաստակում» (Ալեքսանդր Բարամիձե,* «Древнейший памятник грузинской литературы», «Литературная Грузия» *ամսագիր, 1978, № 1, էջ 61):*



կան ընդհանրությունն ավելի էր մոտեցնում միմյանց հայերին, վրացիներին, աղվաններին, քանի որ նրանք կապված էին օտարերկրյա զավթիչների դեմ պայքարի շահերի միասնությամբ:

Այդ միասնությունն առավել ակնբախ էր ուսումնասիրվող ժամանակաշրջանում, երբ 451 թվականից՝ քաղկեդոնական ժողովից հետո հայոց, վրաց, աղվանից եկեղեցիները մնալով միաբնակ, հակադրվեցին բյուզանդական «տիեզերական» եկեղեցուն: Նույնիսկ այն բանից հետո, երբ վրաց եկեղեցին հարեց քաղկեդոնականության՝ երկաբնակության (608 թվականից), Անդրկովկասի քրիստոնյա ժողովուրդների՝ հայերի, վրացիների և աղվանների այդ պոտենցիալ դաշինքն ընդդեմ նոր նվաճողների, հանձին մուսուլմանական ստրկացնողների, չընդհատվեց:

Կյանքի բոլոր ասպարեզներում վրացիների ու հայերի շահերի միասնությունը հատկապես ցայտուն է դրսևորվում V դարում ստեղծված և մինչև մեր օրերը հասած «Շուշանիկի վկայաբանության» հայկական և վրացական վերսիաներում[4]:

428 թվականին, վերացնելով հայ Արշակունիների դինաստիան, պարսիկներն անցնում են Հայաստանում պարսկական տիրապետության ամրապնդման հաջորդ փուլին: Դրա արտահայտությունն էր հարձակումը հայ նախարարների և եկեղեցու քաղաքական իրավունքների վրա: Հետագայում սասանյանների բոլոր ձեռնարկումները ո՛չ միայն Հայաստանում, այլև Վրաստանում և Աղվանքում ծառայում էին հիմնական նպատակին— տնտեսական ու քաղաքական նախադրյալներ նախապատրաստել հայերի, վրացիների և աղվանների՝ քրիստոնեությունից մազդեզականության անցնելու համար: Երբ հայ նախարարներն ու քրիստոնյա հոգևորականությունը համոզվեցին, որ ոտնահարվում են իրենց դասային իրավունքները, նրանք օգտվեցին ուժից վեր հարկերի բեռան տակ կքած ժողովրդական զանգվածների համընդհանուր դժգոհությունից և տարան իրենց հետևից:

450 թվականին հայ նախարարների գլխավոր ներկայացուցիչները, իսկ վրաց աշխարհից Աշուշա բդեշխը շտապ կանչվեցին Տիզբոն՝ արքայից արքայի արքունիքը: Ժամանողների առջև խիստ կտրուկ դրվեց հարցը. պարսից արքայից արքայի վասալը պարտավոր է դավանել իր սյուզերենի կրոնը: Այդ առաջարկը մերժելու դեպքում նախարարները պիտի զրկվեին ժառանգական իրավունքներից, և պարսից արքունիքը պիտի բռնագրավեր նրանց ողջ սեփականությունը, իսկ նախարարներին արքայից արքան սպառնում էր աքսորել Իրանի հեռավոր վայրերը:

Նախարարներին մնում էր առերես ընդունել կրակապաշտությունը, որպեսզի հնարավորություն ունենան հայրենիք վերադառնալու: Նախարարներին թույլ տրվեց վերադառնալ Հայաստան, բայց Տիզբոնում, արքայից արքայի արքունիքում որպես պատանդ պահվեցին Աշուշա բդեշխը և Հայաստանի մարզպան Վասակ Սյունու երկու որդիները: Նախարարները Հայաստան եկան պարսից մոգերի ուղեկցությամբ, որոնք պետք է քանդեին հայկական եկեղեցիները և փոխարենը ատրուշաններ հիմնեին: Սակայն ժողովուրդն անմիջապես համաժողովրդական ապստամբության դրոշ պարզեց պարսից դեմ. այդ ապստամբությունը պատմիչ Եղիշեն կոչում է «Հայոց պատերազմ»[5]:

Ժողովրդական զանգվածներն իրենք դատաստան տեսան մոգերի հետ՝ ոչնչացնելով նրանց: Այդ համաժողովրդական զինված ապստամբության ազդանշան էր: Ապստամբության առաջնորդն սկզբում մարզպան Վասակ Սյունին էր, բայց շուտով նա անցավ թշնամիների կողմը՝ դավաճանելով հայրենիքին, և ապստամբությունը գլխավորեց Հայաստանի

4 *Յակոբ Ցուրտաւեցի,* Վկայաբանութիւն Շուշանկայ: *Վրացական և հայկական բնագրերը ուսումնասիրությամբ, վարիանտներով, բառարանով և ցանկերով լույս ընծայեց Իլիա Աբուլաձեն: Թբիլիսի, 1938:*

*Ընդարձակ խմբագրություն. վկայաբանութիւն, սրբոյն Շուշանկայ. դստեր սրբոյն Վարդանայ՝ թոռին սրբոյն Սահակայ, որ յիւրմէ առնէն կատարեցաւ զանազան տանջանօք վասն Քրիստոսի հաւատոյն (վերոհիշյալ հրատարակություն, էջ 77—121):*

*Համառոտ խմբագրություն. Վկայաբանութիւն սրբոյ Շուշանկայ, որ ի Վիրս կատարեցաւ յառնէ իւրմէ յԱնթիպատրեայ վրաց առաջնորդէ (վերոհիշյալ հրատարակություն, էջ 122—126):*

*Ընդարձակ խմբագրության ռուսերեն թարգմանությունը տե՛ս* К. Тер-Давтян, Памятники армянской агиографии, *Երևան, 1973, էջ 194—215, ընդարձակ առաջաբանով: Շուշանիկի վկայաբանության հայկական բնագրերի ուսումնասիրությունը տե՛ս Մայիս Ավդալբեգյան,* Հայ գեղարվեստական արձակի սկզբնավորումը *(V դար), Երևան, 1971, էջ 141—158:*

5 С. Т. Еремян, Народно-освободительная война армян против персов в 450—451 гг., «Вестник древней истории», 1951, № 4, стр. 41—60, *կամ* С. Т. Еремян, Армения в III—IX вв., «Очерки истории СССР, III—IX вв», Москва, 1958 г., стр. 193—207.

սպարապետ Վարդան Մամիկոնյանը, որի դուստրը՝ Վարդուհին կամ Վարդանուհին՝ մականվանյալ Շուշանիկ, բդեշխ Վազգենի կինն էր՝ «Շուշանիկի վկայաբանության» կենտրոնական դեմքը:

Ապստամբական շարժումը ջլատում էին Վասակ Սյունու դավաճանական գործողությունները. նա հույս ուներ հայրենիքին դավաճանելու գնով փրկելու իր դիրքը և Տիզբոնում պատանդ թողած որդիների կյանքը: Նախարարներից շատերը հարեցին Վասակ Սյունուն: Այդ ժամանակվանից մարզպանական Հայաստանի վերնախավը բաժանվեց երկու իրար հակադիր մասերի՝ «ուխտապահների», որոնք հետևողական պայքար էին մղում հայրենիքի ազատագրության համար և «ուխտադրուժների», որոնք դավաճանում էին հայրենիքին և իրենց դիրքն ու արտոնությունները պահպանելու համար համագործակցում պարսիկների հետ, սովորաբար կրոնափոխ լինելով: Ապստամբությունն ավարտվեց Ավարայրի ճակատամարտով, որը տեղի ունեցավ 451 թ. մայիսի 26-ին: Ճակատամարտում քաջի մահով ընկավ Վարդան Մամիկոնյանը, թողնելով հայրենիքի անձնազոհ մարտիրոսի հիշատակ:

Երբ սկսվեցին պարսից զորքերի պատժիչ ջոկատների գործողությունները, Վասակ Սյունին կալանավորեց ապստամբության գլխավոր մասնակիցներին՝ ողջ մնացած նախարարներին ու հոգևորականությանը և ուղարկեց Տիզբոն: Միաժամանակ արքայից արքայի արքունիքն ուղարկվեցին հալածական կամ սպանված նախարարների անչափահաս որդիները:

Հազկերտ II-ին հաջորդած նրա որդու՝ Պերոզի թագավորության օրոք (459—484) նախարարներին ներումն է շնորհվում. բայց նրանք պիտի մասնակցեին պարսից արքայից արքայի՝ քուշանների և հեփթաղների դեմ Միջին Ասիայում և Ձորի (կամ Ձողի, Դարբանդից հարավ) շրջանում վարած ռազմական արշավանքներին:

Աշուշա բդեշխը հայրենիք վերադառնալու իրավունք ստացավ միայն 462 թվականին: Արքայից արքայի արքունիքում մնալու ողջ ժամանակամիջոցում նա ջանացել էր օրինապահ լինել և կարողացել էր արժանանալ նրա վստահությանը: Անչափահաս պատանդները՝ հայ նախարարների որդիները, նրա մոտ ազգականներն էին՝ կնոջ և նրա մերձավորների կողմից[6]:

6 Վասակ Արծրունու դուստրերն են Զվիկն ու Անուշվռամը. առաջինը Հմայակ Մամիկոնյանի կինն էր, երկրորդը՝ վրաց բդեշխ Աշուշայի: Վահան Մամիկոնյանը Զվիկի որդին էր, Անուշվռամի քրոջ որդին, իսկ Շուշանիկը՝ բդեշխ Վազգենի կինը, Հմայակ Մամիկոնյանի եղբոր՝ հռչակավոր Վարդան Մամիկոնյանի դուստրն էր:

Աշուշա բդեշխը հսկում, հովանավորում էր նրանց, իսկ երբ թույլտվություն ստացավ վերադառնալու վրաց աշխարհը, մեծ հարստության գնով նա կարողացավ առատորեն կաշառել պարսից արքունիքի ավագանուն, իրեն՝ արքայից արքային և հասնել այն բանին, որ արքան նրա հետ միասին ազատ արձակեց անչափահաս պատանդներին: Աշուշա բդեշխը իր աթոռանիստը՝ Ցուրտավ քաղաքը, վերադարձավ 462 թվականին:

Հայաստանում դեռ չէր դադարել պարտիզանական կռիվը: Նման բախումներից մեկի ժամանակ զոհվեց Հմայակ Մամիկոնյանը՝ Վարդան Մամիկոնյանի եղբայրը, իսկ նրա որդին՝ Վահան Մամիկոնյանը, Աշուշա բդեշխի միջոցով ազատված մյուս պատանդների հետ միասին, բերվեց Ցուրտավ: Այստեղ, վրաց բդեշխի արքունիքում, նրա հոգածու հսկողությունն էին վայելում հալածական կամ սպանված նախարարների՝ Մամիկոնյանների, Կամսարականների, Արծրունիների և այլոց անչափահաս որդիները:

Ահա հենց այստեղ ենք հանդիպում դեռևս դեռահաս շինական Ղազարին՝ Փարպի գյուղից, որին խնամակալում էր Աշուշայի տիկնոջ՝ Անուշվռամի եղբայրը՝ քահանա Աղան Արծրունին: Գյուղացու զավակ Ղազար Փարպեցուն՝ այդ ընդունակ տղային, նա բարձրացրեց հոգևոր բարձր աստիճանի, դրանով իսկ դարձնելով նրան նշանավոր մարդ, քանզի «պարտեգոտաւորք ազատեալ են ի Քրիստոս»[7]: Նա հատկապես մտերիմ էր իր հասակակից Վահան Մամիկոնյանի հետ և հետագայում, դառնալով պատմիչ, առանձին ջերմությամբ է գրել նրա մասին:

Հայաստանի և Վրաստանի՝ այդ ժամանակաշրջանի փոխհարաբերությունների ուսումնասիրության անփոխարինելի աղբյուր է Ղազար Փարպեցու Հայոց պատմությունը, որի միջոցով իրազեկ ենք դառնում այն իրադարձություններին, որոնց չի անդրադառնում Վկայաբանութիւն սրբոյ Շուշանկայ երկը:

Հայկական երկրորդ հիմնական սկզբնաղբյուրը Եղիշեի Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին[8] գիրքն է, ուր պատմվում է առավել վաղ ժամանակների՝ V դարի առաջին կեսի և միջին շրջանի իրադարձությունների մասին: Ղազար Փարպեցու ավագ ժամանակակիցը՝

7 Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան, Տփղիս, 1904, էջ 188:

8 Եղիշեի Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, ի լոյս ածեալ բաղդատութեամբ ձեռագրաց, աշխատութեամբ Ե. Տեր-Մինասյան, Երեվան, 1957:



Եղիշեն, անդրադառնում է հատկապես Ավարայրի ճակատամարտի հերոսներին:

Այժմ կարելի է հաստատված համարել, որ 450—451 թթ. տեղի ունեցած ապստամբական շարժումը հայերի ու աղվանների ապստամբությունն էր և Եղիշեի ու Ղազար Փարպեցու գրածներում ոչ մի վկայություն չկա այդ շարժմանը Քարթլիի (վրաց աշխարհի) մասնակցության վերաբերյալ: Եղիշեն միայն հայտնում է, որ Վարդան Մամիկոնյանն իր զորքերով անցել է Քարթլիի թագավորության սահմանի մոտով և որ Խաղխաղի մոտ ճակատամարտը տեղի է ունեցել Քարթլիից ոչ հեռու[9]:

Բայց, եթե Իրանի դեմ ծավալված այդ առաջին մեծ ապստամբությանը հայերի հետ մեկտեղ մասնակցել են աղվանները, 482—484 թթ. տեղի ունեցած երկրորդ ապստամբության ժամանակ արդեն տեսնում ենք հայերի ու վրացիների սերտ դաշինքը, և այդ այն ժամանակ, երբ տեղի էին ունենում Վկայաբանութիւն սրբոյ Շուշանկայ երկում արտացոլված իրադարձությունները:

450—451 թթ. ապստամբությունը, չնայած ապստամբների պարտությանը, հարկադրեց Իրանին զիջումներ անել, թեկուզ և ժամանակավոր: Հայաստանում պարսիկները վերականգնեցին եկեղեցական արարողությունների ազատությունը, թեթևացրին հարկերը, զինվորական ծառայությունը, ապստամբներին վերադարձրին իրենց ունեցվածքը: Սասանյաններն ստիպված եղան հրաժարվել բռնի ասիմիլյատորական քաղաքականությունից:

462 թ. հայրենիք վերադառնալու իրավունք ստացավ Աշուշա բդեշխը, իսկ 464-ին՝ ներում ստացած նախարարները: Բայց երբ Սասանյան Իրանը վերստին ակտիվացրեց իր գործողությունները Անդրկովկասի երկրներում, աղվանից Վաչե թագավորը 457 թվականին ապստամբեց, սկսեց պարտիզանական պայքար մղել, սակայն 463 թ. պարտություն կրեց և պարտավոր էր հրաժարվել թագավորությունից՝ իր աթոռանիստ Պարտավը թողնելով պարսիկ մարզպանին[10]: Աղվանից թագավորությունը վերածվեց մարզպանության[11]: Անդրկովկասում միայն Քարթլիի թագավորությունում (Վիրքում) էր, որ դեռ կառավարում էր տեղական թագավորական դինաստիան՝ հանձին Վախթանգ Գորգասարի (456—502):

9 Տե՛ս Լ. Ն. Ջանաշիա, Ղազար Փարպեցու տեղեկությունները Վրաստանի մասին, Թբիլիսի, 1962, էջ 127 (վրացերեն):

10 Եղիշե, նշվ. աշխ., էջ 197—199:

11 Հմմտ. К. В. Тревер, **Очерки по истории Кавказской Албании**, М-Л., 1959, стр. 201—215.

Հզորանալով Աղվանքում, պարսիկները վերսկսեցին քրիստոնեական եկեղեցու հալածանքը և բռնությամբ տարածում էին կրակապաշտությունը: Ղազար Փարպեցին հայտնում է, որ տանուտերությունը և ժառանգական այլ պաշտոններ հայ նախարարներն ստանում էին հավատուրացության գնով: Նորից առաջ էին քաշվում հայրենիքի դավաճանները, իսկ հայրենյաց ուխտին հավատարիմ անձանց ճնշում էին, հալածում կամ ոչնչացնում: Ինչպես գրում է Փարպեցին, Հայաստանի բարի անունն ապականվում էր[12]:

Իր հովանավորի, պատանեկության ընկերոջ՝ Վահան Մամիկոնյանի մասին Ղազար Փարպեցին նույնիսկ ստիպված է հաղորդել, որ իր ժառանգական արտոնությունները նա ստացել է քրիստոնեությունից հրաժարվելու գնով: Այդ բարոյական մեծ հարված էր Վահանի համար. երկար ժամանակ նա հարկադրված էր կրել մազդեզականի դիմակը: Պարսկական իշխանությունների արարքները բուռն դժգոհություններ էին հարուցում մարզպանական Հայաստանում, Վիրքում և Աղվանքում: Կրկին սկսվում է Սասանյան Իրանի քաղաքականությունից դժգոհ ուժերի համախմբումը. դրանում վճռական դեր էր խաղում քրիստոնեական եկեղեցին: Ինչպես տեղեկացնում է Ղազար Փարպեցին, Հայաստանում դժգոհ նախարարները համախմբվում էին Գյուտ կաթողիկոսի շուրջը (461—478): Նրանք օգնություն էին սպասում Բյուզանդիայից և այդ նպատակով մի քանի անգամ նամակով դիմել են Լևոն կայսերը (457—474): Կայսրը, չնայած կարեկցում էր նրանց, բայց ռեալ օգնություն ցույց չէր տալիս[13]:

Շիկանում էին հատկապես պարսկասերների և նրանց հակառակորդների՝ հայրենասերների փոխհարաբերությունները: Պարսկասերներն արքային էին հասցնում հայրենասեր նախարարների դժգոհ տրամադրությունները, որի հետևանքով Գյուտ[14] կաթողիկոսը կանչվեց արքայից արքայի մոտ և պաշտոնանկ արվեց:

Ինչպես երևում է, հայ նախարարների ամենահեղինակավոր ներկայացուցիչն անգամ՝

12 Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան, աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեան և Ստ. Մալխասեան, Թիֆլիս, 1904, դրուագ Գ:

13 Ղազար Փարպեցի, էջ 112—113:

14 Գյուտը V դ. հայ գիտության նշանավոր դեմքերից մեկն էր տիեզերագիտության բնագավառում և հատկապես նա երկրի գնդաձևության գաղափարի կողմնակից էր (տե՛ս Է. Լ. Դանիելյան, V դ. Տիեզերագիտական մի պատառիկ, «Լրաբեր», 1975, № 12, էջ 100—102):

Վարդան Մամիկոնյանի եղբորորդի (Հմայակ Մամիկոնյանի որդին) Վահան Մամիկոնյանը, որը մեծացել էր Աշուշա բդեշխի արքունիքում, չի կարողացել խուսափել կրոնափոխությունից։ Վահանը հաստատվեց Մամիկոնյան տոհմի տանուտեր և Հայաստանի սպարապետ. հայրենիք վերադառնալու հնարավորություն ունենալու համար նա հարկադրված եղավ հրաժարվել քրիստոնեությունից և արքայից արքային ուղարկել իր հայրենական կալվածքում՝ Տայքում արդյունահանվող և արքայական ռեգալիա համարվող «թագի ոսկին»[15]։

Համանման իրադրություն էր և Քարթլիում։ Բայց այստեղ, ֆեոդալական վերնախավը, պայքարելով վրաց թագավորի դեմ, օգնություն էր սպասում հենց պարսիկներից։ Աշուշա բդեշխը հավանաբար մեռնում է մոտ 467 թվականին, և նրա պաշտոնը ժառանգում է որդին՝ Վազգենը, Շուշանիկի ամուսինը[16]։ 467 թվականին նա գնում է Տիզբոն՝ Պերոզի արքունիքը, Վրաց բդեշխի պաշտոնում հաստատվելու համար, և նա նույնպես պետք է հրաժարվեր քրիստոնեությունից։

Վկայաբանութիւն սրբոյ Շուշանկայ տեքստում ցույց է տրված, որ Վազգենն ընդունել է մազդեզականությունը և ամուսնացել արքայից արքայի զոքանչի հետ։

Ըստ այդ վարքի, Վազգենը ձգտում էր մազդեական դարձնել իր կնոջն ու երեխաներին։ Բայց հանդիպում է կնոջ վճռական դիմադրությանը։ Վեց տարի շարունակ (468—474 թթ.) նա տանջահար է անում կնոջը, բայց վերջինս մնում է անհողդողդ և մեռնում մարտիրոսի մահով։ Ընտանեկան այս դրամային էլ նվիրված է Շուշանիկի վկայաբանությունը, որը գրված է հայ-վրացական եկեղեցու պառակտումից առաջ[17]։

Օգտվելով պարսից արքունիքի հովանավորությունից՝ Վազգենը ոչինչ հաշվի չէր առնում, արհամարհում էր նույնիսկ վրացական թագավորին։ Վազգենը գլխավորում էր վրացական ֆեոդալական վերնախավի այն մասը, որը պաշտպանում էր Սասանյան Իրանի շահերը և հանդես էր գալիս ընդդեմ Քարթլիի թագավորության անկախության պաշտպանների, թագավորություն, որի գլուխ կանգնած էր Վախթանգ Գորգասարը[18]։

Շուշանիկի մահը պարսկասերների կամայականության, Վիրքի թագավորական իշխանությունն արհամարհելու ակնբախ փաստերից մեկն էր։ Հայ և վրաց ժողովուրդների բոլոր խավերի մեջ տիրող համընդհանուր դժգոհության պայմաններում սոսկ առիթ էր պետք նոր ապստամբության համար։ Դեպքերն արագացվեցին այն ծանր պարտություններով, որ կրեց արքայից արքա Պերոզը Միջին Ասիայում հեփթաղների դեմ մղած պատերազմում, 481 թվականին[19]։ Առաջին անգամ նա մի կերպ փրկվեց նրանցից մեծ ռազմատուգանք վճարելով, իսկ երկրորդ անգամ գերի ընկավ և սպանվեց։

Վախթանգ Գորգասար թագավորը, որ հազիվ էր դիմանում Սասանյան Իրանի դրածոների կողմից իրականացվող օտարերկրյա վերահսկողությանը, ստեղծված իրադրության մեջ իրեն ազատ զգաց և ամենից առաջ դատաստան տեսավ բդեշխ Վազգենի հետ, սպանելով նրան։ Այդ սպանությունը համընդհանուր ապստամբության ազդանշան հանդիսացավ Վրաց աշխարհում։ Լուրը կայծակի արագությամբ հասավ Հայաստան, որտեղ բռնկվեց նոր խոշոր ապստամբություն, որի գլուխ կանգնեց Վահան Մամիկոնյանը։ Չէ՛ որ Վահանի հայրը՝ Հմայակ Մամիկոնյանը, նույնպես զոհվել էր պարսիկների դեմ մղված մարտի ժամանակ, և այնքան էլ հեշտ չէր հրաժարվել ընտանեկան ավանդույթներից. գալով հայրենիք՝ Վահանը փաստորեն դարձ կատարեց դեպի քրիստոնեությունը։ Երբ ավետեցին բդեշխ Վազգենի սպանության լուրը, Վահան Մամիկոնյանն անմիջապես ընդհանուր լեզու գտավ թագավոր Վախթանգ Գորգասարի հետ։

Ինչպես տեսնում ենք, ստեղծված միջազգային քաղաքական իրադրությունը նպաստում էր հայերի՝ այս անգամ սերտորեն դաշնակցած վրացիների հետ, պարսից դեմ մղած ազատագրական պայքարի ծավալմանը։ Շուշանիկի հիշատակը հայերին ու վրացիներին վրեժի, պայքարի էր կոչում ընդդեմ հայրենիքի դավաճանների։ Իհարկե, այդ ժամանակ Շուշանիկը դասվեց և՛ հայկական, և՛ վրացական եկեղեցու սրբերի շարքը։ Նրա գերեզմանի վրա կառուցվեց «Մատուռն սրբոյ Շուշանկան», որը դարձավ հայերի ու վրացիների ուխտատեղի։ Սահմանվեց և նրա հիշատակը հարգելու օրը։

15 *Ղազար Փարպեցի, էջ 113—118։*

16 *Շուշանիկի վկայաբանության հայերեն համառոտ վարկածում բդեշխ Վազգենը կոչվում է «Անթիպատրոս», որ գալիս է հունարենից և նշանակում է «փոխանակ հոր», «հոր փոխարեն»։ Տե՛ս Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատ. Ա, Երևան, 1942, էջ 173։*

17 *Տե՛ս* Александр Барамидзе, Древнейший памятник грузинской литературы, «Литературная Грузия», 1978, № 1, стр. 62.

18 *Տե՛ս Լ. Ն. Ջանաշիա, նշվ. աշխ., էջ 140—141։*

19 *Տե՛ս* Б. Г. Гафуров. Таджики. Москва, 1972, стр. 210—212:



Շուշանիկի մատուռում ժամասացության արարողությունը կատարվում էր միաժամանակ հայերեն և վրացերեն[20]։

Վրացիների և հայերի ապստամբությունն ընդդեմ Սասանյան Իրանի սկսվեց 482 թվականին[21]։ Վազգենի սպանությամբ Վախթանգը Վրաստանի կենտրոնախույս ուժերին զրկեց պարագլխից և, միաժամանակ, հանդես եկավ որպես քրիստոնեական եկեղեցու պաշտպան. այդ ժամանակաշրջանում դա դրական երևույթ էր։

«Անհրաժեշտ է իմանալ,— գրում է Ալեքսանդր Բարամիձեն,— որ հին Վրաստանում նվիրվածությունը քրիստոնեական հավատին հավասարազոր էր հավատարմությանը հայրենիքի շահերին, սարկացնողի հավատի ընդունումը համարվում էր հայրենիքի դավաճանություն»[22]։

482 թվականին բռնկված ապստամբությունը շարունակվեց մինչև 484 թվականը։ Ինչպես հաղորդում է Ղազար Փարպեցին, այն ժամանակ, երբ սասանյան զորքերը Հայաստանում տարված էին ապստամբ հայերի պարտիզանական ելույթները ճնշելով, Իրանից անակընկալ սուրհանդակներ են գալիս և բերում արքայից արքա Պերոզի սպանության բոթը։ 484 թ. ամռան վերջն էր այդ։ Հայերի և վրացիների դեմ կռվող զորապետներն շտապեցին Տիզբոն։ Հայաստանը և Վիրքը կրկին մնացին ապստամբած հայերին ու վրացիներին։ Վահան Մամիկոնյանն անհապաղ ձեռնամուխ եղավ երկրի բանակի, կայազորների, ամրացված կետերի կարգավորմանը։ Պետական ապարատը մաքրվեց անհուսալի և կասկածելի նախարարներից։ Գործակալությունները տրվում էին՝ խիստ պահպանելով նախարարների ժառանգական իրավունքի սկզբունքը։ Երկիրը կառավարում էր Վահան Մամիկոնյանը. հանդիսանալով բոլոր նախարարների գլխավորը, նա կոչվում է «տանուտէր Հայոց և սպարապետ Հայոց»։ Նախարարներն ու ժողովուրդը ցմահ նրան են արտոնում երկրի կառավարչի պաշտոնը։ Այդ ժամանակվանից, ի տարբերություն բյուզանդական Հայաստանի, մարզպանական Հայաստանը կոչվում է «տանուտիրական երկիր»։

Վահան Մամիկոնյանը ձգտում է վերականգնել, բարվոքել պատերազմներից վնասված երկիրը։ Նրա օրոք վերականգնվում են ավերված քաղաքներն ու գյուղերը։

Իրանում նոր գահ բարձրացած Վաղարշը վարում է խաղաղասիրական քաղաքականություն և ճանաչում Հայաստանի ու Վրաց աշխարհի ներքին ինքնուրույնությունը։ Վաղարշը պետք է ամենից առաջ վերականգներ պետության խախտված միասնությունը, կարգավորեր բյուջեն, խաղաղ փոխհարաբերություններ հաստատեր ենթակա ժողովուրդների հետ և բարձրացներ անհաջող պատերազմներից քայքայված երկրի բարեկեցությունը։

484 թվականի վերջերին Դվին ժամանեց Վաղարշի պատգամավորությունը, որը հայտարարեց, թե արքայից արքան կամենում է բարեկամություն և խաղաղություն հաստատել հայերի հետ։ Վահան Մամիկոնյանը և Հայոց ավագանին ընդունեցին այդ առաջարկը։

Նվարսակ (այժմ Նիսակ գյուղը՝ Խոյի մոտ) սահմանային գյուղում հաշտության պայմանագիր կնքվեց Հայաստանի և Իրանի միջև, որով Հայաստանում վերականգնվեցին նախարարների՝ ժողովրդական ապստամբությունից հետո հաստատված նախկին արտոնությունները ու կարգերը։ Քրիստոնեությունը համարվեց Հայաստանի պետական կրոն։ Երկրի կառավարման գործը կրկին հանձնվեց հայ ավագանուն։ Նախարարական տոհմերի գլխավորները պետական պաշտոնների էին նշանակվում՝ համաձայն ժառանգական իրավունքի և ոչ սասանյանների հայեցողությամբ։ Նախարարների գերագույն սյուզերեն և դատավոր կարող էր լինել միայն արքայից արքան և ոչ մարզպանը։

485 թվականի գարնանը Վահան Մամիկոնյանը մեկնեց Տիզբոն, ուր Վաղարշը նրան ընդունեց ճոխ մեծարանքով։ Ունկնդրության ժամանակ արքայից արքան կատարվածի ողջ մեղքը գցեց Պերոզի անխոհեմ քաղաքականության վրա։ Վաղարշը գրավոր հաստատեց հաշտության պայմանագրի կետերը, ապա հատուկ հրամանագրով Հայաստանի սպարապետ և տանուտեր ճանաչեց Վահան Մամիկոնյանին։ Հատուկ հրամանագրերով իրենց պաշտոններում հաստատվեցին գործակալները և վերականգնվեցին շնորհազուրկ նախարարների իրավունքները։ Այնուամենայնիվ, մարզպան նշանակվեց պարսիկ Անդեկանը։ Այդ բանի հետ նախարարները հաշտվել չէին կարող։

Հայ ավագանու ճնշման տակ Վաղարշն ստիպված եղավ ետ կանչել Անդեկանին և Հայաստանի կառավարիչ-մարզպան ճանաչել

20 *Տե՛ս. Ն. Ս. Ջանաշիա, «Գիրք Թղթոցի» տեղեկությունները Շուշանիկի մասին, «Մրավալթավի» ժողովածու, VI, Թբիլիսի, 1978, էջ 166—189 (վրացերեն)։*

21 *Տե՛ս Ն. Ս. Ջանաշիա,* Ղազար Փարպեցու տեղեկությունները Վրաստանի մասին, *էջ 142 (վրացերեն)։*

22 Александр Барамидзе. Древнейший памятник грузинской литературы, «Литературная Грузия», 1978, № 1, стр. 61.

Վահան Մամիկոնյանին (485 թ. աշնան վերջին)։ Այդպիսով, ձեռք բերվեց վերջնական համաձայնություն հայ ավագանու և Իրանի միջև։ Վերականգնվեց նախարարարների և հոգևորականության արտոնյալ վիճակը։ Հայաստանը ճանաչվեց որպես կիսանկախ, ինքնավար երկիր։

Այդ ապստամբությունը, որի սկսվելու 1500-ամյակը լրանում է 1982 թվականին, երկու ժողովուրդների՝ օտարերկրյա տերությունների դեմ ուղղված ռազմաքաղաքական համագործակցության առավել ցայտուն օրինակ է։ Ապստամբության առաջնորդները՝ Վախթանգ Գորգասար թագավորը և Հայաստանի սպարապետ, ապա մարզպան-տանուտեր Հայոց Վահան Մամիկոնյանը հայտնի են որպես խոշոր քաղաքական գործիչներ։ Վախթանգը դարձել է էպիկական հերոս։ Նրա մասին հյուսվել են ասքեր ու ավանդություններ, որոնցում արտացոլված է Վրաստանի ռեալ իրականությունը նրա թագավորության շրջանում։ Վահան Մամիկոնյանն իր անունն անմահացրեց որպես Մամիկոնեից տան մեծ գործի շարունակող, որի հետնորդները ևս գլխավորում էին օտարերկրյա ստրկացնողների դեմ մղված ժողովրդական շարժումները։

Պատմության փորձը ցույց է տալիս, որ դարերի խորքից է գալիս հայ և վրաց ժողովուրդների եղբայրությունն ու համագործակցությունը։ Նրանք համատեղ են պայքարել օտարերկրյա ոսոխների դեմ և այսօր, Սովետական Միության ժողովուրդների մեծ ընտանիքում, կառուցում են կոմունիստական հասարակարգ։

## У ИСТОКОВ БРАТСКОГО СОДРУЖЕСТВА НАРОДОВ ЗАКАВКАЗЬЯ


(Р Е З Ю М Е)

Кризис в социально-экономических отношениях, особенно в идеологии, охвативший весь древний мир, ускорил процессы назревания новых отношений в недрах дряхлеющего рабовладельческого общества.

Развивающееся христианство с начала IV века в странах Закавказья становится идеологией нарождающейся феодальной знати и идеологическим оружием в борьбе против экспансии в Закавказье сасанидского Ирана. Завершение процессов феодализации, будучи прогрессивным явлением, в условиях борьбы с иноземной агрессией влекло за собой потерю политической независимости и порабощение страны.

В конце IV века (385 г.) царство Великой Армении было разделено между двумя борющимися державами—сасанидским Ираном и Византией. Попытки Ирана превратить страны Закавказья в иранские провинции, в V веке (в 450—451, 482—484 гг.) вызвали бурные народно-освободительные движения народов Закавказья против сасанидской Персии. Летопись истории сохранила яркие примеры военно-политического содружества народов Закавказья, направленный против иноземного господства. Эти факты нашли свое отражение особенно в «Мученичестве Шушаник».




# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱՎԱՆԳԱՐԴՈՒՄ


Մ. Ա. ՍԵՄԵՐՋՅԱՆ
Տեխնիկական գիտությունների թեկնածու
Լ. Կ. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ


Գիտության ու տեխնիկայի զարգացման արդի փուլում կուտակվել է վիթխարի ինֆորմացիոն նյութ, որի մշակումն անհնար է սահմանափակ ժամանակում և սովորական միջոցներով։ Ստեղծվել է ինչ-որ ինֆորմացիոն արգելք, որը մարդ ի վիճակի է հաղթահարել սոսկ հաշվողական տեխնիկայի օգնությամբ։

Դրանով կարելի է բացատրել, որ քառորդ դարի ընթացքում հաշվողական տեխնիկան մեծ ճանապարհ է անցել հաշվողական եզակի հարմարանքների ստեղծումից սկսած (որի հնարավորությունները լիովին չէին գիտակցում ստեղծողներն իսկ) մինչև ամենատարբեր ինֆորմացիաների մշակման համակարգերի մասսայական արտադրությունն ու լայն օգտագործումը։

Մեր երկրում կոմունիզմի կառուցման ծրագրում նախատեսված է արագ տեմպերով զարգացնել գիտության մի շարք ճյուղեր, որոնք հիմնականում բնորոշում են գիտատեխնիկական առաջընթացը։ Այժմ հնարավոր չէ պատկերացնել ժողովրդական տնտեսության որևէ ճյուղի հետագա զարգացում առանց էլեկտրոնային տեխնիկայի կիրառման։

Հայրենական հաշվողական տեխնիկայի զարգացման գործում զգալի դեր ունի Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը (ԵրՄՄԳՀԻ), որը էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի մի շարք կարևորագույն ուղղությունների մշակմամբ համարվում է երկրի առաջատար հաստատություններից մեկը։

Ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերի բուռն զարգացումը մեծ ու բարդ խնդիրներ է առաջադրել հաշվողական տեխնիկայի մշակմամբ զբաղվող գիտական հաստատությունների ու ձեռնարկություններին, այդ թվում և Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի կոլեկտիվին։

Յոթանասունական թվականներին արդեն ինստիտուտը էլեկտրոնային հաշվիչ մեքենաների և դրանց հանգույցների մշակումից անցավ նաև հաշվողական կոմպլեքսների և կառավարման ավտոմատացված սիստեմների ստեղծման։ Կոլեկտիվի այդ ժամանակաշրջանի նվաճումներից բնորոշ է էլեկտրոնային հաշվիչ մեքենաների նոր սերնդի, հաշվողական կոմպլեքսների և դրանց հիման վրա կառավարման ավտոմատ սիստեմների, ինչպես նաև մի շարք միասնական սարքերի ու հանգույցների ստեղծումը։

Վերջին տարիներս ինստիտուտն իր ստեղծած մեքենաներում ու սարքերում նոր սկզբունքների և ինժեներական լուծումների կիրառման համար ստացել է շատ երկրների հարյուրավոր հեղինակային վկայականներ ու պատենտներ։ Այժմ ինստիտուտի մշակումներով արդյունաբերության թողարկած էլեկտրոնային հաշվիչ մեքենաները մեծ տեսակարար կշիռ ունեն երկրի ԷՀՄ-երի պարկում և հաջողությամբ օգտագործվում են ժողովրդական տնտեսության ամենատարբեր բնագավառներում։ Ինստիտուտի մշակած ԷՀՄ-երը բազմիցս ցուցադրվել են համամիութենական ու միջազգային ցուցահանդեսներում և արժանացել բարձր գնահատականի։

Մեր երկրում առավել տարածված հաշվիչ մեքենաներից են ինստիտուտում մշակված «Նաիրի» ընտանիքի մեքենաները, որոնք նախատեսված են ինժեներական, հաշվողական, գիտատեխնիկական, պլանային-տնտեսական,

վիճակագրական հաշվառման և յուրահատուկ այլ խնդիրների լուծման համար: «Նաիրի» ընտանիքի հիմնական առանձնահատկություններն են՝ առաջադրանքները մաթեմատիկական սովորական լեզվով կազմելու հնարավորությունը, միկրոծրագրավորման սկզբունքը, որը հնարավորություն է ընձեռում զգալիորեն փոքրացնելու սարքավորումների ծավալը և մեքենաների չափսերը, միաժամանակ ապահովելով մեքենաների կառուցվածքի ճկունությունն ու կողմնորոշման հնարավորությունը կիրառման տարբեր բնագավառներում: «Նաիրի—1» և «Նաիրի—2» էլեկտրոնային հաշվիչ մեքենաների հիմքում դրված այս սկզբունքներն առավել զարգացան «Նաիրի—3» ունիվերսալ հաշվիչ մեքենայի մեջ, որը պատրաստված է երրորդ սերնդի էլեմենտների հիման վրա և դրա ձևափոխումներում՝ «Նաիրի—3—1» և «Նաիրի—3—2» մեքենաներում:

«Նաիրի—3» շարքի մեքենաներում լուծված է մյուս հաշվիչ մեքենաների («Նաիրի—1», «Նաիրի—2», «Մինսկ—2», «Մինսկ—22 Մ») հետ համատեղելիության հարցը: Այդպիսի հնարավորությունը թույլ է տալիս օգտագործել այդ մեքենաների համար նախկինում կուտակված մաթեմատիկական հարուստ ապահովությունը:

«Նաիրի» մեքենաների մշակման հիմքում դրված սկզբունքների զարգացման գործում նոր քայլ էր «Նաիրի—3—2»-ի ստեղծումը. այդ մեքենան հնարավորություն է ընձեռում սպասարկելու մինչև 64 դիստանցիոն կառավարակետ, որոնցից յուրաքանչյուրը կարող է փոխարինել մեկ «Նաիրի—2»-ի: «Նաիրի—3—1» և «Նաիրի—3—2» մեքենաների բազայի վրա կոլեկտիվն ստեղծել է «Նաիրի—3—3» կոմպլեքսը, խոշոր սերիական արտադրությամբ գործարանների կառավարման համար. այդ մեքենայի առաջին նմուշները տեղադրվել են Լվովի «Էլեկտրոն» միավորման ձեռնարկությունում:

1971 թվականին «Նաիրի» էլեկտրոնային հաշվիչ մեքենաների ստեղծման համար մասնագետների մի խումբ արժանացել է ՍՍՀՄ պետական մրցանակի: Անհա նրանք՝ Հրաչյա Հովսեփյան, Մնացական Բունիաթյան, Խաչիկ Էյլեզյան, Ֆադեյ Սարգսյան, Հրանտ Սաղոյան, Միքայել Խաչատրյան, Վլադիմիր Իշին, Սարգիս Թումանյան և Այրատ Զաքիրով: Հատկապես հաճելի է նշել, որ մշակող կոլեկտիվների անդամները երիտասարդ են, շատերը՝ կոմերիտականներ:

1972 թվականին «Նաիրի—3» շարքի ԷՀՄ-երի ստեղծման համար ՍՍՀՄ Լենինյան կոմերիտմիության մրցանակի արժանացան Արամ Գյոլեցյանը, Հերման Օհանյանը, Էդուարդ Ջանջուղյանը, Վահան Գոնչոյանը, Լեոնիդ Կարապետյանը, Իգոր Երմակովը, Հենրիկ Ասլանյանը, Վանիկ Ազատյանը:

Փոքր մեքենաների մշակման գործում ինստիտուտի վերջին նվաճումը «Նաիրի—4»-ի ստեղծումն է, որը համապատասխանում է պրոբլեմային կողմնորոշող ԷՀՄ-երի պահանջներին, ունի տրամաբանական ճկուն կառուցվածք և կիրառելի է ամենատարբեր բնագավառներում: Գլխավոր կոնստրուկտոր Հերման Օհանյանի ղեկավարությամբ մշակողների երիտասարդ կոլեկտիվի ստեղծած մեքենան բնութագրվում է կառուցվածքային մի շարք նոր լուծումներով: 1976 թվականին «Նաիրի—4» մեքենան պետական հանձնաժողովին հանձնելու փաստը համընկավ ինստիտուտի ստեղծման 20-ամյա հոբելյանի հանդիսավոր տոնակատարությանը: Այժմ հանձնվել են պետական հանձնաժողովին և արտադրության մեջ ներդրվում են այդ մեքենայի ձևափոխված տարբերակը՝ «Նաիրի—4» (АРМ) էլեկտրոնային հաշվիչ մեքենան և դրա վրա հիմնված «Ավտոմատացված աշխատատեղը», որը կոչված է թեթևացնելու նախագծողների աշխատանքը:

Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը միջազգային գիտատեխնիկական կապեր է հաստատել շատ երկրների հետ: ԷՀՄ-երի միասնական սիստեմի մշակման վերաբերյալ Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների համաձայնագրի շրջանակներում ինստիտուտը մասնակցում է հաշվողական տեխնիկայի բնագավառում կատարվող աշխատանքներին: ԵրՄՄԳՀԻ-ի մասնագետները մասնակցում են ՏՓԽ-ի երկրների մասնագետների թեմատիկ խորհուրդների, ինչպես և հաշվողական տեխնիկայի միջոցների միջազգային հանձնաժողովների աշխատանքներին: Ինստիտուտի շատ մասնագետներ աշխատանքի են գործուղվել ԳԴՀ, ԼԺՀ, ՉՍՍՀ, ԲԺՀ, ՀԺՀ:

ՏՓԽ-ի համաձայնագրի շրջանակներում ինստիտուտը մշակել և 1972 թվականին հաջողությամբ պետական ու միջազգային հանձնաժողովներին է հանձնել երրորդ սերնդի ԷՀՄ-երի միասնական սիստեմի մոդելներից մեկը՝ EC—1030 մոդելը: Մեքենան ունի տեխնիկական ու կառուցվածքային մի շարք առանձնահատկություններ: Դրա մշակման և սերիական արտադրության մեջ ներդնելու համար 1976 թվականին Հայկական ՍՍՀ պետական մրցանակի են արժանացել Արման Քոչունկյանը, Միհրան Սեմերջյանը, Լևոն Գասպարյանը, Գառնիկ Պատվականյանը, Գրիգոր Խաչատրյանը, Գեորգի Զաքարյանը, Իգոր Մկրտումյանը, Սարգիս Ղազարյանը, Աշոտ Բաղդասարյանը, Արեգ Նարինյանը, Էդուարդ Մանուչարյանը, Յուրի Սոտովը և Վիտալի Սալակատովը:

1978 թվականի դեկտեմբերին հաջողությամբ ավարտվեց միասնական սիստեմի մի այլ մոդելի՝ EC—1045-ի մշակումը: Արագագործ այդ մեքենան մեկ վայրկյանում կատարում է մոտ 900 հազար գործողություն: Պետական հանձնաժողովը, ակադեմիկոս Ա. Ա. Դորոդնիցինի գլխավորությամբ, բնութագրել է այն որպես հաշվողական տեխնիկայի զարգացման արդի համաշխարհային մակարդակով կատարված մշակում, որն իր պարամետրերով ու ֆունկցիոնալ հնարավորություններով լավագույնն է ՏՓԽ-ի երկրներում մշակված ԷՀՄ-երի միասնական սիստեմի մեքենաներից: Այն նախատեսված է գիտատեխնիկական, տնտեսական և ինֆորմացիոն տրամաբանական խնդիրների լուծման համար:

Պետք է նշել, որ այդ նորաստեղծ մեքենայի մեջ հայրենական պրակտիկայում առաջին անգամ ներառված են մի շարք կարևոր սկզբունքային լուծումներ, այդ թվում՝ աքսելերատորը, մատրիցային պրոցեսորը և դիագնոստիկայի ու վերահսկողության զարգացած սիստեմը, որոնք ապահովում են տեխնիկատնտեսական բարձրարդյունավետ ցուցանիշներ և շահագործման մեծ հուսալիություն: Սովետական Միությունում ԷՀՄ-երի կազմի մեջ առաջին անգամ է ներառվում մատրիցային պրոցեսորի մշակումը, որը հնարավորություն է ընձեռում որոշակի առաջադրանքների համար մեքենայի արտադրողականությունը բարձրացնելու մոտ 10 անգամ:

Ժամանակակից էլեկտրոնային մաթեմատիկական մեքենան բազում ամենաբարդ հանգույցներից բաղկացած սարք է, որի հաջող մշակումը պահանջում է գիտության ու տեխնիկայի տարբեր բնագավառների, առաջին հերթին՝ ֆիզիկայի, մաթեմատիկայի, ռադիոէլեկտրոնիկայի և մեխանիկայի բարձրորակ մասնագետների տքնաջան ու անդուլ աշխատանքը:

Եթե առաջին տարիներին մեքենաներն ստեղծող խմբի աշխատանքն ունիվերսալ բնույթ էր կրում, ապա հետագայում, գիտահետազոտական աշխատանքները կոորդինացնելու նպատակով, կազմակերպվեցին մասնագիտացած խմբեր, որոնցից յուրաքանչյուրն զբաղվում է էլեկտրոնային հաշվիչ մեքենայի որոշակի հանգույցի կամ սարքի հետազոտմամբ ու մշակմամբ: ԵրՄՄԳՀԻ-ում ստեղծված այդպիսի խմբերն զբաղվում են տրամաբանական տարրերի, մեքենաների կառուցվածքի, օպերատիվ հիշողության, կոնստրուկցիայի, մաթեմատիկական ապահովման և այլ հարցերով: Աշխատանքի նման բաժանումը հնարավորություն ընձեռեց խմբերի ուշադրությունը կենտրոնացնելու մեքենայի առանձին հանգույցների մշակման վրա, առավելագույնս կատարելագործելու դրանք և, որ ամենակարևորն է, ձեռնարկելու տվյալ սարքերի միասնականացմանը: Հենց այս գործում էլ ինստիտուտը վերջին ժամանակներս հասել է մեծ հաջողությունների:

Էլեկտրոնային հաշվիչ մեքենաների երրորդ և չորրորդ սերունդների ստեղծման հետ կապված դժվար պրոբլեմներից մեկը ԷՀՄ-երի էլեկտրասնման սարքերի հետագա փոքրացման անհրաժեշտությունն է, առանց որի անհնար է հասնել ԷՀՄ-երի տեխնիկատնտեսական բարձր ցուցանիշների:

Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը ունենալով ԷՀՄ-երի համար էլեկտրասնման սիստեմի ստեղծման մեծ փորձ և օգտագործելով արտասահմանյան առաջավոր փորձը, արդեն երկար ժամանակ է, ինչ հանդիսանում է ԷՀՄ-երի միասնական սիստեմի սնման աղբյուրների մշակման գլխավորող ինստիտուտը: Այդ աշխատանքները հաջողությամբ են զարգանում. արտադրության մեջ ներդրվել են մի շարք մշակումներ, իսկ ԷՀՄ-երի միասնական սիստեմի սնման աղբյուրներն ընդունվել են որպես միասնականացված իրեր էլեկտրոնային հաշվիչ մեքենաների միասնական սիստեմի համար: ԵրՄՄԳՀԻ-ում մշակված սնման բլոկներն արտադրության մեջ ներդրված են ինչպես ՍՍՀՄ-ում, նույնպես և Բուլղարական Ժողովրդական Հանրապետությունում:

Ինստիտուտում մեծ ուշադրություն է նվիրվում հաշվողական մեքենաների և կոմպլեքսների կարևորագույն բաղկացուցիչ հանգույցների՝ հիշող սարքերի մշակման հարցերին: Հաշվիչ մեքենաների հիշողության ֆունկցիաները նման են մարդու հիշողության ֆունկցիաներին: Հիշողության մեջ գրանցվում և պահպանվում են հաշվելու համար ելակետային տվյալները: Ներանցի և արտանցի սարքերի հետ մեքենայի ունեցած ողջ կապը, այսինքն՝ մեքենայի և մարդու ողջ երկխոսությունը, իրականացվում է հիշող սարքերի միջոցով:

Ինստիտուտում հիշող սարքերի տեխնիկան զարգանում է ԷՀՄ-երի տեխնիկայի ընդհանուր զարգացմանը զուգահեռ: Այդ սարքերի ստեղծման աշխատանքները տարվում են առավել հեռանկարային ուղղություններով. հիշող սարքեր՝ ֆերիտային օղակաձև միջուկների վրա, գլանաձև մագնիսային թաղանթների վրա, ինտեգրալ կիսահաղորդիչ հիշող միկրոսխեմաների վրա:

Հիշող սարքերի մշակման համար արդի փուլում անհրաժեշտ են կոմպլեքսային ծավալուն հետազոտություններ էլեկտրոնիկայի, կարծր մարմինների ֆիզիկայի, նուրբ տեխնոլոգիայի և, վերջապես, մաթեմատիկական տրամաբանության բնագավառում: Ֆերիտային միջուկների վրա հիմնված հիշող սարքերը նպաստեցին հաշվողական տեխնիկայի առաջընթացին և այժմ էլ պահպանում են իրենց գերակշռող ազդեցությունը: Դրանք ապահովում են պահանջվող ծավալի հիշողություն, արագագործություն և ինֆորմացիայի պահպանում սընման վթարային անջատման դեպքում:

Գլանաձև մագնիսային թաղանթների վրա հիմնված հիշող սարքերը մագնիսային հիշող սարքերի բնագավառի վերջին նվաճումներից են: Ֆերիտային հիշող սարքերի համեմատությամբ ունենալով մի քիչ ավելի փոքրածավալ հիշողություն, դրանք ապահովում են արագության և էներգաանկախության ավելի լավ պարամետրեր և ավելի հարմար են հուսալիության բարձր պահանջներով օժտված հաշվիչ մեքենաների ու սիստեմների համար:

Վերջին տասը տարում ինստիտուտում գլանաձև մագնիսային թաղանթի հիման վրա մշակվել են մի շարք հիշող սարքեր ЕС—1030 ԷՀՄ-երի, «Նաիրի» ընտանիքի մեքենաների և հաշվողական տեխնիկայի այլ միջոցների համար: Մշակվել է այդ հիշող սարքերի տեխնոլոգիայի լրիվ ցիկլը, սկսվել և հաջողությամբ ընթանում է դրանց արտադրությունը:

Հաջողությամբ են ընթանում կիսահաղորդիչ հիշող միկրոսխեմաների վրա հիմնված հիշող սարքերի ստեղծման աշխատանքները: Ինտեգրալ կիսահաղորդիչ տեխնոլոգիայի նվաճումների շնորհիվ հիշող սարքերի այդ տեսակը վերջին տարիներս դարձել է հաշվողական տեխնիկայում կիրառվող ամենահեռանկարային և ունիվերսալ տեսակներից մեկը: Տարբեր տիպի միկրոսխեմաների բազայի վրա հիմնված սարքերն ունեն պահանջվող ծավալի հիշողության մեծ դիապազոն, իսկ փոքր ծավալի դեպքում օժտված են աշխատանքի ռեկորդային արագությամբ: Ներկայումս այդ տիպի հիշող սարքեր են մշակվում ЕС—1045 և «Նաիրի—4» ԷՀՄ-երի համար:

Բնականաբար, հիշող սարքերի ստեղծման աշխատանքների հաջող զարգացումն անհնար կլիներ առանց կոլեկտիվի համապատասխան աճի ու ամրապնդման: Հիշող սարքեր մշակող կոլեկտիվը, որի ղեկավարն է Գեորգի Զաքարյանը, կոմպլեկտավորված է այնպիսի բարձրորակ մասնագետներով, ինչպիսիք են՝ Կարեն Եղյանը, Վիգեն Ստեփանյանը, Մարատ Միրիջանյանը, Արա Եղիգարյանը, Լեոնիդ Մինասյանցը, Տիգրան Ավետիսյանը, Աշիկ Դարբինյանը, Ալիկ Կակոյանը և ուրիշներ, որոնց աշխատանքները արժանացել են Հայաստանի լենինյան կոմերիտմիության պետական մրցանակի:

Այժմ արդյունաբերական առավել զարգացած երկրներում հաշվողական տեխնիկան դառնում է էկոնոմիկայի ինքնուրույն ճյուղ, որն ամբողջ աշխարհում ընդգրկում է տասնյակ հազարավոր կազմակերպություններ, որոնք զբաղված են էլեկտրոնային հաշվիչ մեքենաների մշակման, արտադրության ու օգտագործման, ինչպես և դրանց հետ կապված սարքավորումների մշակման ոլորտում:

Միայն իններորդ հնգամյակում մեր երկրում ներդրվել են արդյունաբերական ձեռնարկությունների ու կազմակերպությունների, գյուղատնտեսության, կապի, առևտրի և տրանսպորտի կառավարման ավելի քան 1.600 ավտոմատացված համակարգեր: ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներին համապատասխան, այս հնգամյակում ավելի մեծ ուշադրություն է նվիրվում այդ խնդիրներին:

Անցյալ տասնամյակի վերջից ինստիտուտի գործունեության ուղղությունն արմատապես փոխվեց, դրվեց կառավարման ավտոմատացված համակարգերի ստեղծման հիմքը: Այժմ արդեն այդ թեմատիկան վճռական տեղ է գրավում հիմնարկության աշխատանքներում, ընդ որում, ստեղծվող ԷՀՄ-երը և կոմպլեքսները նույնպես առաջին հերթին կիրառվում են մշակվող կառավարման ավտոմատացված համակարգերում:

ԵրՄՄԳՀԻ-ն, կատարելով կուսակցության ու կառավարության առաջադրած խնդիրները, կառավարման ավտոմատացված համակարգերի բնագավառում դարձել է երկրի առաջատար ձեռնարկություններից մեկը: Ինստիտուտի ստեղծած երրորդ սերնդի էլեկտրոնային հաշվիչ մեքենաները կարճ ժամանակամիջոցում մեծ հռչակ են ձեռք բերել, օգտագործվում են երկրի ժողովրդական տնտեսության գրեթե բոլոր ճյուղերում և դրվել են խոշոր սերիական արտադրություն ունեցող ձեռնարկությունների կառավարման ավտոմատացված համակարգերի հիմքում:

1976 թվականին մեծ հաջողությամբ անցան ЕС—1030 էլեկտրոնային հաշվիչ մեքենաների բազայի վրա ստեղծված ВК—1010 կոմպլեքսի պետական փորձարկումները: Կառավարման բազմաթիվ ավտոմատ համակարգերի մեջ դրված սարքը օժտված է պարամետրերի բարձր հուսալիությամբ, որը ներկայումս ստանում է առաջնակարգ նշանակություն:

Դժվար է գերագնահատել կոլեկտիվի ստեղծած «Մարշրուտ» համակարգի ժողովրդատնտեսական նշանակությունը: «Մարշրուտ—1»-ը, որը ավտոմատացնում է տոմսարկղային գործողությունները, պահեստավորում տեղերը հեռընթաց գնացքներում, ներդրվել և հաջողությամբ շահագործվում է Մոսկվայի Կիևյան երկաթուղային կայարանում, իսկ հետագայում կներդրվի Մոսկվայի երկաթուղային հանգույցի բոլոր կայարաններում: «Մարշրուտ—1» հաշվողական կոմպլեքսի մշակման և ժողովրդական տնտեսության մեջ ներդնելու համար Հայկական ՍՍՀ պետական մրցանակի են արժանացել Արման Քուչուկյանը, Վիկտոր Մելիք-Փարսադանյանը, Ելենա Ալեքսանդրյանը, Ռուդոլֆ Օհանյանը, Լև Միրզոյանը, Հենրիխ Բելկինը, Անատոլի Դոլգանովը, Ավետիս Բերբերյանը, Հրանտ Սաղոյանը, Միքայել Դանիելյանը:

Երկրում ստեղծված ավտոմատացված կառավարման մասնագիտացված համակարգերի շարքում կարևոր տեղ է գրավում մշակված և մի շարք գործարաններում սերիական արտադրության մեջ ներդրված ՍՎԿ մասնագիտացված հաշվողական կոմպլեքսը, որն օժտված է բարձր հուսալիությամբ և իր տակտիկատեխնիկական հիմնական ցուցանիշներով համապատասխանում է սպառողների արդի պահանջներին: Ինստիտուտն այդ կոմպլեքսի մաթեմատիկական ապահովումը հանձնաժողովին հանձնեց բարձր բնութագրերով: Դա ինստիտուտի լուրջ աշխատանքն էր սիստեմային մաթեմատիկական ապահովման բնագավառում:

ՍՎԿ կոմպլեքսի ստեղծման գործում աչքի ընկան և գիտության ու տեխնիկայի բնագավառում 1976 թվականի Հայկական ՍՍՀ պետական մրցանակի արժանացան Ռոբերտ Աթոյանը, Ստեփան Աբաջյանը, Ռոբերտ Հարությունյանը, Արտյուշա Բաղդյանը, Գրիգոր Բաքարյանը, Էդուարդ Բուդաղյանը, Անատոլի Գուտովը, Գրիգոր Կարապետյանը, Արման Ռուստամյան, Գրիգոր Խեչումյանը:

«Հրազդան—3» հաշվիչ մեքենաների բազայի վրա ինստիտուտում մշակվել ու ներկայումս շահագործվում է կառավարման ավտոմատացված համակարգ, որի օգնությամբ ավտոմատացվել են այնպիսի աշխատատար պրոցեսներ, ինչպիսիք են՝ աշխատավարձի հաշվումը, նյութատեխնիկական մատակարարման հաշվառումը, կոնստրուկտորական փաստաթղթերի մշակումը: Այդ սիստեմը մշակել են Բալաբեկ Կոստանյանը, Սերգեյ Սուքիասյանը, Շուրա Գալստյանը, Բերիկ Տերյանը, Յուրի Կարապետյանը և ուրիշներ:

«Նաիրի» ընտանիքի հաշվիչ մեքենաները մեծ հաջողությամբ ցուցադրվել են արտասահմանում կազմակերպված ՍՍՀՄ ազգային ցուցահանդեսներում: Ինստիտուտի վերջին մոդելներից մեկը՝ «Նաիրի—4»-ը, հաջողությամբ ցուցադրվեց 1977 թվականին Լոս-Անջելոսում կազմակերպված ՍՍՀՄ ազգային ցուցահանդեսում: 1974 թվականին ՍՍՀՄ ժողտնտեսության նվաճումների ցուցահանդեսում ներկայացված ЕС—1030 հաշվիչ մեքենան արժանացավ երկու ոսկե, յոթ արծաթե և բրոնզե մեդալների: 1976 թվականին ՍՍՀՄ ժողտընտեսության նվաճումների ցուցահանդեսում ոսկե և արծաթե մեդալների արժանացան միասնականացված սնման երկրորդային աղբյուրները, որոնք մշակվել են Ժիրայր Մկրտչյանի ղեկավարությամբ և նախատեսված են միասնական սիստեմի էլեկտրոնային հաշվիչ մեքենաների մոդելների և սարքերի սնման համար: 1976 թվականին արծաթե և բրոնզե մեդալների արժանացավ «Գառնի—1» գրաֆիկական ինֆորմացիայի մուտքի սարքը, որը մշակվել է Մաքսիմ Հակոբյանի ղեկավարությամբ: Նույն թվականին «Տրանսպորտ» տաղավարում ցուցադրվեց «Մարշրուտ—1» հաշվողական կոմպլեքսը և արժանացավ ոսկե, արծաթե ու բրոնզե մեդալների:

Կոլեկտիվի աշխատանքն արժանացել է նաև հանրապետության կառավարության և ռադիոարդյունաբերության մինիստրության բարձր գնահատականին: Վերջին վեց տարում պլանային առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում ձեռք բերած հաջողությունների համար ինստիտուտն ամեն տարի պարգևատրըվում է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, արհմիությունների հայկական հանրապետական խորհրդի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով: Տարբեր եռամսյակների և կիսամյակների արդյունքներով փորձնական գործարանը և ինստիտուտը բազմիցս մրցանակային տեղեր են գրավել ռադիոարդյունաբերության մինիստրության սոցիալիստական մրցության մեջ:

Որո՞նք են ինստիտուտի առաջիկա խնդիրները: Ամենից առաջ անհրաժեշտ է շարունակել կառավարման ավտոմատացված համակարգերի չորրորդ սերնդի էլեկտրոնային հաշվիչ մեքենաների և կոմպլեքսների ստեղծման աշխատանքները: Մշակող կոլեկտիվների խնդիրն է ստեղծել էլեկտրոնային հաշվիչ մեքենաների նոր մոդելներ, որոնք հիմնված լինեն միկրոպրոցեսորների վրա՝ զուգորդված ինտեգրացման բարձր աստիճան ունեցող տրամաբանական ծրագրավորող մատրիցաների և միկրոսխեմաների օգտագործման հետ, այդ խոշոր առաջընթաց կլինի էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի բնագավառում:

Հաշվի առնելով նախորդ սերունդների մեքենաների թերությունները՝ այժմ արդեն կարելի է մեծ ճշգրտությամբ կանխատեսել չորրորդ սերնդի ԷՀՄ-երի տարբերիչ գծերը: Այդ սերնդի մեքենաները մշակվելու են մեծ ինտեգրալ էլեմենտների, այսպես կոչված՝ «БИС» սխեմաների վրա, լայնորեն կկիրառվեն գերօպերատիվ և զուգորդիչ ներքին հիշող սարքերը, կկատարելագործվի միկրոծրագրավորումը, մարդը նոր լեզու կգտնի մեքենայի հետ ունեցած իր հարաբերություններում: Բացի դրանից, ինստիտուտում հետազոտություններ կկատարվեն ՏՓԽ-ի շրջանակներում էլեկտրոնային հաշվիչ մեքենաների միասնական սիստեմի «РЯД—3» տեխնիկական միջոցների ստեղծման բնագավառում:

Այս խնդիրների կատարումն ապահովելու համար անհրաժեշտ է լուծել կազմակերպական, տեխնիկական ու տեխնոլոգիական մի շարք պրոբլեմներ:

Կյանքը ցույց է տալիս, որ ինչպիսի որակավորում էլ ունենան սկսնակ մասնագետները, լիարժեք մասնագետ նրանք կարող են դառնալ միայն աշխատանքային գործունեության ընթացքում: Մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտն իր գոյության առաջին իսկ օրից դարձել է հաշվողական տեխնիկայի և ռադիոէլեկտրոնիկայի բնագավառի բարձրորակ կադրերի պատրաստման իսկական դարբնոց: Ամեն տարի ինստիտուտում իրենց պրակտիկան են անցկացնում հանրապետության տարբեր բուհերի և տեխնիկումների հարյուրավոր ուսանողներ: Փորձ ձեռք բերելու համար այստեղ բազմաթիվ մասնագետներ են գալիս երկրի տարբեր գիտահետազոտական ձեռնարկություններից: Մասնագետների հիմնական միջուկն աճել և իր մասնագիտական ու աշխատանքային կոփվածքն է ստացել ինստիտուտի բաժանմունքներում: Վերջին տասը տարում ինստիտուտի 70 առաջատար մասնագետներ պաշտպանել են թեկնածուական դիսերտացիա, ներկայումս ձեռնարկությունն ունի 27 ասպիրանտ: ԵրՄՄԳՀԻ-ն իր գոյության 20 տարում պատրաստել է մեծ թվով բարձրորակ մասնագետներ, որոնք, ինչպես հանրապետությունում, նույնպես և նրա սահմաններից դուրս, դարձել են ռադիոէլեկտրոնային արդյունաբերության և կից ճյուղերի գերատեսչությունների ու ձեռնարկությունների առաջատար աշխատողներ:

Ինստիտուտում կատարված գիտահետազոտական աշխատանքը լայն ճանաչման է արժանացել: Կոլեկտիվի համար հատկապես թանկ է այն գնահատականը, որ անցյալ տարի ինստիտուտի գործունեությանը տվեց ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի պատվիրակությունը՝ պրեզիդենտ Ա. Պ. Ալեքսանդրովի գլխավորությամբ: Ինստիտուտի պատվավոր հյուրերի մատյանում պրեզիդենտը պատվիրակության անունից գրեց. «Մենք մեծ հետաքրքրությամբ ծանոթացանք ինստիտուտի աշխատանքներին: Կարևոր է, որ այն այսպիսի մեծ ավանդ է ներդնում մեր ամբողջ Միության զարգացման գործում:

Այս ինստիտուտում մենք տեսանք շատ գործեր, որոնք հնարավորություն կընձեռեն լուծելու մեր երկրի համար կարևոր խնդիրներ»:

Այս պատվաբեր և պարտավորեցնող գնահատականը ոգևորում, թևավորում է մեր կոլեկտիվին՝ ստեղծելու նոր, է՛լ ավելի կատարյալ հաշվողական տեխնիկա, որն այնքան անհրաժեշտ է մեր երկրի ժողովրդական տնտեսությանը:



# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ




**ԱՆԻՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ** գյուղատնտեսական շրջաններից է, իսկ նրա հարստությունը հացն է: Ահա թե ինչու հացահատիկային տնտեսությունը զարգացնելու, այն ինտենսիվ վարելու և յուրաքանչյուր հեկտարից առավելագույն բերք ստանալու հարցերի լուսաբանումը մշտապես գտնվում է շրջանային «Անի» լրագրի տեսադաշտում:

Տասներորդ հնգամյակում շրջանում արտադրվելու է մեկ միլիոն 280 հազար ցենտներ հացահատիկ: Այդ խնդրի հաջող իրականացմանը ակտիվորեն մասնակցում է նաև լրագիրը: Անշեղորեն կենսագործենք ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները գործողության մեջ, Ոռոգելի հողագործության հետագա զարգացման համար խորագրերի ներքո «Անին» սիստեմատիկաբար ընթերցողներին ներկայացնում է գյուղատնտեսական աշխատանքների կատարման ընթացքը տասներորդ հնգամյակում: Գյուղական կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների և բոլոր աշխատավորների ուշադրությունը լրագիրը բևեռում է հացահատիկի արտադրության ավելացման ռեզերվները ու հնարավորությունները առավել արդյունավետ օգտագործելու հարցերի վրա: «Անին» մշտապես հիշեցնում է ընթերցողներին, որ հնգամյակում հացահատիկի արտադրության ավելացման առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարման համար անհրաժեշտ է համառ ու լարված գործել, կոլեկտիվ ու պետական տնտեսությունների աշխատողների ուժերը ի սպաս դնել հնգամյակի բնագծերը ժամանակին նվաճելուն:

Լրագիրը բովանդակալից հոդվածներ ու թղթակցություններ է տպագրում հացահատիկի արտադրության հնգամյա պլանի կատարման վերաբերյալ: Հրատարակված թղթակցություններից մեկը (№ 97) տեղեկացնում է, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո շրջանում մեծ չափով բարձրացել է հացահատիկի բերքատվությունը, ավելացել համախառն բերքը: Տասներորդ հնգամյակի երեք տարիներին կոլտնտեսություններում ու սովխոզներում արտադրվել է 688 հազար ցենտներ հացահատիկ, յուրաքանչյուր հեկտարից՝ 28 ցենտներ: Այդ հնարավորություն է ընձեռել 66 հազար ցենտներով գերազանցելու հացամթերման հնգամյա պլանը:

«Անին» իր էջերում բարձրացնում է հացահատիկային տնտեսության զարգացմանը վերաբերող կենսականորեն կարևոր հարցեր, հրապարակելով գյուղատնտեսության մասնագետների, արտադրության կազմակերպիչների, բարձր բերքի վարպետների, կուսակցական, սովետական ղեկավար աշխատողների հետաքրքրական, բովանդակալից ելույթները: Քիմիացումը բարձր բերքի գրավականն է (№ 26) հոդվածում շրջսովետի գործկոմի գյուղվարչության ավագ ագրոքիմիկոս Գ. Ավդալյանը ցույց է տալիս, թե գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման համար որքան կարևոր է հողերի քիմիական պարարտացումը: «Անցած տարի,— գրում է նա,— շրջանում պարարտացման ու սնուցման նպատակով օգտագործվել են 8.884 տոննա հան-

քային և 36.800 տոննա օրգանական պարարտանյութեր։ Այդ աշխատանքները առանձնապես լավ են կազմակերպված Չիթհանքովի, Մարալիկի, Ջորակապի, Լանջիկի, Աղինի, Հայկաձորի և Ծիրակավանի տնտեսություններում, որտեղ ամեն մի հեկտարից ստացվել է 32—40 ցենտներ հացահատիկ»։

Մի այլ հոդվածում (№ 62) քննադատվել են Ջրափի, Քարաբերդի տնտեսությունների ղեկավարները, որոնք ճիշտ ու արդյունավետ չեն օգտագործում պարարտանյութերը, առանձին տեղերում աչքաթող է արվել դրանց պահպանությունը։ Քննադատական խոսք է ասվել նաև գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման պետական կոմիտեի շրջանային միավորման հասցեին։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումից հետո լրագիրն առանձին բաժիններ ու էջեր է նվիրել հացահատիկի արտադրության ավելացման հարցերին։ *Հոյակապ կանխագծումներ* (№ 79) հոդվածում Մարալիկի Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր կոլտնտեսության նախագահ, սոցիալիստական աշխատանքի հերոս Ս. Նազարյանը գրում է, որ իրենց մոտ միջոցառումներ են իրականացվում հացահատիկի ցանքատարածությունները ու ոռոգման ցանցն ընդարձակելու, հեկտարից 40—45 ցենտներ հացահատիկ ստանալու համար։

Մի այլ համարում «Անին» ամբողջ էջ է նվիրել գյուղատնտեսության հետագա զարգացմանը՝ կապված ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումների կենսագործման հետ։ Տպագրված են Ջերժինսկու անվան կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար Ս. Մխիթարյանի, ոռոգման և ջրարբիացման սիստեմների վարչության պետ Ռ. Մովսիսյանի, գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման պետական կոմիտեի շրջանային միավորման մելիորատիվ ջոկատի պետ Գ. Սաֆարյանի, Լանջիկի կոլտնտեսության գյուղատնտես Վ. Պետրոսյանի ընդարձակ հոդվածները։ Ռ. Մովսիսյանը տեղեկացնում է, որ առաջիկա երկու տարում շրջանում ոռոգելի տարածությունները ավելանալու են մոտ 1.000 հեկտարով։ Միաժամանակ ձեռք են բերվում արհեստական անձրևացման սարքեր. դրանցից 5-ն արդեն տեղակայված են ցածրադիր գոտու տնտեսություններում։ Կատարվելու են նաև մելիորացման աշխատանքներ։ Հարթեցվում և ոռոգելի դարձնելու համար նախապատրաստվում են ավելի քան 6.000 հեկտար անջրդի հողեր։ Ամեն ինչ արվում է հացահատիկի առատ բերք ստանալու նպատակով։

Ծրջանի տնտեսություններում գործարար սոցիալիստական մրցություն է ծավալվել կայուն բերք աճեցնելու և 1979 թվականի՝ հնգամյակի չորրորդ տարվա, հացահատիկի արտադրության պլանը գերակատարելու համար։ «Անիի» խմբագրությունը գյուղատնտեսական աշխատանքների ընթացքը լուսաբանելու, ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու նպատակով կազմակերպում է ստուգայցեր։ Դրանց մասնակիցները, լինելով տնտեսություններում, հանգամանորեն ծանոթանում են սերմացուի պահպանման, տեխնիկայի նորոգման ու խնամքի վիճակին և հրապարակում համապատասխան նյութեր։

ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան և նոյեմբերյան պլենումների որոշումների կենսագործման ճանապարհին խրախուսելի նախաձեռնություն են հանդես բերել Չիթհանքով գյուղի կոլտնտեսության աշխատավորները։ Մտնելով համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, նրանք խոստացել են հնգամյակի չորրորդ տարում 967 հեկտար տարածության ամեն մի հեկտարի բերքատվությունը հասցնել 40 ցենտների և ստանալ 38.680 ցենտներ ցորեն ու գարի և հացահատիկի արտադրության հնգամյա պլանը կատարել ընթացիկ տարում։ Ստանձնելով այս պարտավորությունները՝ նրանք մրցության են հրավիրել շրջանի երկրագործներին, կոչ արել աշխատել առանց ետ մնացողների, 1979 թվականը դարձնել բարձր բերքի տարի։ Հրապարակելով այդ կոչը՝ «Անին» հաջորդ համարից բացել է *Արձագանքում են չիթհանքովցիների նախաձեռնությանը* խորագիրը. հոդվածներով ու թղթակցություններով հանդես են եկել տնտեսությունների ղեկավարները, արտադրության կազմակերպիչները, մեխանիզատորները։

Ջրափիի սովխոզի մեխանիզատոր, Լենինի շքանշանակիր Կ. Մովսիսյանն իր հոդվածում (№ 18) գրում է, որ տնտեսությունում վերջին երկու տարում արտադրվել է ավելի քան 23.800 ցենտներ հացահատիկ. դա պլանավորվածից զգալի չափով ավելի է։ Հետևելով չիթհանքովցիների օրինակին՝ սովխոզի կոլեկտիվը խոստացել է ընթացիկ տարում 9.700-ի փոխարեն ամբարել 10.070 ցենտներ հացահատիկ։

Լրագիրը լուրջ ուշադրություն է նվիրում նաև անասնաբուծության զարգացմանը՝ սիստեմատիկաբար նյութեր տպագրելով ֆերմաների աշխատողների սոցիալիստական մրցության ընթացքի, առաջավորների փորձի ընդհանրացման, անասունների գլխաքանակի աճի ու նրանց մթերատվության բարձրացման վերաբերյալ։

Լրագրի նախաձեռնությամբ մի քանի տարի է, ինչ շրջանում ծավալվել է երկուհազարական կթվորուհիների շարժումը։ Մարալիկի, Ջորակապի, Չիթհանքովի կոլտնտեսությունների և Իսահակյանի սովխոզի կաթնամթերքային ֆերմաների 53 կթվորուհիներ հնգամյակի երրորդ տարում նվաճել են ամեն մի կովից 2.000 և ավելի կգ կաթ ստանալու բնագիծը, իսկ 6-ը դարձել են երեքհազարական կթվորուհիների հանրապետական ակումբի անդամ։

Լրագրից տեղեկանում ենք, որ շրջանի աշխատավորները պարտավորվել են ընթացիկ տարում պետությանը հանձնել 15.700 ցենտներ միս, 53 հազար ցենտներ կաթ, 1.430 ցենտներ բուրդ և 1,4 միլիոն ձու, իսկ Մարալիկի կոլտնտեսության կթվոր-անասնապահները պայքարում են անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի հնգամյա պլանը չորս տարում կատարելու և լրացուցիչ ստանալու 1.100 ցենտներ միս, 2.050 ցենտներ կաթ, 40 ցենտներ բուրդ և 290 հազար ձու։ Բարձր պարտավորություններ են ստանձնել Ջորակապի, Չիթհանքովի, Լանջիկի կոլտընտեսությունների, Իսահակյանի և Ծիրակավանի սովխոզների ֆերմաների կոլեկտիվները։

*Կենսագործենք ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները* խորագրի ներքո լրագրում պարբերաբար հանդես են գալիս ֆերմաների աշխատողները, պատմում իրենց գործերի, հոգսերի, սոցիալիստական պարտավորությունների կատարման մասին։ Անիի սովխոզից Վ. Մելիքյանը իր թղթակցությունում (№ 10) գրում է, որ անասնապահներ Վ. Մազմանյանը և Վ. Գևորգյանը պետությանն են հանձնել 32 մատղաշ՝ յուրաքանչյուրը 300 կգ քաշով։ Այժմ նրանք խնամում են 12—14 ամսական 100 հորթ, որոնց քաշը 310—320 կգ-ի հասցնելուց հետո կուղարկվի մթերակայան։

*Եռամսյակի պլանը կատարվեց* թղթակցությունում Ժ. Խաչատրյանը (№ 17) պատմում է Մարալիկի կաթնամթերքային ֆերմայի կոլեկտիվի աշխատանքի մասին, ուր բարեխղճորեն են կատարվում ստանձնած պարտավորությունները։ Փետրվարի 3-ին կթվոր-անասնապահները պետությանը հանձնել են 670 ցենտներ կաթ, գերակատարելով եռամսյակի պլանը։

Հետաքրքրությամբ է ընթերցվում «Անիի» հունիսի 26-ի համարի բովանդակալից էջը, որը նվիրված է երկու մրցակից տնտեսությունների՝ Մարալիկի և Էստոնական ՍՍՀ Պիլվասի շրջանի «Ախյա» կոլտնտեսություններին։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում երկու օր նվիրվել է հայ և էստոն մրցակից կոլտնտեսականների աշխատանքի առաջավոր փորձի պրոպագանդմանը։ Ցուցահանդես այցելողները մոտիկից ծանոթացել են այդ տնտեսությունների ձեռքբերումներին։

*«Անին» շրջում է անասնապահական ֆերմաներում* խորագրի ներքո հրապարակվում են ստուգայցային բրիգադի մշտական հսկողության արդյունքները, աշխատանքների կազմակերպման ընթացքն արտացոլող նյութեր։

*Անթերի անցկացնել ձմեռումը* ստուգայցային հոդվածը (№ 17) նվիրված է Սառնակունք սովխոզի ֆերմաներին։ Նշելով հասումները, հոդվածագիրները, միաժամանակ, աչքաթող չեն անում կենդանիների խնամքին խոչընդոտող թերությունները։ Հոդվածում նշված է, որ առաջին բրիգադում վատ է կազմակերպված կովերի արհեստական սերմնավորումը, գոմերում չեն գործում ջրի խմոցները, փչացել են կթի ագրեգատները, անբավարար է կազմակերպվում աշխատողների կուլտուրական սպասարկումը, ոչխարաբուծական ֆերմայում զգալի կորուստներ են եղել։

Լրագիրն օգտակար գործ է կատարել՝ տպագրելով զոոտեխնիկ Ա. Ջանազյանի *Կաթի ու մսի արտադրության ավելացման ռեզերվները* վերնագրով ընդարձակ հոդվածը (№ 18)։ Հեղինակը պատմում է, թե ինչ միջոցներով կարելի է բարձրացնել անասունների մթերատվությունը։ Իսկ հաջորդ համարում իր *Իջեցնել գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը* հոդվածում տնտեսագետ Ջանազյանը հանգամանորեն վերլուծել է, թե ինչու շրջանի շատ տնտեսություններում բարձր է արտադրանքի ինքնարժեքը։ «Պատճառը,— գրում է նա,— ֆերմաների աշխատանքների մեքենայացման ցածր մակարդակն է, ինչպես և այն, որ հետևողական պայքար չի տարվում անարտադրողական ծախսերի կրճատման համար։ Եվ պատահական չէ, որ Սարակապի կոլտընտեսությունում տավարի մսի մեկ ցենտների ինքնարժեքը կազմել է 190 ռ. 53 կոպեկ, ոչխարինը՝ 149 ռ., կաթինը՝ 31 ռ. 62 կոպեկ, բրդինը՝ 449 ռ. 56 կոպեկ»։

«Անին» պարբերաբար անդրադառնում է կերի կուտակման ընթացքին։ Ջորակապի, Ծիրակավանի, Սարակապի, Անիի, Հայկաձորի տնտեսությունների օրինակով լրագիրը պատմում է, թե ինչպես պետք է կազմակերպել խոտհունձն ու կերի սիլոսացումը, ապահովել 15.500 տոննա խոտի կուտակման, 9.000 տոննա սիլոսի, 7.900 տոննա սենաժի պատրաստման առաջադրանքների կատարումը։

*Առատ և լիարժեք կեր՝ հանրային հոտին* ընդհանուր խորագրի ներքո լրագիրը հրապարակել է բազմաթիվ թղթակցություններ, հոդվածներ, որոնք տեղեկացնում են՝ որտեղ ինչպես է ընթանում կերի կուտակումը։ *Պայքարում են կերը անկորուստ հավաքելու համար*

թղթակցությունում (№ 79) Ջ. Ամդալյանը գրում է, որ Անիի սովխոզում հաջողությամբ է ընթանում խոտհունձը: Աշխատանքը լավ կազմակերպելու շնորհիվ 400-ի փոխարեն արդեն պատրաստվել է 600 տոննա սենաժ, կուտակվել 370 տոննա խոտ: Հուլիսի 3-ի համարում Սառնաղբյուրի թղթակցական պոստի անդամ Ս. Սահակյանը տեղեկացնում է, որ տնտեսությունում կերի կուտակմանը մասնակցում են 150-ից ավելի դաշտավարներ ու մեխանիզատորներ: Նրանց նշանաքանն է՝ հանրային հոտն ապահովել 2.180 տոննա խոտով, 1.760 տոննա հյութալի կերով: Լրագիրը միաժամանակ քննադատական խոսք է ասում այն տնտեսությունների հասցեին, որոնք այդ կարևոր գործում հապաղում են:

Անցած ամիսներին լրագրի ուշադրության կենտրոնում է եղել ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի նյութերի պրոպագանդումը, գյուղատնտեսության հարցերի նպատակասլաց լուսաբանումը: Այդ միանգամայն բնական է: Լրագրի պարտքն է՝ այսուհետ ևս ավելի հետաքրքրական և ուսանելի ձևով լուսաբանել գյուղատնտեսության, գյուղի սոցիալ-տնտեսական զարգացման հարցերը, նկատել և արտացոլել այն վերափոխությունները, որոնք տեղի են ունեցել ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո, վերհանել, քննադատել թերությունները, դրանով իսկ օգնելով կուսակցական, սովետական կազմակերպություններին՝ հաջողությամբ կատարելու գյուղատնտեսության հետագա զարգացման ծրագիրը:




ԱՆՍԱՄՆԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ ՎՃՌԱԿԱՆ դեր է խաղում Ապարանի շրջանի ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում: Մրցնելով սոցիալիստական մրցության մեջ՝ կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավորվել են բարձրացնել անասունների մթերատվությունը, ժամկետից շուտ նվաճել տասներորդ հնգամյակի բնագծերը: Այդ պայքարում կուսակցական, սովետական կազմակերպություններին լուրջ օգնություն է ցույց տալիս շրջանային «Ծաղկունք» լրագիրը, որը սիստեմատիկաբար լուսաբանում է անասնաբուծության զարգացման, դրա արդյունավետության բարձրացման հարցերը: Լուսաբանելով մրցության ընթացքը՝ «Ծաղկունքն» ապահովում է արդյունքների հրապարակայնությունը և ընթերցողներին իրազեկ դարձնում պլանային առաջադրանքների, սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքին:

Կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները գործողության մեջ, ժամկետից շուտ նվաճենք տասներորդ հնգամյակի բնագծերը, Ձմռան ամիսներին ավելի շատ կաթ և միս ընդհանուր խորագրերի տակ լրագիրը բազմաթիվ նյութեր է հրապարակել ֆերմաների, կթվոր-անասնապահների, թռչնապահների կատարած աշխատանքների մասին, ցույց տվել, թե ո՛վ ինչպե՛ս է կենսագործում սոցիալիստական պարտավորությունները, համընդհանուր ճանաչման արժանացնում մրցության առաջավորներին:

Հնգամյակը չորս տարում հոդվածում Զորագյուղի սովխոզի դիրեկտոր Ս. Գալստյանը պատմում է ֆերմաների աշխատողների հայրենանվեր աշխատանքի և ձեռք բերած հաջողությունների մասին: Տնտեսությունը գերակատարել է երեք տարիների անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի պլանները՝ պետությանը հանձնելով միայն բարձրորակ մթերքներ: Միայն անցած տարի անասնապահությունից ստացվել է 20 հազար ռուբլու օգուտ:

«Ծաղկունքը» լրագրային տարբեր ժանրերի միջոցով ներկայացնում է շրջանի աշխատանքային առօրյան, օգնում պատվով կատարելու կուսակցության կանխագծումները: Այդ առումով հետաքրքրական են Ծաղկաշեն, Թթուջուր, Շենավան գյուղերի տնտեսությունների անասնապահների, կթվորուհիների ու թռչնապահների աշխատանքին նվիրված նյութերը: Շրջանում առաջինը Ծաղկաշենի կոլտնտեսությունում է արմատավորվել հորթերի աճեցման ու բտման ինտենսիվ եղանակը: Լրագիրը պարբերաբար ցույց է տալիս այդ առաջավոր մեթոդի արդյունավետությունը:

Լրագրի հունվարի 25-ի և 27-ի համարներում տպագրված Նրանք նվաճել են 2.000-ի բնագիծը, Փոխանցիկը՝ Թթուջրի սովխոզի անասնապահներին նյութերից իմանում ենք, որ Թթուջրի տնտեսությունում 1978 թվականին ամեն մի կովի կաթնատվությունը հասել է 2.000 կգ-ի, որ ֆերմայի աշխատողները պետությանը հանձնել են 3.497 ցենտներ կաթ կամ պլանավորվածից 38 տոկոսով ավելի, կաթի 77 տոկոսը եղել է առաջին տեսակի, մսի մթերման պլանը կատարել են 158, բրդինը՝ 114 տոկոսով: Այս ցուցանիշների համար տնտեսությունը նվաճել է կուսշրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշը:

Սոցիալիստական պարտավորությունների կատարման ասպարեզում ակտիվ գործունեություն են ծավալել Շենավանի կոլտնտեսականները, որոնց աշխատանքը ևս արտացոլվել է լրագրի էջերում: Այսպես, անցած տարվա դեկտեմբերի 9-ի համարում Գ. Սահակյանի Պարտավորությունները կատարվել են, մրցությունը շարունակվում է թղթակցությունում կարդում ենք. 1978 թվականը Շենավանի կոլտնտեսության համար եղավ արգասաբեր, 100 կովից ստացվել և անկորուստ պահպանվել է 92 հորթ, 100 մաքուց՝ 95 գառ, յուրաքանչյուր կովից ստացվել է 1.979 կգ կաթ: Կոլտնտեսությունը 3.000-ի փոխարեն արտադրել է 3.400 ցենտներ կաթ, 900-ի փոխարեն՝ 1.070 ցենտներ միս, 32 ցենտներով գերակատարվել է բրդի մթերման պլանը: Մրցության մեջ ձեռք բերած այս ակնառու հաջողությունների համար կոլտնտեսությունը պարգևատրվել է ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով:

Մի այլ թղթակցությունից տեղեկանում ենք, որ Շենավանի կոլտնտեսության կթվոր-անասնապահները աշխատանքային նոր հաջողություններով են նշանավորել հնգամյակի չորրորդ տարվա առաջին եռամսյակը:

Լրագիրը երկու էջ է նվիրել գյուղատնտեսության հետագա զարգացման հարցերին՝ կապված ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշման կենսագործման հետ: Շրջսովետի գործկոմի գյուղվարչության պետ, գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Բ. Ղազարյանը ՍՄԿԿ ագրարային քաղաքականությունը գործողության մեջ վերնագրով ծավալուն հոդվածում փաստերով և օրինակներով ցույց է տալիս, թե կուսակցության Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումի որոշման կենսագործումը ինչպիսի բարերար ազդեցություն է գործել շրջանի գյուղատնտեսության, հատկապես, անասնապահության զարգացման վրա: Այսպես, 1965 թվականի համեմատությամբ, կաթի արտադրությունն ավելացել է 52, մեկ կովի կաթնատվությունը՝ 40 տոկոսով, ձվինը՝ 3,5 անգամ: Նոր քայլեր են արվում անասնապահությունն արդյունաբերական եղանակով զարգացնելու նպատակով: Շրջանում արդեն գործում է երինջների աճեցման միջտնտեսային ձեռնարկությունը: Տասներորդ հնգամյակում շահագործման է հանձնվելու նաև ցեղական երինջների աճեցման ժամանակակից միջտնտեսային ձեռնարկությունը Արայում՝ 2.500 անասունի համար: Ապարանի սովխոզում և Շենավանի կոլտնտեսությունում կառուցվում են մեքենայացված կաթնային խոշոր համալիրներ, Ծաղկաշենի կոլտնտեսության թռչնաբուծական ֆերմայում մեքենայացվելու են աշխատատար պրոցեսները. այստեղ պահվելու է 50 հազար թռչուն և տարեկան արտադրվելու է 3,5—4 միլիոն ձու:

Մեր երկուհազարականները, Ստուգում ենք պարտավորությունների կատարումը, Մրցության օրագիր խորագրերի ներքո լրագրում տպագրվում են կարճ լուրեր, առաջավորների ելույթներ, ամփոփագրեր շրջանի գյուղատնտեսական աշխատանքների ընթացքի, վիճակի մասին:

Նշելով նվաճումները՝ «Ծաղկունքը» հաճախակի անդրադառնում է նաև անասնապահական ֆերմաներում աչքի զարնող թերություններին ու թերացումներին: Լրագրի էջերում հանդիպում ենք թղթակցությունների ու հոդվածների, որոնցում քննադատվում են ետ մնացողները, հանգամանորեն ցույց են տրվում այն հնարավորություններն ու ռեզերվները, որոնք հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու երաշխիք են: Հունվարի 13-ի համարում տպագրված Այսպես շարունակել չի կարելի թղթակցությունը վերաբերում է Վարդենիսի կոլտնտեսությանը: Այստեղ 1978 թվականին 340 ցենտներով թերակատարվել է կաթի արտադրության պլանը, չեն կատարվել մսի ու բրդի արտադրության ու գնման առաջադրանքները: Պատճառն այն է, եզրակացնում է լրագիրը, որ ֆերմայում ճիշտ չի կազմակերպվում աշխատանքը, կթվոր-անասնապահները պատասխանատվությամբ չեն վերաբերվում գործին, լուրջ ուշադրություն չի նվիրվում մատղաշի աճեցմանն ու պահպանմանը: Կոլտնտեսությունում հոգ չի տարվում կերի կուտակման համար:

Ֆերման դժվարին կացության մեջ թղթակցությունում (№ 19) Հ. Սարգսյանը և Վ. Պետրոսյանը նշում են, որ Երնջատափի տնտեսությունում աչքաթող են արվել անասունների խնամքն ու կերակրումը, ֆերման ապահովված չէ բանվորական ուժով, ցածր է կարգապահությունը, եղած գոմերը չեն բավարարում այսօրվա պահանջներին, կուտակված չէ անհրաժեշտ քանակությամբ կեր: Քուչակի տրնտհաշվարկային շինտեղամասի ղեկավարների անպատասխանատվության հետևանքով ձգձգվում է անցած տարիներից կառուցված կերախոհանոցի շահագործումը: Հունվարի 30-ին հրապարակված թղթակցությունում Ափնայի և Վարդենուտի տնտեսությունների ղեկավարները քննադատվել են կթվոր-անասնապահների շրջանում տարվող կուլտուր-մասսայական աշխատանքների կազմակերպմանը պատշաճ ուշադրություն չնվիրելու համար:

Խրախուսելի է այն, որ ՍՄԿԿ XXV համագումարի և Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումներից հետո լրագիրը հետևողականո-

րեն անդրադառնում է անասնապահության արդյունավետության, մթերքների որակի բարձրացման հարցերին: Կաթի յուղայնությունը ցածր է հոդվածում (№ 11) շրջանային մթերումների և որակի գլխավոր պետական տեսուչ Պ. Քոչարյանը գրում է, որ Ափնայի, Բուժականի, Վարդենիսի, Մռավյանի և Քուչակի տնտեսությունները պետությանը հանձնում են ցածր յուղայնությամբ կաթ, որի հետևանքով մեկ տարում վնասը կազմել է 31.200 ռուբլի:

Այս տարվա սկզբից «Ծաղկունքն» իր էջերում զետեղել է Մրցության օրագիր և Անասնապահական ֆերմաներում մշտական խորագրերը: Համարից համար նյութեր են հրապարակվում այն մասին, թե կոլտնտեսությունները ու սովխոզները, ֆերմաների կոլեկտիվները, առանձին կթվոր-անասնապահներ ու հովիվներ ինչպես են իրագործում ստանձնած պարտավորությունները: Հոդվածներով ու թղթակցություններով հանդես են գալիս արտադրության կազմակերպիչները և առաջավորները:

Հունիսի 19-ի զույգ էջերում լրագիրը հանգամանորեն լուսաբանել է Թթուջրի սովխոզի անասնապահների հաջողությունները: Կուսբյուրոյի քարտուղար Վ. Դավթյանի, տնտեսության դիրեկտոր Թ. Գևորգյանի, արհկոմի նախագահ Ն. Արմենակյանի ու հովիվ Մ. Դավթյանի և ուրիշների նյութերից ընթերցողը տեղեկանում է, որ քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ուժեղացմամբ և մրցության ծավալմամբ հնգամյակի տարիներին սովխոզում անասնապահությունը զգալի առաջընթաց է ապրել:

Գ. Սահակյանը Մթերքների արտադրության ավելացման գլխավոր գործոնը հոդվածում գրում է, որ ձեռք բերած հաջողությունների արդյունքն են այն բանի, որ տնտեսությունում ստեղծվել է կերի կայուն բազա: Շրջանում առաջինն այստեղ է արմատավորվել ոլոռի, արևածաղկի և եգիպտացորենի խառը ցանքը: Լավ մշակության շնորհիվ յուրաքանչյուր հեկտարից ապահովվում է 300 ցենտներ կանաչ զանգված, որից պատրաստվում է հյութալի կեր: Մշակվում է նաև 3 հեկտար կերի կաղամբ: Տնտեսության դաշտավարներն ու մեխանիզատորները, խոստումը հայտարարելով հարվածային ճակատ, նպատակ են դրել գերակատարել 1.076 տոննա խոտի և 500 տոննա սիլոսի պատրաստման առաջադրանքները:

Այս ամենի հետ մեկտեղ «Ծաղկունքը» քննադատում է Վարդենիսի, Մռավյանի, Վարդենուտի և Քուչակի տնտեսություններին՝ պետությանը ցածր գիրությամբ անասուններ հանձնելու, անասնապահության արդյունավետությունը չապահովելու համար:

Սակայն պետք է ասել, որ լրագրում դեռևս ինչպես հարկն է չեն արտացոլվում կաթի, մսի, բրդի ու ձվի արտադրության վրա կատարվող աշխատանքի ու ծախսերի կրճատման, ինքնարժեքի իջեցման, անասունների ցեղի բարելավման, հանրային հոտի վերարտադրության, կերի և ֆերմաների աշխատատար գործողությունների մեքենայացման հարցերը:

Հ. Ս. ՀՈՎՍԵՓՅԱՆ



# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՍԽՐԱՆՔԸ

Հայրենական մեծ պատերազմի առաջին իսկ օրերից սովետական երիտասարդությունը զենք վերցրեց՝ պաշտպանելու սոցիալիզմի նվաճումները, հաստոցների մոտ ու հանրային դաշտերում փոխարինեց հայրերին ու ավագ եղբայրներին: «Թշնամիների դեմ մղված պայքարում, կոմունիստական կուսակցության մարտական դրոշների ներքո առնականանում էին լենինյան կոմերիտմիության զավակները: Նրանք աճեցին՝ կոփվելով որպես ժողովրդի երջանկության, սոցիալիզմի համոզված մարտիկներ» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 2, էջ 355):

Այդ հրաբորբ տարիներն արտացոլող գրականության մեջ արժանի տեղ է հատկացված կոմերիտմիության փառապանծ գործունեությանը, բազում հուզիչ էջեր են նվիրվել կոմերիտականների սխրանքներին:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին Հայաստանի կոմերիտմիության ծավալած գործունեությանն է նվիրված ՀԼԿԵՄ Կենտկոմի նախկին առաջին քարտուղար Գ. Բ. Ալեքյանի վերջերս լույս ընծայած աշխատությունը*: Այն գրված է արխիվային վավերագրերի, հեղինակի հուշերի և մասամբ մամուլում հրապարակված նյութերի հիման վրա՝ կուսակցականության, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով:

Քառասունմեկ թվականին, ամենաերկար օրվա կեսին, պաշտոնապես հաղորդվում է Սովետական Միության վրա հիտլերյան զավթիչների ուխտադրուժ հարձակման մասին: Սկսվում է հայրենական, համաժողովրդական պատերազմն ընդդեմ ոսոխի: Ինչպես մեր լայնածավալ երկրի, նույնպես և Սովետական Հայաստանի բազմաթիվ գործարաններում, գյուղերում, բարձրագույն ուսումնական հաստատություններում շատ ու շատ կոմերիտականներ դիմում են զինվորական կոմիսարիատներին՝ կամավոր մեկնելու ռազմաճակատ, մարտնչելու օտար նվաճողների դեմ մղվող մարտերին: Կիրովականի շրջանի միայն Մեղրուտ գյուղից 30 կոմերիտականներ իրենց կազմակերպության քարտուղարի գլխավորությամբ կամովին դիմում են՝ համալրելու կարմիր բանակի շարքերը: ՀԼԿԵՄ Էջմիածնի շրջկոմի 27 անդամներից 22-ը մեկնում են ռազմի դաշտ: Դիլիջանցի Սահակ Մանթաշցու օջախից վեց եղբայրներ են մեկնում ռազմաճակատ: Մարտադաշտ են գնում ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար Երվանդ Հարությունյանն ու պատասխանատու շատ աշխատողներ: Մի պահ վերհիշում ես քաղաքացիական պատերազմի ահեղ ժամանակաշրջանը, երբ կոմերիտմիության շատ կոմիտեների դռներին փակցված հայտարարությունն ազդարարում էր՝ շրջկոմը փակ է, բոլորը ռազմաճակատում են:

«Հայրենական պատերազմի չորս տարիների ընթացքում,— գրում է Գ. Ալեքյանը,— Հայաստանի լենինյան կոմունիստական երիտասարդական միության շարքերից կարմիր բանակ զորակոչվեց 78.555 երիտասարդ» (էջ 9):

Կոմերիտական կազմակերպությունները, կուսակցության անմիջական ղեկավարությամբ, իրենց աշխատանքը վերակառուցում են՝ ամեն ինչ ռազմաճակատի համար նշանաբանով: ՀԼԿԵՄ Կենտկոմում և քաղաքային ու շրջանային կոմիտեներում սահմանվում է 24-ժամյա հերթապահություն:

ՀԿ(բ)Կ Կենտկոմի որոշմամբ կոմերիտական կազմակերպությունները ձեռնարկում են տանկեր կործանողներ, գնդացրորդներ, ականաձիգներ պատրաստելու գործին, կարմիր բանակին ռազմական պատրաստականությամբ համալրում տալու նպատակով:

1942 թվականի ամռանը ծանր վիճակ է ստեղծվում սովետա-գերմանական ռազմաճակատի հարավային հատվածում: Ֆաշիստական զավթիչները, հաշվի չառնելով իրենց մեծ կորուստները, շարժվում են դեպի Ստալինգրադ, խցկվում Կովկաս: Գրքի հեղինակը վերհիշում է այդ ծանր օրերին Թբիլիսիում գումարված Անդրկովկասի երիտասարդության հակաֆաշիստական միտինգը, որտեղ ելույթ են ունենում Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի երիտասարդության ներկայացուցիչները, որոն-

* Գ. Բ. Ալեքյան, Հայաստանի երիտասարդությունը Մեծ հայրենականին. «Հայաստան» հրատ., 1979:

կորույս մայրեր, բանակային գվարդիականներ, ուսանողներ, արտադրության առաջավորներ... Արտահայտելով Անդրկովկասի աշխատավորության սրտի խոսքը՝ նրանք երդվում են ամեն ինչ անել սոցիալիստական հայրենիքի պաշտպանունակությունն ամրապնդելու, թշնամու առաջխաղացումն արգելակելու համար: Այդ նպատակով երիտասարդական նորանոր խմբեր են մոբիլիզացվում, որոնք, սովորելով մասնագիտական դասընթացներում, մեկնում են ռազմաճակատ: Հուզիչ են գրքի այն էջերը, որոնցում արտացոլված են ռազմաճակատում երիտասարդ մարտիկների կատարած սխրանքները:

Սովետական սահմանը ներխուժած ֆաշիստական հորդաներին առաջինը հակահարված հասցնող զորամասերից էր Բրեստի կայազորը: Լեգենդար ամրոցի պարիսպների տակ ու միջնաբերդում մարտնչող ռուս, ուկրաինացի, բելոռուս, վրացի, ադրբեջանցի և Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ հերոսաբար են կռվել նաև հայ ռազմիկները: Հեղինակը շատերի թվում հիշատակում է Արշավիր Աղագյուլյանին, Միշա Անտոնյանին, Ծմավոն Դավթյանին, Աշոտ Բաբալարյանին, Թավադ Բաղդասարյանին, Սոկրատ Խաչատրյանին և ուրիշների:

Մոսկվայի մատույցներում, 1941 թվականի դեկտեմբերին, իր քաջագործությունով մեծ փառքի է արժանանում կոմերիտական Հայկ Ծաղունցը: Երբ թշնամու տանկերը գրոհում են Մոսկվայի ուղղությամբ, Ծաղունցը և նրա հրետանավոր ընկերները գոտեմարտի են բռնվում ֆաշիստների հետ: Սովետական խիզախ հրետանավորները դիպուկ կրակով ոչընչացնում են հակառակորդի տանկերը: Ծաղունցը մեն-մենակ մարտնչում է թշնամու դեմ, խափանում առաջ շարժվող տանկերի ընթացքը:

Հիտլերյան զավթիչների կողմից կրակե օղակով պաշարված Լենինգրադի պաշտպանների շարքերում են եղել Հայաստանի կոմերիտմիության հնագույն աշխատող Հայկ Մելքոնյանը, կոմերիտականներ Սարգիս Ղազարյանը, Ավագ Անտինյանը, Փայլակ Ենգոյանը... Լենինգրադի ռազմաճակատում իր անձնուրաց խիզախությամբ աչքի ընկավ հատկապես Նելսոն Ստեփանյանը, որն արժանացավ Սովետական Միության կրկնակի հերոսի կոչման:

Քառասուներկուսի գարնանը Դոնի Ռոստովի մատույցներում մղված արյունալի մարտերում դյուցազնորեն է կռվում Սերգեյ Օհանյանի մարտկոցը: Նրա ենթակաները՝ ռուս, ուկրաինացի, բելոռուս, ղազախ, ադրբեջանցի, իրենց կյանքի գնով փակում են ֆաշիստների ճանապարհը: Մարտի դաշտում ցուցաբերած խիզախության համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը Ս. Օհանյանին հետմահու շնորհում է Սովետական Միության հերոսի կոչում:

Գ. Ալեքյանը հուզիչ էջեր է նվիրել Ստալինգրադի պաշտպանության համար մղված մարտերում հայ երիտասարդների քաջագործություններին: Հետախուզության ժամանակ խիզախությամբ աչքի է ընկնում 19-ամյա կոմերիտական Սուրեն Միրզոյանը իր մարտական ընկերոջ՝ Զիբինի հետ միասին: Կրակոտ այդ օրերի անմոռացության վկայություններից է Սովետական Միության մարշալ Վ. Ի. Չույկովի ճանապարհի ակիզբը գրքի մակագրությունը. «62-րդ լեգենդար բանակի մարտիկ Սուրեն Միրզոյանին՝ հեղինակից. բանակի հրամանատար Չույկով»:

Զինվորական թերթերը ջերմությամբ են գրել ռազմիկներից մեկի մասին, որ հակատանկային հրացանի վրա պատրաստած հատուկ հարմարանքի միջոցով ցած է գցել թշնամու 3 ինքնաթիռ: Ամասիայի կոմերիտմիության շրջկոմի նախկին բաժնի վարիչ Արամ Միրզոյանն էր նա, որ մարտերում ցուցաբերած խիզախության համար պարգևատրվել է Հայրենական պատերազմի առաջին աստիճանի և Կարմիր աստղի շքանշաններով: Փառապանծ 62-րդ բանակի կազմում իրենց քաջագործություններով աչքի են ընկել Հրազդանի կոմերիտմիության շրջկոմի նախկին քարտուղար Դրաստամատ Գասպարյանը, Ղափանի կոմերիտմիության շրջկոմի քարտուղար Ծավարշ Ավետիսյանը, կոմերիտական պատասխանատու աշխատողներ Ռաֆիկ Սահրադյանը, Ռուբեն Երիցյանը և ուրիշներ:

1943 թվականի փետրվարին Վելիկիե-Լուկիի ուղղությամբ մղված ճակատամարտում հակառակորդի ուժեղ ամրացված հենակետը գրավելու պահին դյուցազնաբար է գործում Ալեքսանդր Մատրոսովը: Նա իր մարմնով փակում է թշնամու հրակնատը, խափանում նրա կրակակետը և ճանապարհ բացում մեր հարձակվող ստորաբաժանման համար: Նովորոսիյսկի մատույցներում Ա. Մատրոսովի օրինակով գերմանական զավթիչների դեմ կռվել են Հունան Ավետիսյանն ու Սուրեն Առաքելյանը: Նրանց հիշատակը հավերժ կմնա սովետական մարդկանց սրտերում:

Նովորոսիյսկի մատույցներում 225 օր անընդմեջ 18-րդ բանակի դեսանտային զորամասերը մարտնչել են ֆաշիստների դեմ: Այդ ահեղ ու արյունալի կռվում աներեր են եղել Հակոբ Պետրոսյանը, Ստեփան Խորենյանը, Ամալյա Հովհաննիսյանը, Զոյիետա Բաղդասարյանը և ուրիշներ:

Խիզախորեն են մարտնչել հայ երիտասարդ-



ները Դնեպրի ափերին, սովետական Բելոռուսիայի և Մերձբալթյան հանրապետությունների ազատագրման համար մղվող ճակատամարտերում: Նրանցից շատերը սովետական հզոր բանակի շարքերում, կրակի ու բոցերի միջով հասել են ֆաշիստական գազանի որջը և մասնակցել Բեռլինի գրոհմանը:

Մեծ հայրենականի տարիներին Սովետական Միության հերոսի կոչման արժանացած 106 հայ ռազմիկներից 65-ը,— գրում է Գ. Ալեքյանը,— կառավարական շքանշաններով ու մեդալներով պարգևատրված 70 հազար մարտիկների կեսից ավելին կոմերիտականներ էին. փառքի շքանշանի երեք աստիճանի 27 հայ ասպետների մեծ մասը երիտասարդներ էին— Իսահակ Կարախանյան, Ստեփան Ստեփանյան, Խաչիկ Մելիքսեթյան, Ստեփան Իսրայելյան, Ռուբեն Պապոյան և ուրիշներ:

Թշնամուն ջախջախիչ հարված հասցնելու գործում վճռական նշանակություն ունեցավ և լայնորեն ծավալվեց պարտիզանական շարժումը: Ժողովրդական վրիժառուների շարքերում, թշնամու թիկունքում, ռուսների, բելոռուսների, ուկրաինացիների շարքերում գործում էին նաև հայ ռազմիկներ Ս. Կարապետյանը, Ա. Պետրոսյանը, Ժ. Բաղդասարյանը, Ս. Հարությունյանը... Շատ-շատերը հերոսի մահով ընկան մարտական առաջադրանքները կատարելիս:

Երիտասարդության աշխատանքային սխրանքները թիկունքում գլխում զգալի տեղ է հատկացված Հայրենական մեծ պատերազմի տարիներին կոմերիտական կազմակերպությունների թիկունքում կատարած աշխատանքին: Մեծ հայրենականի առաջին իսկ օրվանից երկրի ժողովրդական տնտեսությունը վերակառուցվում է պատերազմական պայմաններին համապատասխան. ամեն ինչ ռազմաճակատի, ամեն ինչ հաղթանակի համար: ՀԼԿԵՄ Կենտկոմը, շրջանային ու քաղաքային կոմերիտմիության կոմիտեները գործարաններում, հանքահորերում, երկաթուղում, հանրային դաշտերում և գիտական հիմնարկություններում ծավալում են հայրենանվեր աշխատանք՝ ժամանակին կատարելու ռազմաճակատի պատվերները, ժողովրդական տնտեսության պլանային առաջադրանքները:

ՀԿ(բ)Կ Կենտկոմի ցուցումով Հայաստանի կոմերիտմիությունը կոչ է անում հանրապետության երիտասարդությանը՝ հանդես գալ «Դեպի դազգահները, մեքենաները, բրիգադները», «Աշխատել իր և բանակ մեկնած ընկերոջ փոխարեն» նշանաբանով: Մի խումբ երիտասարդ աղջիկներ մտմոլում դիմում են հանրապետության կանանց. փոխարինել ամուսիններին ու եղբայրներին, գնալ գործարան, իրենց ձեռքը վերցնել տրակտորի ղեկը, օգնել ռազմաճակատին, ընդհանուր ուժերով ջախջախելու նենգ թշնամուն:

Այդ կոչերին լայնորեն արձագանքում են հանրապետության կանայք ու աղջիկները: Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարանում արտադրամասեր են գնում դիրեկտորի օգնական Լյուսյա Տեր-Հովհաննիսյանը, լաբորատորիաներում և գրասենյակում աշխատողներ Արփիկ Թումանյանը, Սեդա Քանքանյանը և ուրիշներ: Ղափանի հարստացուցիչ ֆաբրիկայում աշխատանքի են անցնում 14 երիտասարդ աղջիկներ: Հրազդանի շրջանում Նազիկ Բարեղամյանը, Սիրուշ Օհանյանը, Սիրուշ Ղազարյանը և ուրիշներ պատրաստակամություն են հայտնում կոլտնտեսային դաշտերում, իբրև տրակտորիստուհիներ, փոխարինել կարմիր բանակ մեկնած իրենց ամուսիններին ու եղբայրներին: Երևանի Ձերժինսկու անվան մեքենաշինական գործարանը պատերազմի սկզբից համալրվում է երիտասարդներով: Այստեղ աշխատանքի են անցնում շատ աղջիկներ ու կանայք: Կարճ ժամանակում նրանք տիրապետում են արտադրության տեխնոլոգիային և հաջողությամբ կատարում առաջադրանքները:

Կոմերիտականների նախաձեռնությամբ արդյունաբերական ձեռնարկություններում ծավալվում է սոցիալիստական մրցությունը՝ պլանային առաջադրանքները երկու հարյուր տոկոսով կատարելու համար: Հազարավոր երիտասարդներ են մասնակցում այդ հայրենանվեր շարժմանը:

Ղափանի Շահումյանի անվան հանքերում կոմերիտական Հակոբ Զաքարյանը աշխատանքային իր պլանը կատարում է 250—300 տոկոսով, իսկ հանքի կոմերիտական վագոնավարներ Վաղինակ Ավետիսյանը, Մխիթար Պողոսյանը և Մուխան Թումանյանը օրական կատարում են երկուսից երեք նորմա: Երևանի Ձերժինսկու անվան մեքենաշինական գործարանում Մարիամ Առաքելյանն ստանում է կարևոր հանձնարարություն: Նա երկու օր անընդմեջ մնում է արտադրամասում և կատարում իր առաջադրանքը: Ալավերդու պղնձաձուլական գործարանի խառատ Հեյդար Բայրամովի բրիգադը օրական պլանը կատարում է 408, բրիգադավարը՝ 623 տոկոսով:

Հայրենական պատերազմի տարիներին մեծ ջանքեր էին գործադրում գյուղի աշխատավորները՝ բնակչությանն ու ռազմաճակատն ապահովելու գյուղատնտեսական մթերքներով: Գյուղական կոմերիտական կազմակերպությունները, երիտասարդության շրջանում ծավալելով քաղաքական մասսայական աշխատանքներ, կարողանում են ապահովել նրանց ակտիվ մասնակցությունը գյուղատնտեսական կուլտու-

րաների բերքատվության և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գործին: Կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում ստեղծվում են կոմերիտական-երիտասարդական բարձր բերքի օղակներ: Ստեղծվում են մեխանիզատորների դասընթացներ, միայն 1943 թվականին այդ դասընթացներն ավարտում և աշխատանքի է անցնում 2.048 երիտասարդ, որոնցից 509-ը կոմբայնավարներ ու կոմբայնավարների օգնականներ էին: Տրակտորի ղեկն իրենց ձեռքն են վերցնում Կիրովականի ՄՏԿ-ում՝ Նատաշա Ավետիսյանը, Հոկտեմբերյանի շրջանի Ծաղրիար (Նալբանդյան) գյուղի ՄՏԿ-ում՝ Նազանի Մարտիրոսյանը և շատ ուրիշներ: Թալինի (այժմ Անիի) շրջանի Ջիթհանքով գյուղի բարձր բերքի օղակավարուհիներ Օֆիկ Մաղոյանի և Սոնիկ Մաղաքյանի ղեկավարած օղակները յուրաքանչյուր հեկտարից ստանում են 34 ցենտներ հացահատիկ: Հայրենանվեր աղջիկների աշխատանքը գնահատվում է ըստ արժանվույն. Օ. Մաղոյանը պարգևատրվում է Լենինի, Ս. Մաղաքյանը՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

Գրախոսվող գրքում զգալի տեղ է հատկացված երիտասարդության շրջանում տարվող գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքի մեթոդներին: Դրա նպատակն էր պատանիներին ու աղջիկներին պարզաբանել սովետական հայրենասիրության լենինյան գաղափարները, նրանց սրտերում վառ պահել հավատը վերջնական հաղթանակի նկատմամբ: Երիտասարդության համար դասախոսություններ են կարդացել Հ. Օրբելին, Վ. Համբարձումյանը, Մարիետա Շահինյանը, Խ. Կոշտոյանցը և ուրիշներ: Հեղինակի տեսադաշտից դուրս չի մնացել նաև այն խրախուսելի մարդասիրական գործը, որ կատարել են Հայաստանի կոմերիտական կազմակերպությունները ճակատայինների ընտանիքներին օգնելու, որբ երեխաների նկատմամբ հոգատարություն ցուցաբերելու բնագավառում: Այդ մասին հրապարակված են ռազմաճակատից ՀԼԿԵՄ Կենտկոմին հասցեագրված բազմաթիվ նամակներ, որոնցով զինվորներն ու հրամանատարներն իրենց շնորհակալությունն են հայտնում Հայաստանի կոմերիտական կազմակերպություններին:

Լենինյան կոմունիստական երիտասարդության պանծալի 60-ամյակին նվիրված այս աշխատությունը կխթանի մեր երիտասարդության, մատաղ սերնդի ռազմահայրենասիրական դաստիարակությունը, կհամակի նրանց հայրենիքի համար հպարտության վեհ զգացումով: Գ. Ալեքյանի անկեղծ ներշնչանքով գրված այս օգտակար գիրքը հավերժացնում է Մեծ հայրենականի ծանր տարիներին մեր երիտասարդության գործած սխրանքները, ռազմաճակատի ու թիկունքի մարդկանց հայրենանվեր մաքառումները:

**Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**

*Վ Ր Ի Պ Ա Կ*

*Ամսագրի նախորդ համարի 29-րդ էջի 9-րդ տողը կարդալ այսպես. «տարվում են ոչ խրատապահանջ ճաշակի համար նկատի առնված զվարճացուցիչ» և այնուհետև՝ ինչպես տեքստում:*



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 01965 Պատվեր 1917 Թղթի չափը 70×108 1/16 Տիրաժ՝ 16.300 Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, [illegible] 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 10/VIII-1979 թ.*



# *Ձեզ համար, ընթերցողնե՛ր*

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Մալայա զեմլյա: Վերածնունդ: Խոպան: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ս. ՏԵՐ-ԳԱԲՐԻԵԼՅԱՆ— Հոդվածներ, ճառեր, փաստաթղթեր: *«Հայաստան» հրատ., 1979:*

Սկզբնական կուսակցական կազմակերպության քարտուղարի տեղեկատու: *«Հայաստան» հրատ., 1979:*

Հայ նոր գրականության պատմություն: *Հ. 5: Ե., ԳԱ հրատ., 1979:*

Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Դրվագներ ստալինգրադյան հերոսամարտերից: *«Հայաստան» հրատ., 1979:*

Վ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ— Ծովակալ Լ. Մ. Սերեբրյակով *(Ղազար Մարկոսի Արծաթագործյան): Ե., ԳԱ հրատ., 1979:*

Է. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Տրամաբանության փիլիսոփայություն. ուրվագծեր: *Դասական շրջանի քննական վերլուծություն: «Հայաստան» հրատ., 1979:*

Ն. ՄՈԼՉԱՆՈՎ— Գեներալ դը Գոլ: *«Հայաստան» հրատ., 1979:*

Լ. ԱՆԱՆՅԱՆ— ՍՄԿԿ սոցիալ-տնտեսական քաղաքականությունը զարգացած սոցիալիզմի պայմաններում: *Ե., ԳԱ հրատ., 1979:*

Վ. ՊԵԿԵԼԻՍ— Քո հնարավորություննե՞րը, մա՛րդ: *«Հայաստան» հրատ., 1979:*

Հ. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Սովորողների իրավական կրթությունը և դաստիարակությունը դպրոցում: *Ե., «Լույս» հրատ., 1979:*

**В. И. Ленин, КПСС об интеллигенции.** М., Политиздат, 1979.

**В. И. Ленин, КПСС о нормах партийной жизни и принципах партийного руководства.** М., Политиздат, 1979.

**Воспоминания о Владимире Ильиче Ленине.** В 5-ти томах. Т. 2. Изд. 2-е. М., Политиздат, 1979.

Л. И. БРЕЖНЕВ — **Ленинским курсом.** Речи, приветствия, статьи, воспоминания. Т. 7. М., Политиздат, 1979.

Н. МИЩЕНКО — **Авангардная роль коммуниста.** М., Политиздат, 1979.

И. ВОРОЖЕЙКИН — **Летопись трудового героизма.** Краткая история социалистического соревнования в СССР, 1917—1977. М., Политиздат, 1979.

**Управление качеством продукции.** Опыт, проблемы, перспективы. М., «Экономика», 1979.

М. БАХТИН. — **Начало великого пути.** Из истории социалистического преобразования деревни. 1917—1925. М., «Мысль», 1979.

**Охрана детства в СССР.** Сборник нормативных актов. М., «Юридическая литература», 1979.

Н. КОНОВА — **Соотношение политики и морали: критика антикоммунистических концепций.** М., «Знание», 1979.

И. ЛОУКОТКА — **О религии и искусстве.** Перевод с чешского. М., «Знание», 1979.

С. РАИНКО — **Марксизм и его критики.** Перевод с польского. М., «Прогресс», 1979.

Э. ФАРКАШ — **Мораль и революционность.** Размышления об этическом наследии К. Маркса и Ф. Энгельса. Перевод с венгерского. М., Политиздат, 1979.

А. КОЧЕРГИН, А. ДУБНОВ, Л. ЛИСС — **Партийная работа в вузе.**

(Некоторые вопросы формирования специалистов в условиях научно-технической революции). М., Политиздат, 1979.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՇՏԱՊ ԲՈՒԺՈՒՄ

Ն. Ն. Պրիորովի անվան վնասվածքների և օսկրաբուժության ինստիտուտի մասնագետները, ՌՍՖՍՀ վաստակավոր գյուտարար, բժշկական գիտությունների դոկտոր Հ. Հովհաննիսյանի և ՍՍՀՄ ԲԳԱ ակադեմիկոս Մ. Վոլկովի ղեկավարությամբ, չժանգոտող պողպատից և պլաստմասսայից պատրաստել են յուրահատուկ կառուցվածքով տասնյակ բազմօղակ տարբեր սարքեր, որոնք կոտրված ոսկորները և վնասված հոդերն արագ ու հուսալի միացնում են Վոլկով—Հովհաննիսյան կոնստրուկցիայի հատուկ ապարատներով։ Ապարատների կիրառմամբ բացառվում են գիպսի օգտագործումը, վնասված հոդերից ծանրություն կախելու անհրաժեշտությունը։ Հարկ եղած դեպքում ինստիտուտի հմուտ վարպետները տեղում հիվանդի համար պատրաստում են անհատական սարք՝ նրա չափերին և վնասվածքի բնույթին համապատասխան։

### ՀՍԿԱ ՀՈՐԱՏԻՉ

«Ուրալմաշ» գործարանի կոնստրուկտորների, տեխնոլոգների և բանվորների ստեղծած նավթահորատիչ նոր սարքը առաքվում է աշխարհի երեսուն երկրներ։ Սարքը կարող է հորատել 3.000 մետր խորությամբ նավթահոր։ 12 հարկանի շենքի բարձրությամբ այս նոր մեքենան հագեցած է հորատող գործիքի կիսավտոմատ իջեցման ու բարձրացման մեխանիզմների կոմպլեկտով։

### ՈՒՆԿՆԴՐԵԼ... ՀԱՑԱՀԱՏԻԿԸ

Ամեն տարի հացահատիկի համաշխարհային պաշարների 5—10 տոկոսը ոչնչացնում են վնասատու միջատները։ Ինչպե՞ս իմանալ՝ վարակվա՞ծ է սերմը, թե՞ ոչ, ինչպե՞ս կանխել կորուստը։ Մինչև օրս վերցվում էր 10-ական հատիկ և մեկ-մեկ ճեղքվում, ուսումնասիրվում՝ կա՞ն, արդյոք, այնտեղ վնասատուներ։ Աշխատատար, անարդյունավետ էր այդ պրոցեսը։ ՍՍՀՄ ԳԱ հացահատիկի գիտահետազոտական և ձայնագիտական ինստիտուտներն առաջարկել են այլ եղանակ՝ «Օրիոն» լսողական սարքի օգնությամբ։ Գլանաձև ընդունիչ խցիկը լցվում է հացահատիկով։ Զգայուն միկրոֆոնը որսում է վնասատուների կամ դրանց թրթուրների «բզզոցը»։ Ապա դրանց «ճռթոցը», որ շատ լավ լսվում է հեռախոսաընկալուչի միջոցով, վերափոխվում է էլեկտրական ազդանշանների։ Դրանց ուժով (որ գրանցվում է ինդիկատորի ցուցանակի վրա) կարելի է որոշել հացահատիկի վարակվածության աստիճանը։ «Օրիոն»-ը կարող է նշել մեկ կիլոգրամ սերմի մեջ գտնվող մեկ թրթուրի առկայությունն իսկ, որքան էլ խոր թաքնված լինի այն։ Սարքի ներդրմամբ ակնկալվող տնտեսական օգուտը հացահատիկի ընդունման մեկ ձեռնարկությունում 1.243 ռուբլի է։

### «ՍԱՌՆԱՐԱՆ» ԳԼԽԻ ՎՐԱ

Ճապոնական ֆիրմաներից մեկը մշակել է թեթև, փոքր սարք, որը հագնում են գլխին. այն չի թողնում մարդուն քնել ոչ հարմար պահերին։ Ջերմաէլեկտրական ազդեցությամբ օժտված այս սարքը, սառեցնելով գլուխը, մարդուն հաղորդում է կայտառություն։ Էլեկտրավառիչից սնվող նոր սարքը հիմնականում նախատեսված է ավտոմեքենայի վարորդների համար, բայց այն կարող է օգտակար լինել նաև այլ պայմաններում՝ գիշերային հերթափոխության, միապաղաղ, միօրինակ աշխատանքի ժամանակ և այլ դեպքերում։